# ՀԻՒՍՈՒԱԾՔ

## ՀԱՅՈՑ ՀԻՆ ՊԱՏՄԱԳՐՆԵՐԻ ԽՕՍՔԵՐԻՑ

---

ՀԱՅՈՑ ՄԱՐԶՊԱՆՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿՈՒԱՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

## ԱՌԱՋԻՆ ՄԱՍՆ

ՎԵՀՄԻՀՐՇԱՊՈՒՀ — ՎԱՀԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

---

ԴՐԱՐԱԹԻՑ ԽՕՐՀՐԴԱԾՈՆԵԱՑ

Կ. ԿՈՍՏԱՆԵԱՆՑ

## ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

[illegible]

ԽՈՐԵՆԱՑԻ

ՎԻԷՆՆԱ. 1877.

# ՀԻՒՍՈՒԱԾՔ

## ՀԱՅՈՑ ՀԻՆ ՊԱՏՄԱԳԻՐՆԵՐԻ ԽՕՍՔԵՐԻՑ

Է.

# ՀԻՒՍՈՒԱԾՔ

## ՀԱՅՈՑ ՀԻՆ ՊԱՏՄԱԳՐՆԵՐԻ ԽՕՍՔԵՐԻՑ

---

### Ա· ՀԱՅՈՑ ՄԱՐԶՊԱՆՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿՈՒԱՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

### ԱՌԱՋԻՆ ՄԱՍ

ՎԵՀԱՄԻՀՐՇԱՊՈՒՀ — ՎԱՀԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

---

ԳՐԱԲԱՌԻՑ ԹԱՐԳՄԱՆԵՑ

Կ· ԿՈՍՏԱՆԵԱՆՑ

## ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

*„Թէպէտ եւ եմք ածու փոքր, եւ ընդ այլով յոլով անձամբ՝ նուաճեալ թագաւորութեամբ, սակայն բազում՝ գործք արու-թեան գտանին գործեալ ի մերում՝ աշխար-հիս եւ արժանի գրոց յիշատակի :,,*

ԽՈՐԵՆԱՑԻ:



ՎԻԷՆՆԱ 1877.

Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ

ՏԵԱՌՆ ՏԵԱՌՆ

# ԳԷՈՐԳԱՅ Դ.

ՍՐԲԱԶՆԱԳՈՅՆ ԵՒ ՎԵՀԱՓԱՌ

ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

ՏՊԱԳՐԵԱԼ ԾԱԽԻՒՔ

ՄԵԾԱՊԱՏԻՒ ՄԿՐՏՉԻ ՍԱՐԳՍԵԱՆ

Ց. ՄԱՆԱՄԱՐԵԱՆՑ



# ԱԶԴ

Գրքոյկիս այլ պարագաների կամ ինչ կերպ գործագրութեան մասին թող տեսնի ընթերցողը մեր յառաջաբանի մէջ Երրորդ Գրքում, ուր գտնում են նաեւ թուանշանների մեկնութիւնները, ժամանակագրութեան աղիւսակներն եւ այլ միքանի պատմագրական հատուածներ։ Բնագրիս մէջ մակակէտը ՚ նշանակում է այն պատմչի խօսքի սկիզբը, որի անունը որ նշանակուած է լուսանցքում։ Սովորական փակագծի ( ) մէջ են պատմիչների խօսքերը, իսկ մանր փակագծերի ‹› մէջ են մեզանից աւելացուցած խօսքերը, որոնք տեղ տեղ կարեւոր էին մտքի պարզութեան կամ ոճի հեշտութեան համար։

# ԳԼՈՒԽ Ա.

## *Արշակունեաց անկումը:*

**Վռամ Բ. Հայոց վերայ թագաւոր է դնում Արտաշէս Դ.ին (426 թ.): Արտաշէսն անկարգ է վարում իւր կեանքը: Նախարարները կամենում են բողոքել Վռամին. բայց Սահակ Պարթեւն արգելում է: Նախարարները բողոքում են Վռամին. Վռամը կանչում է իւր մօտ Արտաշէսին եւ Սահակ Պարթեւին: Սուրէն Պահլաւը յորդորում է Սահակ Պարթեւին՝ միաբանելու նախարարների մատնութեանը, բայց նա հրաժարում է: Մեծ հարցափորձի ժամանակ Վռամը զրկում է Արտաշէսին թագաւորութիւնից եւ Սահակ Պարթեւին էլ կաթուղիկոսութիւնից. (432 թ.) Վեհմիհրշապուհ պարսիկը նշանակւում է մարզպան Հայաստանի վերայ:**

> «Եթէ ոք կարի առաւելեալ իցէ աշխարհական մեծութեամբ եւ մտօքն աղքատագոյն, այնպիսին ողորմելի է քան զաղքատն: Լաւ է կոյր աչօք՝ քան կոյր մտօք:»
>
> ԵՂԻՇԷ:

Պարսից Շապուհ թագաւորի որդու Յազկեր- Ղազար.
տի* մեռնելուց յետոյ՝ թագաւոր եղաւ նորա որդին
Վռամ ‘երկրորդ’: Եւ Հայաստանի իշխաններն եկան [1]
Վռամի մօտ եւ խնդրեցին իրենց համար մի թա-
գաւոր ցեղով Արշակունի [2]: Նա էլ թագաւոր կար-
գեց նոցա վերայ Վռամշապուհի որդուն Արտաշէ-
սին՝ Հայոց թագաւորների ցեղից ‘426 թուին’:

Արտաշրի ‘Արտաշէսի’ թագաւորելուց յետոյ՝ Թովմայ.
մեր երկիրը փոքրիշատէ խաղաղացաւ Պարսից գնդի
շփոթմունքներից եւ արքունի հարկերի դիւանները
կրկին բացուան, որովհետեւ հինգ տարի հարկ եւ
զօրք չէին տալիս Պարսից թագաւորին:

Եւ Արտաշէսը մի դեռահաս եւ իգամոլ մարդ Ղազար.
էր ու մեծ անառակութեան մէջ էր անցկացնում

* Յազկերտ Առաջին:

իւր թագաւորութեան 'օրերը'։ Եւ Հայոց Նախարարները [3] չկարողանալով Արտաշէսի այդ տեսակ զեղխ ու մոլեկան վարքին դիմանալ՝ եկան միասին
Խորեն. սուրբ Սահակ մեծ քահանայապետի մօտ 'եւ գանգատ արին "Նորա վերայ" հրաւիրելով Նորան իրենց օգնելու, որ չարախօսութիւն անեն Պարսից Թագաւորի առաջ եւ 'խնդրեն' հրաժարեցնել իւրեանց Թագաւորին եւ Պարսիկ կառավարիչ բերեն Հայաս-
Ղազար. տան։ „Էլ չենք կարող, ասում են, համբերել Թագաւորի այս տեսակ պիղծ եւ անօրէն գործերին, որովհետեւ աւելի լաւ ենք համարում մեռնել՝ քանթէ ամենայն օր այս տեսակ կեղտոտ գործեր տեսնել ու լսել։ Մենք էլ ուրիշ ելք գտնել չենք կարող, բայց միայն գանգատել Պարսից Թագաւորին, որ Թագաւորութիւնից հրաժարեցնէ Նորան։ Աղաչում ենք, որ դու էլ ընկերանաս մեր այս խորհրդին։„

Խորեն. Իսկ Նա 'Սահակ' ասաց. "Ես չեմ ասում, թէ դուք սուտ էք խօսում. ես ինքս էլ լսած եմ Նորա խայտառակ գործերի մասին եւ շատ անգամ էլ յանդիմանած եմ. 'բայց Նա' տէրը չեղաւ, ուրացաւ։ Ուրեմն 'պէտք է մի փոքր դիմանալ այդ մարդու պակասութեանը, մինչեւոր Յունաց Թէոդոս կայսեր օգնութեամբ դորա ճարը տեսնել կարողանանք, եւ ոչ թէ անօրէնների ձեռքը մատնենք, որ ծաղը ու կատակ լինինք։„ Բայց Նոքա չյօժարեցան եւ աշխատում էին համաձայնեցնել Նորան իրենց հետ։

Ղազար. Իսկ սուրբ կաթողիկոսն երբ լսեց եւ հաստատ իմացաւ, որ երկրի բոլոր մեծամեծները նոյն մտքին հաստատ են, հրաժարուաւ պատասխան տալ Նոցա երկար օրեր եւ առանձնացաւ իւր սենեակը. միայն

ողբի եւ հառաչանքի ձայներ էին լսուում ՙայնտեղից՚, որովհետեւ նա ՙՍահակ՚ տեսնում էր, որ միանգամայն կորչելու վրայ է Հայոց աշխարհքը։

Միքանի օր յետոյ եպիսկոպոսներից եւ պաշտօնական քահանաներից ու սարկաւագներից միքանիսը, որ նոյն սուրբ հայրապետի հետ մէկ խօսք էին, նաեւ Հայոց ազատ մեծամեծներից ոմանք՝ համարձակութիւն գտան ներս մտնելու, եւ սկսեցին խօսել նորա հետ մխիթարական խօսքեր. այսպէս՝ միփոքր հանդարտեցաւ սուրբ քահանայապետը։

Նորից ժողովուան նորա մօտ Հայաստանի բոլոր ազատները եւ միեւնոյն բողոքը կրկնեցին Հայոց սուրբ կաթողիկոսի առաջ եւ ստիպմամբ խնդրում էին, որ նա էլ միաբանի նոցա հետ։

Իսկ Սուրբը տեսաւ, որ նոքա բնաւ յետ չեն կացած առաջուայ մտադրութիւնից, ըստորում թագաւորի կեղտոտ գործերի աւելանալն օրէցօր աւելացնում էր եւ իշխանների միաբանութիւնը՝ նորա անձը կորցնելու համար։ Ուստի ձայն բարձրացրեց ողբալով ու ասում էր. ՚Անկարելի բան է, որ իմ խորհ. մոլորեալ ոչխարս գայլերին մատնեմ եւ չպատեմ նորա կոտրածը եւ կամ հիւանդ տեղը, այլ գահավէժ անեմ։ Ըստորում՝ եթէ հաւատացեալ թագաւորի առաջ լինէր, կ՚շտապէի կ՚երթայի եւ յետ չէի ձգեր, յոյս ունենալով՝ որ գլորեալը կըկանգնի։ Բայց հեթանոսներին ՙմատնել՚ ես յանձնառու չեմ լինիր. որովհետեւ՝ աւազանով դրոշմուած է. թէպէտեւ անառակ է, պոռնիկ է, բայց քրիստոնեայ է. մարմնով ախտի մէջ է, բայց հոգւով անհաւատ չէ. վարքով գեղխ է, բայց կրակապաշտ չէ. դէպի կանայք տկար է, բայց տարերք պաշտօղ

Ղազար. չէ. ՚Մէկ ցաւով հիւանդացած է, բայց ամէն ցաւե-
րով վարակուած չէ, ինչպէս հեթանոս։ Եւ ինչ-
պէս փոքր մեղք ունեցողին տանիմ ամէն մեղքե-
րով ամբարշտացած մարդու ձեռքը մատնեմ, որ
մեռցնէ. չէ՛, որդիք, այդ բանը մտքերէդ հանեցէք,
եւ ձեր բնիկ տէրերին մի՛ք աշխատիր կորցնելու,
Խորենա. ինչպէսոր ձեր նախնիքներից ոմանք ‘արին’։ ՚Ի՛նչ-
պէս կարող եմ ես՝ իմ հիւանդ ոչխարս փոխել այն
առողջ գազանի հետ, որի առողջութիւնը մեզի վնաս
է։ Իսկ նախարարները մտածեցին, թէ գուցէ խա-
բելով ուզում է ‘Սահակ’ յետ ձգել նոցա, որ թա-
գաւորին պատրաստէ. ասացին ամէնքը “որովհետեւ
դու չուզեցար մեր կամքը կատարել, որ նա ‘Արտաշիր’
չթագաւորէ, ուրեմն մենք էլ չենք ուզենար, որ դու
մեզի քահանայութիւն ‘կաթուղիկոսութիւն’ անես։„
Եւ բոլորը մէկ եղան ու գնացին Պարսից Վռամ
թագաւորի մօտ՝ Սուրմակ անունով մի Արծկէացի
փառամոլ քահանայի հետ մէկտեղ, որ չարախօսու-
թիւն անեն Արտաշրի եւ Սահակ մեծի վերայ, որպէս
թէ սոքա Յոյների կողմն են իրենց սրտերովը։
Թովմայ. ՚Սկսեցին զանազան ափեղցփեղ խօսքերով զրպար-
տութիւն անել Սուրբ Սահակի վերայ, որպէսթէ
նա չի կամենում, որ Պարսիկներն իշխեն եւ հարկ
առնեն ու զօրք պահեն ‘Հայաստանում’, այլ Յու-
ների իշխելն է ցանկանում. եւ իրենց խօսքերի
հաւատարմութեան համար առել էին Սուրբ Սա-
հակի թղթերը [1] կայսերն ու հայրապետին ‘գրած’.
յառաջ էին բերում եւ Մեսրոպի ու Վարդանի
Յունաստան գնալը, Անատոլի գալն ու Կարին
գաւառի մէջ քաղաք շինելը։
Ղազար. Շուտով դեսպան ուղարկեց ‘Վռամն’ Արտա-

չէս Թագաւորի յետեւից եւ Հրամայեց, որ շտապաւ իւր մօտ գայ. Նորան գրեց, որ Սահակ մեծ քահանայապետն էլ գայ։ Երբ Նոքա Դուռն եկան, Պարսից Թագաւորն յառաջ Հայոց Թագաւորին Հարցրեց առանձին, Թէ "Այս ի՞նչ բան է, որ քեզ վերայ գանգատում են Հայոց Նախարարները,,։ Նա էլ պատասխան տուեց եւ ասաց Թէ "Ես ամենեւին չգիտեմ, Թէ ի՞նչ են խօսում դոքա, եւ ինչոր խօսում են, զրպարտուԹիւն է, ինչպէսոր սովոր են իբնէ իրենց տէրերին զրպարտելու, ըստորում դոքա միշտ իշխանափոխ եւ տիրատեաց մարդիկ են եղել,,։

Եւ Վռամը Հրաման տուեց մէնակ Սահակին կանչել իւր մօտ առանձին, եւ ուզում էր Նորանից ամէն բան լսել. իսկ Նա պատասխան տուեց եւ ասաց, Թէ "Ես չգիտեմ, Նոքա ինչ են խօսում. ՙլաւ է՚ Թող իրենք ասեն եւ դուք լսեցէք. ինձ բան մի՛ք Հարցներ, որովՀետեւ այդ չարախօսուԹեան վերայ ինձանից ոչինչ լսելու չէք՝ լաւ կամ վատ։,,

Յետոյ կանչեց Վռամն իւր Հազարապետ Սուրէն ՊաՀլաւին, որ Սահակի [5] ազգակիցն ու տոհմակիցն էր ՙեւ պատուիրեց Նորան՝ յօժարեցնելու Սահակին՚ որ Հայոց Նախարարների Հետ ընկերանայ եւ վկայուԹիւն տայ Նոցա չարախօսուԹեանը։

Նա էլ ՙՍուրէն՚ անուշ լեզու Թափելով՝ ասում խորհեց. է ՙՍահակին՚. "ՈրովՀետեւ դու իմ արենակիցս ու ազգականս ես, քեզ ասում եմ՝ օգուտդ իմացի՛ր. Թէոր այժմ ընկերանաս այդ Նախարարներին, մեծ պատիւ կ՚ստանաս Պարսից Թագաւորից. քու Թոռիդ՝ Վարդանին էլ Հայոց վերայ ՙգլխաւոր՚ կը-

նշանակէ՝ պատուով եւ իշխանութեամբ թագաւորին հաւասար [6]։

Բայց նա 'Սահակ' յանձնառու չեղաւ. "ի՛նչպէս, ասում է, դատարկ փառքի եւ իշխանութիւն գտնելու համար ընկերիս վերայ ղուր բան խօսիմ. կամթէ ինչո՞ւ դուք այդպէս ցանկանում էք Արտաշրին գահընկէց անելու. ըստորում ինձ յայտնի չէ, որ նա ապստամբելու միտք ունեցած լինի։ Իսկ թէ նորա անառակ վարքի համար է՝ որ նոքա գանգատ են անում, դուք նորան պատուի արժան պիտի համարէք՝ ձեր անմաքրասէր օրէնքին համաձայն, թէպէտ մեր օրէնքով նա դատապարտելի է։ Այնու ամենայնիւ ինձանից ամենեւին բան լսելու չէք։„

Ղազար. Սուրէնն, այս պատասխանը որ լսեց մեծ հայրապետից, գնաց պատմեց թագաւորին. թագաւորն էլ սաստիկ բարկացած, զայրացած՝ հրամայեց այնուհետեւ բազմամբոխ ատենի մէջ հարցնելու Հայոց նախարարներին եւ Արտաշէսին։

Եւ Հայոց իշխանները շատ կեղտոտ բաներ ու զանազան անվայել խօսքեր խօսան իրենց թագաւորի վերայ. ըստորում ո՛չթէ նորա մէջ եղած բաներն էին ասում, այլ ինչպէս թշնամիք ուրիշ աւելորդ բաներ եւս ասելով՝ մեծ յանցանք բարդեցին նորա վերայ։

Խորեն. Եւ Արտաշրին ականջ չդնելով՝ յօժարութեամբ լսում էր 'Վռամ' չարախօսների 'ասածին', մանաւանդ Սուրմակի խօսքերին։ Որովհետեւ նախարարները խոստացել էին նորան 'Սուրմակին' եպիսկոպոսապետութեան աթոռը, այդ պատճառով նա էլ ինքնասիրութեամբ պատրաստել էր իւր լեզուն 'ինչպէս' մի սուր սատակիչ։

Արտաշէսն իւր վերայ չառաւ ՙեւ պատասխա- Ղազար.
նեց՚ թէ "Այդպէս չէ,,. բայց լողները չհաւատա-
ցին՝ մտքերը դրած ունենալով ջնջել մէջտեղից
Արշակունեաց ցեղի թագաւորութիւնը. մանաւանդ՝
որ լսեց թագաւորը ՙՎռամ՚ Արտաշէսի դատախազ-
ներից, թէ "Էլ ի՞նչ պէտք է մեղի թագաւոր ՙու-
նենալ՚, թող մի պարսիկ իշխան գայ ժամանակաւոր
վերակացութիւն անէ մեր մէջ, եւ ամէնմէկիս
հպատակութիւնն ու անհպատակութիւնն իմանայ
եւ յայտնէ ձեզի:,,

Այս որ լսեց Վռամ Դրան աւագանու հետ
միասին, շատ ուրախ եղաւ եւ շուտով հրաման
տուեց խլել թագաւորութիւնն Արտաշէսից. ՚եւ Խորէն.
իսկոյն կապել նորան եւ նորա ցեղի բոլոր ստա-
ցուածքը թագաւորական գանձարանն առնել. նմա-
նապէս մեծ Սահակին էլ արգիլել եւ կաթողիկոսա-
րանը արքունական չինել, ՚այն պատճառով, որ նա Ղազար.
չընկերացաւ Հայոց նախարարների հետ միասին
վկայութիւն տալու.՚ եւ նորա փոխանակ Հայոց եպիս- Խորէն.
կոպոսապետութեան աթոռը տալ այն Սուրմակին:
Եւ մեծ պարգեւներով արձակեց նախարարներին՝
մի Պարսիկ մարզպանի [7] հետ միասին, որի անունն
էր Վեհմիհրշապուհ *. ՚սա մարզպանութիւն արաւ Սեբէ. եպիսկ.
տասներեք տարի: ՚Այնուհետեւ վերացաւ թա- Ղազար.
գաւորութիւնն Արշակունեաց ցեղի միջից Արտա-
շէսի ՙթագաւորութեան՚ վեցերորդ տարին ՙ432
թուին՚. եւ Հայաստանն ընկաւ Պարսից անօրէն իշ-
խանների ծառայութեան լծի տակ: [8]

---

* Ըստ Թովմայի "Մշկան:,,

# ԳԼՈՒԽ Բ.

*Հ ա ղ ա ծ ա ն ք :*

***Յազկերտ Բ. ասպատակում է Հոռոմոց գաւառները եւ Հալածում քրիստոնեաներին: Վարազվաղան Սիւնին ընդունում է մոգական կրօն: Յազկերտ Բ. Միհրներսեհի եւ մոգպետի խորհրդով կանչում է քրիստոնեայ զօրքերին եւ հաստատում բանակ Հոնաց դէմ: Նորա ամբարտաւանութիւնը եւ պատրողական միջոցներով քրիստոնեաներին նեղացնելը: Գարեգին նախարարի դիմադարձութիւնն եւ պատժուիլը:***

*«Որոց ոգիքն թուղացեալ են յերկնաւոր առաքինութենէն՝ յոյժ ընդ աչիւ ունկեալ է բնութիւն մարմնոյ. յամենայն հողմոյ շարժի, յամենայն բանէ խռովի, եւ յամենայն իրաց դողայ: Երազագէտ է այնպիսին ի կեանս իւրում, եւ յանգիւտ կորուստն յուղարկի ի մահուան իւրում:»*

ԵՂԻՇԷ:

*Եղիշէ.* Արշակունեաց ցեղն որ զրկուած իշխանու-
թիւնից, Հայաստանին տէր եղան պարսիկ Սասա-
նեանները, որոնք իրենց տէրութիւնը մոգերի
կանոններով [1] էին կառավարում եւ շատ անգամ
կռիւներ էին անում նոցա հետ՝ որոնք այդ
կանոնների տակ չէին մտնում: Այս անում էին նոքա
Արշակ Թագաւորի [2] ժամանակից սկսած մինչեւ
432. Արտաշէս Թագաւորի վեցերորդ տարին: Երբ
սորան էլ Թագաւորութիւնից զրկեցին, այն ժա-
մանակ Թագաւորութիւնն Հայոց նախարարների
ձեռքն անցաւ. որովհետեւ՝ թէպէտ հարկը Պարսից
Թագաւորին էին զրկում, բայց Հայոց պյլուձին [3]
'զօրքը' ամբողջապէս նախարարների առաջնորդու-
թեան տակն էր լինում պատերազմի ժամանակ:
Այս պատճառով էլ աստուածպաշտութիւնը յայտ-
նի եւ անխափան կատարուում էր Հայաստանի մէջ
մինչեւ Յազկերտի Թագաւորութեան երկրորդ տա-

րին։ Այս Յազկերտը հաւատացեալներին համարում էր իրեն թշնամի եւ հակառակորդ. այս պատճառով յարձակեցաւ Յունաց երկրների վերայ, հասաւ մինչեւ Մծբին քաղաքը, շատ Հռոմոց [4] գաւառներ աւերեց ու կողոպտեց եւ բոլոր եկեղեցիները կրակ ձգեց, վառեց։ Թէոդոս կայսրը, որովհետեւ խաղաղութիւն սիրող մարդ էր, Անատոլ անունով մէկին, որ արեւելքի սպարապետն էր, շատ գանձերով ուղարկեց Յազկերտի մօտ. եւ ինչոր այն ժամանակն ասաց ՙՅազկերտ՚, ամէն բան նորա խօսքովը կատարեց ՙԹէոդոս՚։ Եւ ՙՅազկերտը՚ դարձաւ նորից իւր Տիզբոն [5] քաղաքը։ 438.

Անօրէն իշխանն, երբոր տեսաւ, թէ իւր չարութիւնն յաջողւում է, շարժեց շատերին քրիստոնեաների՝ սուրբ ուխտից. միքանիսին սպառնալիքներով, միքանիսին կապելով ու չարչարելով։

Յազկերտը մի հազարապետ ունէր Միհրներսեհ Ղազար. անունով, մի չար եւ վատհոգի մարդ. սա շատ տարիներ յառաջ մտքէն անցրել էր մի վատ խորհուրդ՝ թուլասիրտ հոգիները կորցնելու մասին. եւ գտաւ մի չար օգնական եւ խորհրդատու եւս իւր այս անօրէն մտածութիւնը կատարելու համար. դա էր Սիւնեաց Վարազվաղան անունով իշխանը, Վասակի փեսան, որն՝ ինչպէս ասում են՝ իւր կնոջ, այսինքն Սիւնեաց իշխանի աղջկայ հետ՚, սիրով չէր ապրում. այս պատճառով աղջկայ հայրն էլ իւր փեսայի վերայ վատ աչքով էր նայում, այնպէսոր մինչեւ անգամ հալածեց դուրս արաւ նորան Հայաստանի միջից. չարհոգի Վարազվաղանն էլ հասկանալով, որ Վասակն ուրախ է նորա հեռանալուն, եւ մանաւանդ չէր էլ կարող նորա բռնու-

թեանը դիմանալ, փախաւ Պարսից երկիրը եւ եկաւ Մեհրներսեհի մօտ. այն տեղ ինքնակամ ուրանալով այն սուրբ հաւատը, որ քարոզեց սուրբ Գրիգոր, բոլոր տկարամիտ մարդիկների հոգու կորստեանը պատճառ եղաւ անօրէն Միհրներսեհի հետ միասին։

Խրատ էր տալիս Մեհրներսեհը Վարազվաղանին եւ ասում. “Նայէ մէկ մտքիդ աչքովն ու տես, ահա մի այնպիսի թագաւորութիւն, որն հզօր է եւ բոլոր թագաւորութիւններից բարձր. դորան համեմատ էլ մեր հաւատքն այսպիսի մեծ թագաւորութեանն արժանի կերպով ընտրուած է, ինչպէս մի ստոյգ եւ վայելուչ հաւատք. ընտրում՝ ո՞վ չի տեսնում ամբողջ տիեզերքի մէջ արեգակի փառաւորութիւնը. Նորա ճառագայթներից լոյս են առնում ամէն արարածները. Նորանով կերակուր են գտնում եւ ուրախանում ամէն բանաւորները. Նորանով են լցւում, հասունանում են բոյսերն ու սերմերը եւ մարդուս ապրուստ հասցնում եւ ուրախութիւն։„ Վարազվաղանն այս անմիտ վարդապետութիւնը լսելով՝ պատասխան տալ չկարողացաւ, որովհետեւ իւր աներոջ նախանձովը կապուել էր լեզուն։ Ինքն իրեն միտք արաւ՝ թէ այս իմ արարքս երկու կողմով էլ ինձ օգուտ կըբերէ. կամ Հայերը կը համաձայնին եւ կ՚ուրանան իրենց հաւատը, այն ժամանակ ես մեծ պարգեւների եւ պատուի կը հանիմ Պարսկների կողմից, ինչպէս մէկ հաւատարիմ մարդ ու այսպիսի մեծ ու կարեւոր օգուտների ճանապարհ ցոյց տուօղ. կամ եթէ չյօժարանան Հայերն ու դէմ կենան, այսպիսի մի մեծ ույժի առաջը չկարողանալով դիմանալ, պիտի կորչին միանգա-

մայն, կրկորչի թերեւս եւ իմ թշնամիս ‘Վասակը’ այդ բանի մէջ։

Այս բանը որ լսեց Միհրներսէհն՝ ուրախուրախ մտաւ Թագաւորի մօտ, խօսաւ նորա հետ առանձին կերպով ու ասում է. «Տէրերին վայելում է՝ չէ թէ մէնակ օգուտ քաղել իրենց ծառաներից, այլեւ նորանց հոգիները գտնելու վերայ եւս մտածել։ Քանի՞ երկիր կայ ահա, որոնց վերայ դուք իշխում էք ինչպէս Աստուած, առաջինը Հայաստանն է. նորա հետ էլ Վրաստանն ու Աղուանքը. դուք միայն նոցա բերած օգուտին էք նայում, բայց՝ որ ամէնքից կարեւորն եւ մեծն է՝ այնչափ կորած հոգիների փրկութեան վերայ բնաւ չէք էլ մտածում։ Դուք ինքերդ գիտէք եւ բոլոր Արիքն եւս, թէ ինչպէս մեծ եւ պիտանի երկիր է Հայաստանը. կայսեր ‘Յունաց’ իշխանութեանը մօտիկ եւ սահմանակից է եւ միեւնոյն հաւատքն ու աստուածպաշտութիւնն ունի ինչոր Յոյները։ Թէոր նորանց մեր հաւատքին դարձնէք, այնուհետեւ նոքա ձեզ կըսիրեն եւ Արեաց երկիրը. երբոր Հայերը մեզ հետ սերտ լինին, Վրացիք ու Աղուաններն էլ մերն են ու մերը։ — Ես թէեւ այս բանի վերայ աւելի վաղ էի մտածած, բայց առաւել հաստատութիւն գտայ այս իմ մտածութեանս մէջ այն Սիւնեաց իշխանի ‘Վարազվաղանի’ պատճառով, որն հասկացաւ թողնել իւր սխալ հաւատքը եւ ընտրել մեր ճշմարիտ ու հաստատուն հաւատքը, որն եւ յօժարութեամբ ու սիրով յանձն առաւ ‘պաշտելու’. Նորա պատճառով աւելի հասկացայ այն հոգեւոր եւ մարմնաւոր օգուտը, որն այս գործերից հանելու է ձեր թագաւորութեանը։ Այլ եւ նա, որ սերտ սիրով

անձնատուր եղաւ, իւր ընկերներից եւ տոհմակիցներից աւելի արժան է բարձր փառքերի հասնելու. որպէսզի նորա տոհմը եւ բոլոր Հայոց մեծամեծները տեսնելով այն բարիքն ու շքեղութիւնը, որ դուք տալիս էք նորան, նախանձին եւ իրենք էլ յօժարութեամբ կատարեն ձեր հրամանը: — Եթէ այս ամէնը այսպէս չլինի, կասկածում իմ, որ յետոյ չլինի թէ ինչ ազգի հաւատքին որ հաստատ են, նորան եւ ծառայութիւն անել ցանկանան 'Հայերը':,,

Երբոր Ցազկերտն այս ամէնը լսեց հազարապետից, հաւանեցաւ նորա դատողութեանը եւ գովելով՝ յայտնեց նոյնը մոգերին եւ մեծամեծներին:

Եղիշէ· Ասում են մոգերը՝ "Քաջ Թագաւոր, աստուածները տուել են քեզ տէրութիւն եւ յաղթութիւն եւ նոքա կարօտ չեն բնաւ մարմնաւոր մեծութեան. միայնթէ բոլոր ազգերին, որ քու տէրութեանդ մէջն են, մէկ հաւատի դարձնել կարողանաս, այն ժամանակ Ցունաց երկիրն էլ կը հնազանդի եւ կը մտնի քո օրէնքիդ տակ: Ուրեմն, զօրք ժողովէ եւ գունդ կազմէ, եւ գնա դէպի Քուշանաց աշխարհը. բոլոր ազգերին հաւաքէ ու անցնել տուր Պահ-դռնից ներս, եւ դու այն տեղ հաստատէ քո բնակութիւնդ. երբոր արգելես բոլորին եւ փակես այն հեռաւոր օտարութեան մէջ, քո խորհուրդդ եւ կամքդ կը կատարուի. կը տիրես դու Քուշանների երկրին, Ցոյներն էլ քո իշխանութեանդ դէմ չեն ելնիր: Միայնթէ քրիստոնեաների աղանդը մէջտեղից վերցուր:,,

Այս խորհուրդին հաւանեցան Թագաւորն եւ մեծամեծները. հրովարտակներ ուղարկեց իւր տէրութեան բոլոր տեղերն այսպէս:

"Առանց ձեզի նեղութիւն տալու ելանք գնացինք Ցաւնաց երկիրը, եւ առանց կռուի նուաճեցինք բոլոր երկիրը մեզ ծառայելու. դուք ուրախ եղէք. մենք մտքերս դրել ենք մեր ձեռքի տակ քաշելու եւ Քուշանների տէրութիւնը. Հրովարտակս տեսնելներուդ պէս շուտով այրուձի գումարեցէք եւ ինձանից յառաջ 'ճանապարհ ելէք' ու ներկայացէք ինձ Ապար [8] աշխարհքում։„

Այս օրինակով հրովարտակ գնաց Հայաստան, Վրաստան, [9] Աղուանք [10] եւ ուրիշ շատ հեռու տեղեր։ Գունդ կազմուաւ Հայաստանից, Վրաստանից, Աղուանքից եւ ուրիշ զանազան երկրներից, որոնք ամէնքն էլ հաւատացեալներ էին։ Առանց հասկանալու Թագաւորի երկդիմի նպատակը ճանապարհ ընկաւ ամէնն իւր երկրից միամիտ սրտով եւ տիրասէր մտքերով. նաեւ տարան իրենց հետ սուրբ կտակարանները, շատ պաշտօնեաններ եւ աւելի շատ քահանաներ. Ժողովրդին էլ հրաման տուին, որ չլինի, թէ նոցա կենդանի վերադառնալուն յոյս ունենան, այլ նոցա մահուան օրերին սպասեն. ըստորում՝ իրաւ է Թագաւորի միտքը նորանց յայտնի չէր, բայց ամէնքն էլ կասկածի գնացին. մանաւանդ երբոր Ցոյների զօրութիւնն էլ ընկճուած տեսան։ Միտք էին բերում Պօղոսի ասածը թէ "Ծառանե՛ր, հնազանդ եղէք ձեր մարմնաւոր տէրերին„. եւ սուրբ Հոգւոյն յանձնեցին իրենց, ու գնացին ներկայացան Թագաւորին՝ կատարելով նորա կամքը։ Շատ ուրախ եղաւ Թագաւորն, երբոր տեսաւ բարբարոսների [11] 'Հայերի' գնդի բոլոր կազմութիւնն ու բազմութիւնը, որոնք միամիտ սրտով եկել էին Թագաւորին ծառայելու։

Եղաւ գնաց Հոնաց երկրի վերայ եւ երկու տարու չափ կռուելով՝ բոլորովին չկարողացաւ ազդել նոցա վերայ. մարձիկներին արձակեց ամենին իւր տեղը, եւ նոցա փոխանակ ուրիշներին կանչեց իւր մօտ նոյն գործի համար։ Այսպէս՝ տարէցտարի սովորութիւն արաւ եւ իւր բնակութեան տեղն
441-448 էլ հէնց այն տեղ հաստատեց՝ իւր թագաւորութեան չորրորդ տարուց սկսած մինչեւ մետասաներորդ տարին։ Երբոր տեսաւ թէ Ռուռումները հաստատ մնացին իրենց խօսքին եւ Խայլնդուրները [12] դադարեցան ճորայ պահակից [13] դուրս գալու, եւ Հոնաց թագաւորին էլ նեղ տեղը ձգեց, այն ժամանակ աւետիս ղրկեց իւր տէրութեան բոլոր ատրուշանները, [14] սպիտակ ցուլեր եւ գիսաւոր նոխազներ մատաղ արաւ առատութեամբ. պսակներով ու պատիւներով մեծարեց մոգերից եւ մոգպետներից շատերին։ Նմանապէս հրաման տուեց, որ յափշտակեն Պարսկաստանում գտնուող քրիստոնեաների կայքն ու կայանքը։ Այսպէս՝ հպարտացաւ նա ինքն իր մտքում, եւ իրեն մի մեծ բանի տեղ էր դընում, շատ էլ բարկանում էր Քրիստոսի անուան վերայ, երբ լսում էր, թէ նա տանջուաւ, խաչուաւ, մեռաւ ու թաղուաւ։ Հայոց երիտասարդ նախարարներից մէկը միանգամ նորա դէմ խօսաւ եւ ասում. է "քա՛ջ թագաւոր, ի՞նչտեղից գիտես դու այդպիսի բան խօսել մեր տիրոջ վերայ։" Թագաւորն ասաց. "հէնց իմ առաջս կարդացել են ձեր մոլորութեան գիրքը։" Պատասխան տուեց պատանեակն եւ ասում է." Ինչո՞ւ միայն մինչեւ այդտեղը կարդալ տուիր. միփոքր աւելի կարդալ տայիր եւ կըլսէիր նորա յարութիւն առնելը, շա-

տերին յայտնուիլը, երկինք վերանալը, Հօր աջ կողմը նստիլը, երկրորդ անգամ գալու մասին խոստանալը, արդար դատաստանով համառօտ հատուցմունք տալը։„ Թագաւորը բարձրաձայն ծիծաղեցաւ* ու ասաց. “այդ ամէնը խաբէութիւն է։„ Պատասխանեց Քրիստոսի զինուորն եւ ասաց. “Թէոր քու աչքիդ հաւատալի են երեւում Նորա մարմնաւոր չարչարանքները, առաւել հաւատալի պէտք է լինի նաեւ Նորա երկրորդ ահաւոր գալուստը։„ Այն ժամանակ թափեց բոլոր բարկութիւնն այն երանելի մարդու վերայ, որի անունը Գարեգին էր, եւ երկու տարու չափ չարչարել տալով նորան՝ խլեց ձեռքէն տանուտիրութիւնը [15] եւ ՙԳարեգինն՚ ընդունեց մահու վճիռ։

---

* Եղիշէի այս հատուածն երկու կերպ է գրչագրների մէջ. Խոնարհեալ վեր է վայր ծիծաղեցաւ, — Ի խոր խոցեալ վեր է վերայ ծիծաղեցաւ։

# ԳԼՈՒԽ Գ.

## Առաջարկութիւն:

*Յազկերտը խորամանկութիւններ է անում քրիստոնեաներին գայթակղեցնելու: Յայտնի հրամայում է մոգութիւն պաշտելու եւ բացարձակ հալածում է հաւատացեալներին: Դենշապուհ պարսիկը գալիս է Հայաստան եւ ծանր փոփոխութիւններ է ձգում: Յազկերտը նամակ է գրում քրիստոնեայ հպատակներին եւ պահանջում է ուրացութիւն:*

> «Ոչ եթէ ընդ մարդոյ է ուխտ հաւատոց մերոց, եթէ պատրիցիմք իբրեւ զտղայս, այլ ընդ Աստուծոյ:»
>
> ԵՂԻՇԷ:

Եղիշ. Քրիստոնեաները, որ բանակումն էին, սկսեցին բարձր ձայնով հոգեւոր երգեր երգել եւ բոլոր բանակի առաջն յայտնի կատարել ժամասացութիւնը: Անօրէն իշխանն ՙՅազկերտ՚, որ իմացաւ՝ թէ իւր խորամանկ խորհուրդները յայտնի եղան, սկըսեց յառաջ քաշել փոքրերին մեծերի միջից, անըշաններին երեւելիների միջից, տգէտներին գիտուններ միջից եւ թոյլ վախկոտ մարդոցը՝ քաջերի միջից: Որի՛ն ոսկով ու արծաթով էր խաբում, որի՛ն առատ պարգեւներով. միքանիսին էլ մեծամեծ պատիւներ ու իշխանութիւններ տալով. մինչեւ անգամ հայրուորդուն էլ բաժանում էր իրարուց: Կեղծաւորութեամբ խոնարհում էր բոլորի առաջ, երեսանց սէր ցոյց տալով, որպէսզի կարողանայ խորամանկութեամբ որսալ ՙնոցա՚, ինչպէսոր իւր խորհրդականները խրատ էին տուել յառաջուց:

Այս անում էր իւր թագաւորութեան չորրորդ
441-448 տարուց սկսած մինչեւ մետասաներորդ տարին: Երբոր տեսաւ, թէ իւր ծածուկ հնարագիտութիւնը բանի տեղ չանցաւ, ակամայ յայտնեց իւր խոր-

Հուրմզը եւ ասում է, "Ի՛նչ ազգ, ի՛նչ լեզու որ իմ իշխանութեանս տակ կայ, ամէնքն էլ պիտի թողնեն իրենց սխալ հաւատը եւ միմիայն արեգակին պիտի երկրպագութիւն անեն — կրակ պաշտելով եւ մոգութեան օրէնքները կատարելով:,,

Իւր թագաւորութեան երկոտասաներորդ տա- 440 թ.
րին անհամար բազմութեամբ յարձակեցաւ Քուշանաց երկրի վերայ, շատ բերդեր ու քաղաքներ առաւ եւ շատ գերի ու աւար ժողովեց:

Այնուհետեւ իւր սխալ կարծիքը նորից հաստատեց մոքումն եւ ասում է. "Ի՞նչ կարող ենք հատուցանել աստուածներին մեր այս մեծ յաղթութեան փոխարէն,,: Մոգերն ու քաւդէներն ասում են նորան. "Աստուածները տէրութիւն տուին քեզի եւ յաղթութիւն քու թշնամիներիդ վերայ. Նոքա քեզանից ոչ մի բան խնդրելու կարօտութիւն չունին, միայնթէ վերցնես մէջտեղից մարդուս բոլոր սխալ ուսմունքները եւ բոլորին էլ միեւնոյն զրադաշտական հաւատն ընդունել տաս:,, Խորհուրդարին եւ այդ խրատը յաղթեց: Պահ-դրան ներսի կողմիցն արգելեց Հայոց, Վրաց եւ Աղուանից այրուձին, սաստիկ հրաման արաւ դռնապաններին, որ "եթէ դէպի արեւելք գալող լինի, ներս թողնին, իսկ արեւելքից արեւմուտք գնացողների համար անանց լինի ճանապարհը:,,

Այն ժամանակ սկսեց ստիպել մեծ չարչարանքներով ու տանջանքներով, որ ուրանան ճշմարիտ Աստուածը: Զօրականներն առհասարակ միաբերան աղաղակում էին ու ասում. "Երկինք երկիր վկայ են, որ մենք երբէ՛ք թոյլ չենք եղել արքունի ծառայութեան մէջ. զո՜ւր անողո՜րմ են այդ հարուած-

ները, որ մեզ տալիս էք։„ Թագաւորն էլ երդումով հաստատում էր ու ասում.“ Ոչմէկիդ էլ բաց թողնելու չեմ, մինչեւոր իմ կամքս չկատարէք։„

Տասներկու օրից յետոյ հրաման տուեց, որ առատ ընթրիք պատրաստեն, եւ քրիստոնեայ զինուորականներից շատին էլ հրաւիրեց. սիրով խոնարհութեամբ խօսում էր նոցա հետ, որ գուցէ հաւանին զոհած միս ուտելու. բայց՝ երբ նոքա յանձնառու չեղան, բնաւ չստիպեց, այլ հրամայեց, որ սովորական կերակուրը տան նոցա։ Եւ երբոր այնտեղից դուրս եկան արքունի սրահը, միքանիսին բռնեցին ձեռքերն յետեւները կապեցին եւ զգուշութեամբ պահեցին՝ ոմանց երկու օր եւ ոմանց երեք։ Գունդգունդ ուղարկում էին նոցա հեռու երկիրներ՝ Թագաւորի թշնամիների դէմը կռուելու համար. եւ բոլորի թոշակը նշանակածից պակաս էին տալիս. անօթի ծարաւ պահում նեղացնում էին նոցա. եւ վատ տեղերն էին նշանակում նոցա համար ձմերանոց։ Ինչքանոր չարութիւնն աւելացնումէր նոցա անարգութիւնը, նոքա ՙքրիստոնեայ զինուորները՚ եւս առաւել զօրանում էին Քրիստոսի սիրով։ Միայնթէ նոցա արտաքին տեսքը շատ ողորմելի էր օտարութեան մէջ. ա՛յնպիսի պատուական զինուորները հասել էին անշուք եւ անպատիւ վիճակի. եւ մեր հայրենեաց ազատների դասը մի սարսափելի ծառայութեան մէջն էր գազան բռնաւորի ձեռին։

Յազկերտն Հայաստան ուղարկեց Դենշապուհին, որ աշխարհագիր անէ բոլոր երկրի մէջ՝ որպէսթէ հարկերից ազատելու եւ այրուձին թեթեւացնելու մտքով։ ՙԲայց Դենշապուհը՚ նախ՝

եկեղեցու ազատութիւնը խլեց ‘այսինքն եկեղեցու վերայ էլ հարկդրեց’. երկրորդ՝ վանքերում բնակող միայնակեաց քրիստոնեաներին էլ նոյն աշխարհագրի մէջ մտցրեց. երրորդ՝ ժողովրդի վերայ աւելի ծանր հարկեր դրեց. չորրորդ՝ բանսարկութեամբ նախարարներին իրար դէմ հանեց. եւ այս ամէնն արաւ ‘այն մտքով’, որ գուցէ՛ միաբանութիւնը քանդէ, եկեղեցական ուխտը ցիրուցան անէ եւ գիւղականներին էլ խեղճութեան մէջ ձգէ, որպէսզի սաստիկ աղքատութիւնից ստիպուած ակամայ դիմէն մոգութեան օրէնքն ընդունելու. հինգերորդ՝ ‘Հայոց’ հազարապետի [2] դէմ գրգիռներ հանեց եւ գանգատներ անել տուեց ու գործից հրաժարեցրեց, Նորա տեղը մի պարսկի բերեց Հայաստան եւ մի մոգպետի էլ դատաւոր նշանակեց Հայերի համար։

Այս ամէն գործերը որ կատարուան՝ շատ սարսափելի բաներ էին։ Ըստորում էլ ո՞վ կարող է խօսել հարկերի ծանրութեան վերայ. կամ թէ լեռների, դաշտերի եւ անտառների [3] համար որոշած բաժերի ու հասերի վերայ։ Պարսիկներն իրենք անգամ զարմանում էին, թէ ինչտեղեցոր այս բոլոր գանձը դուրս է գալիս՝ ի՞նչպէս կարող է այն երկիրը չէն մնալ տակաւին։

Երբ որ տեսան ‘Պարսիկները’ թէ այս բոլոր ծանրութիւններով չկարողացան ձանձրացնել ‘մեզ’, այնուհետեւ յայտնի հրաման տուին մոգերին եւ մոգպետներին այսպիսի մի նամակ գրելու ‘թագաւորի բերանից’։

“Միտք բերինք թէ՝ ինչպէսոր մեր իշխանութեան տակ գտնուող ամէնմէկ մարդուց օգուտ եւ Հազար.

հպատակութիւն ենք վայելում, այնպէս էլ պարտաւոր ենք նոցա բոլորի հոգու փրկութեան վերայ հոգս քաշելու. եւ թէոր այդպիսի մի մեծ հոգացողութեան մէջ ծոյլ գտնուինք, տեղեկացանք մեր օրէնքներից, որ ծանր պատուհաս կ՚ստանանք աստուածներից։ Ուրեմն թէոր մենք պատիժ պիտի ստանանք այն պատճառով, որ ձեր միտքը չենք ձգում այդ բանը, դուք եւս առաւել պիտի վախենաք, թէոր թոյլ գտնուիք ամենմէկիդ հոգու օգուտը ճանաչելու, ըստորում այն ժամանակ դուք պատժուելու էք մեզանից եւ աստուածներից։ Այս պատճառով մեր ճշմարիտ եւ արդար հաւատքի վարդապետութիւնը ահա գրել տուի եւ ուղարկեցի ձեզ. եւ կամենում ենք, որ՝ ինչպէս դուք օգտակար էք մեր տէրութեանը եւ սիրելի, այնպէս եւ մեր ճշմարիտ ու նշանաւոր հաւատքն ուսանիք ու ընդունէք եւ չպաշտէք մի այնպիսի հաւատք, որն ամենքիս էլ յայտնի է թէ՝ սուտ է եւ անօգուտ։ Այլ եւ հրամայում ենք, որ ձեր կարծեցեալ հաւատի վարդապետութիւնն էլ գրէք՝ եւ ղրկէք՚ մեզ։„

ՙԱհա եւ մոգական կրօնի վարդապետութիւնն ըստ Եղիշէի։՚

Եղիշէ: “Որմիզդն ստեղծեց երկինքն ու երկիրը. Արհմնը նորան հակառակ գործեց. ամենայն լաւ բան, որ երկնքի եւ երկրի մէջ լինում է, Որմզդի գործն է. եւ ամենայն վատ բան, որ երկնքի եւ երկրի մէջ լինում է, Արհմնի գործն է. յաջողութիւնը, տէրութիւնը, փառքը, պատիւը, մարմնու առողջութիւնը, դէմքի գեղեցկութիւնը, լեզուի ճարտարութիւնը, մարդուս երկարակեցութիւնը՝ այս ամենը

Որմզդի գործն է. եւ ամէն բան, որ այդպէս չէ, նորա մէջ չարի մասը խառն է: Մարդիկ սխալւում են, որ ասում են, թէ մահն Աստուած ստեղծեց եւ չարն ու բարին նորանից են լինում. մանաւանդ՝ ինչպէս քրիստոնեաներն են ասում, թէ Աստուած նախանձոտ է՝ մէկ թզի համար մահ ստեղծեց. նոքա ասում են, թէ այն՝ որ երկինքն ու երկիրն ստեղծեց, կնոջից է ծնել: Թէոր Յոյները տգիտութեամբ մոլորուած են եւ զրկուած են մեր կատարեալ հաւատքի շնորհից, իրենց վերայ է մեղքը. դուք ինչո՞ւ նոցա մոլորութեան յետեւից էք գնում. ինչ հաւատք որ ձեր տէրն ‘թագաւորն’ ունի, նոյնն էլ դուք ընդունեցէք, ըստորում Աստուծոյ առաջ ‘մենք’ պէտք է համար տանք ձեր մասին: Մի՛ք հաւատար ձեր առաջնորդներին. նոքա ինչոր լեզուով սովորեցնում են, գործով կատարել կամ յանձն առնել չեն կարող. վատը լաւից վեր են դասում. մեռնելը գովում են եւ ապրելը պարսաւում: եւ որ ամէնից վատն է, քարոզում են, թէ Աստուած խաչուել է մարդիկների ձեռքով, մեռել է, թաղուել է եւ ապա յարութիւն առել ու համբարձել երկինք: Ուրեմն երկու բան կայ ձեր առաջը. կամ խօսք խօսք պատասխան տուէք Նամակիս, կամ թէ ոչ՝ վե՛ր կացէք, եկէ՛ք Դուռը եւ ներկայացէ՛ք մեծ հրապարակին:,, 5

’Նամակի հետ միասին հրամայեց Յազկերտ աւարուշաններ եւ փուշտիպաններ՝ 6 եւ քրմեր ուղարկել մեծամեծների ձեռքով. նոքա եկան Հայաստան եւ տուին Նամակը մեծ Նախարարներին: Մտեփ. եպիսկ.

## ԳԼՈՒԽ Դ.

### Պատասխան:

*Հայոց Յովսէփ կաթողիկոսն Արտաշատի ազգային ժողովով պատասխանում է նամակին: Նամակի բովանդակութիւնն ըստ Եղիշէի եւ Ղազարու:*

> «Ոչ է եկեղեցի շինուած մարդոյ, ոչ պարգեւք թագաւորաց եւ ոչ արուեստ ճարտարութեանց. հիմունք նորա ոչ ներքինք շարժել կարեն՝ եւ ոչ վերինք դրդուեցուցանել. եւ զոր երկինք եւ երկիր ոչ դողացուցանէ մի՛ ոք ի մարդկանէ խրոխտացի յաղթել նմա:»
>
> ԵՂԻՇԷ:

Ղազար. Երբոր Հայոց մեծամեծներն այսպիսի մի հրովարտակ ստացան, այնուհետեւ Հայոց տանուտէրների
Եղիշէ. հրամանով հաւաքուան Արտաշատ [1] քաղաքում իւրաքանչիւր գաւառի սուրբ եպիսկոպոսներն եւ պատուական քահանաներն ու վանականները. 'եկաւ' եւ Յովսէփը, որ թէեւ ձեռնադրութեամբ քահանայ էր, բայց Հայոց կաթուղիկոսի պաշտօն էր կատա-
Սամփ. եպիսկ. րում այն ժամանակ, եւ միասին խորհուրդ արին ու գրեցին Թագաւորին մի շատ բիրտ եւ պինտ պատասխան իրենց կրօնի մասին՝ այս օրինակով:

Ղազար. «Մեր լուսաւոր եւ ճշմարիտ օրէնքի մէջ գրուած է, թէ «Ծառաներ հնազանդ եղէք ձեր մարմնաւոր տէրերին՝ ինչպէս Աստծուն.» մենք էլ՝ թէ՛ մեր օրէնքի այդ հրամանից երկիւղ կրելով եւ թէ՛ ձեր մեծ Թագաւորութիւնից, մինչեւ գրել ենք՝ չէ թէ երկիւղից ստիպուած, այլ կամաւ եւ յօժարութեամբ կատարել ձեր կամքը եւ ծառայել ձեզ ոչմիայն մեր ունեցած չունեցածը ծախսելով, այլ եւ մեր եւ մեր որդւոց արիւնը ձեզի համար թափելով:

Բայց ինչոր մեր հոգիներին կրվերաբերի,

այդ կողմից դուք ոչմի նեղութիւն միք քաշեր. եւ այն պարգեւի կամ պատուհասի մասին, որ ահ էք քաշում աստուածներից, այն թող մեր գլխին լինի, թէ օգուտը եւ թէ Աստծու պատիժը: Որովհետեւ անկարելի է մեզ, որ սկզբից այս հաւատն ուսել եւ պահպանել ենք, այդ հրամանին միտք դարձնել եւ հաւանիլ. մենք լոկ խօսքերով լսել անգամ չենք կարող, որովհետեւ չենք էլ ուզում:

Ինչոր ձեր հաւատքին կրօնաբերի, որ գրել տուել եւ ղրկել էիր մեզ, մենք ձեզ երբէք ականջ դնելու չենք, թող թէ գրածներդ կարդալու կամ լսելու յօժարութիւն էլ ունենանք. բայց ձեր թագաւորութիւնն աւելի պատուելու համար գրածներդ բանալ եւ տեսնել անգամ չուզեցինք, որովհետեւ այն հաւատքը, որ գիտենք թէ սուտ է եւ անմիտք, նորա մասին ոչ կարդալ է պէտք եւ ոչ լսել, ընտրում կարդալուց կ'ստիպուինք ծաղր անել, որով հաւատքն էլ, նորա առաջնորդն էլ եւ նոքա, որոնք այդպիսի խաբէութիւններ են պաշտում, բոլորը մէկտեղ պիտի թշնամանուին:

Այս պատճառով մենք էլ անպատշաճ համարեցինք մեր հաւատի ուսմունքը ձեզ գրելու եւ ղրկելու, ինչպէսոր ձեր հրամանն էր. ընտրում թէոր ձեր սուտ եւ ծաղրելի ուսմունքը արժան չհամարեցինք կարդալու, որ ձեզ չթշնամանենք, ի՞նչպէս կարող էինք այսպիսի աստուածասէր եւ ճշմարիտ ուսմունքը ձեր անգիտութեանը գրելու, որ նորա վերայ ծաղր անէք եւ թշնամանէք:

Այս մէկը միայն թող լաւ յայտնի լինի ձեզ մեր հաւատից, որ մենք տարրերքին չենք ծառայում. ձեզ նման արեգակ, լուսին, հողմեր ու կրակ չենք

պաշտում. որովհետեւ մենք մի միայն ճշմարիտ Աստուած ենք ճանաչում, որն երկինքն, երկիրն ու բոլոր նորա միջի բաներն ստեղծեց. եւ նա է բոլոր ձեր ասած աստուածների Աստուածն ու ստեղծօղը։

Եղիշէ. Մենք այսպէս ենք ճանաչում Աստծուն եւ այսպէս էլ հաւատում ենք առանց երկբայու-թեան։ Ո՛չոք չէ կարող մեր այս հաւատքը տեղից շարժել. ոչ մարդիկ, ոչ սուրը եւ ոչ հուրը։ Մեր բոլոր հարստութիւնն ու կարողութիւնը քու ձեռդ է, եւ մարմիններս էլ քո՛ւ առաջդ. արա քու կամ-քովդ ինչոր ուզում ես։ Թէոր այսպիսի մի պա-տասխանի (վրայ) դարձեալ մեզ բան՝ հարցնելու լինիս, ահա պատրաստ կանգնած ենք, եւ մարմին-ներս էլ քու ձեռդ ենք տալիս. շուտով կատարէ՝ ինչոր կամքդ է՝. քեզնից չարչարանք, մեզնից համ-բերութիւն, քու սուրդ, մեր պարանոցները. մի՞թէ մենք աւելի լա՞ւ ենք մեր նախնիներից, որոնք միեւ-նոյն հաւատի համար տուին իրենց հարստութիւնն ու կարողութիւնը եւ մինչեւ անգամ իրենց գլուխ-ները. մենք էլ կըմեռնինք ինչպէս մահկանացու մարդիկ, որ մեր մահն ընդունուի ինչպէս անմա-հութիւն։„

Սեբէ. եպիսկ. Եւ դեսպանները դարձան ու տուին պատաս-խանը թագաւորին։

# ԳԼՈՒԽ Ե.

## Նախարարների գնալը:

**Յազկերտն եւ իւր պաշտօնեաներն Հայերի պատասխանից անբաւական են մնում: Հայոց եւ այլ քրիստոնեաների գլխաւոր նախարարները կոչւում են Դուռը: Նոքա բերանացի եւս մերժում են Յազկերտի առաջարկութիւնը, բայց նորա սպառնալիքներից ստիպուած խնդրում են մտածելու ժամանակ:**

" Զուգութիւն է մայր բարեաց. անզուգութիւն ծնող չարեաց:,,   ԵՂԻՇԷ:

(Ղազար.) Յազկերտն հրամայեց կանչել մոգերին եւ բոլոր մեծամեծներին, բանալ տուեց Հայերի ղրկած նամակն ու կարդալ բոլորի յառաջ:

(Եղիշէ.) Շատերը, որ լսեցին, գովեցին պատասխանը. ոչ այնքան նորա ճարտար լեզուով գրուած լինելուն էին զարմանում, որքան Հայերի համարձակութեանն եւ աներկիւղութեանը:

(Ղազար.) Երբոր նամակի խօսքերին ականջ դրեց պրծաւ թագաւորը, այն ժամանակ հարցրեց մոգերին եւ բոլոր Արեաց մեծամեծներին, թէ ձեզ ի՞նչպէս է երեւում, ծառաները կարո՞ղ են այդպիսի համարձակութեամբ նամակ գրել իրենց տիրոջը: Մոգերն եւ բոլոր մեծամեծները ոտքի կայնան, ասացին, թէ "նոցա կորչելու ժամանակն հասել է արդէն. բայց-թէ դուք ինչպէս պէտք է ճանաչեցնէք նոցա, որ դուք նոցա տէրն էք եւ նոքա ձեր ծառաները, այն ձեր գիտնալու բանն է: Թէոր նոքա մէկ ուրիշ տեղից օգնութեան յոյս չունենային, այդպէս բան իրենց մտքերից անցնել անգամ չէին համարձակիր, ուրթէ նամակով գրէին ձեր թագաւորութեանը:,,

(Եղիշէ.) Իսկ մոգպետը մեծ հազարապետի հետ միասին

ձայն արձակեց եւ ասում է. “Ուշքի ազատ թողնելու չեմ մեծմեծ պատիժներից, մինչեւոր իրենք ակամայ յետ կայնին այնպիսի սխալ ուսմունքներից. թէոր շատ մօտիկ բարեկամներիցս մէկն էլ պատահի, նորա գլխին էլ նոյն բանը կը բերեմ։„

(Դ.ազ.) Թագաւորը ներս կանչեց դպրապետին եւ հրամայեց հրովարտակ գրել՝ երեք երկիրներն էլ՝ Հայոց, Վրաց եւ Աղուանից՝ եւ ոչ թէ առաջուայ սովորութեամբ, այլ ինչպէս թշամիներին՝ հրաման տալով, որ կանչեն անուանուն այս մարդիկներին՝ Սիւնեաց Վասակին, Արծրունեաց Ներշապուհին, Ռշտունեաց Արտակին, Խորխոռունեաց Գադեշոյին, Մամիկոնեանց Վարդանին, Մոկաց Արտակին, Ապահունեաց Մանէճին, Ամատունեաց Վահանին, Վահեւունեաց Գիտին եւ Անձեւացեաց Շմաւոնին։ Այս 10 նախարարներին կանչեցին թագաւորի դուռը։

Ղազար. Երբոր երեք երկիրներն էլ հասաւ այս հրովարտակը եւ իմացան, որ բոլորին այդպէս շտապով կանչում են, իսկոյն հասկացան դորա պատճառը։ Այնուհետեւ երեք երկիրներն էլ (Հայոց, Վրաց եւ Աղուանից) իրարու պատգամաւորներ ղրկեցին. ու խօսք կապեցին եւ շատ երդումներ ուտելով Աւետարանի վրայ՝ հաստատեցին (իրենց խոստումը)։ Մտածում էին, որ եթէ չերթան, ապստամբութիւն կըկարծուի, իսկ եթէ գնա՜ն . . . մոլորանքն իրենց առել էր. երթալն աւելի լաւ համարեցին եւ Աստուծուն իրենց օգնական կանչեցին գործի վախճանի մասին։ Բայց իրենց նպատակները, խօսքերը եւ խորհուրդները սուրբ աւետարանի միջնորդութեամբ հաստատ առանց երկմտութեան որո-

շեցին եւ ՚Ցովսէփ ՙկաթուղիկոսի՚ ձեռքով նոյն Եղիշէ.
խոստումի մէջ հաստատուան ու ճանապարհ ընկան։
Շատ շտապում էին այն եղբայրների, որդիների եւ
սիրելի դայեկասնունդ ազգակիցների համար, որոնք
սաստիկ մեծ նեղութեան մէջ էին ՙՊարսից բանա-
կում՚։ Երբոր հասան թագաւորի Դուռը, պատկի
շաբաթ օրը ներկայացան թագաւորին. թէեւ տես-
նում էին, թէ ինչպէս մեծ ցաւերի ² մէջն են
իրենց եղբայրները, բայց երեսով բնաւ ցոյց
չտուին հրապարակին իրենց տրտում կամ տխուր
լինելը։

Առաջուայ ժամանակները սովորութիւն էր,
երբոր Հայերի կողմից պրուձի էր գալիս Դուռը,
մի պատուաւոր զօրագլխի հետ մարդիկ էր ղրկում
ՙթագաւորը՚ նոցա դիմաւորելու, եւ հարցնել էր
տալիս Հայաստանի դրութեան եւ խաղաղութեան
մասին. ինքը թագաւորն անձամբ տեսնում էր գնդի
հանդէսը, նոցա գալը մեծ շնորհակալութեան ար-
ժանի էր համարում եւ յիշում՝ էր նոցա նախնեաց
ծառայութիւնները։ Այն օրը՝ ոչ մի այսպիսի բան
չյիշեց. ՚այլ հրաման տուեց, որ ՙվաղը՚ բոլոր մե- Ղազար.
ծամեծներն երեւելի մոգերի հետ միասին՝ գան
նորա վրանը. եւ թագաւորի ասածը կատարուաւ
միւս օրը։ Ապա հրամայեց, որ Հայաստանից, Վրաս-
տանից ու Աղուանքից եկած ՙնախարարներին՚ ներ-
կայացնեն Ատեանը։ Ամէնից յառաջ Հայոց տա-
նուտէրներին եւ իշխաններին հարցրեց թէ «ի՞նչ
էք կարծում, ես ի՞նչ եմ, ասացէ՛ք ինձ։» Նոքա
էլ պատասխան տուին եւ ասում են. «մենք ձեզ
թագաւոր ենք ճանաչում, ինչպէս ամէնքի վերայ,
եւս առաւել մեզ վերայ. իշխանութիւն ունիս,

ինչպէս Աստուած, մեր վերայ եւ բոլոր Թագաւորութեանդ մէջ եղօղ մարդիկների վերայ. կարող ես մեզ սպաննել եւ ապրեցնել. մեր կեանքն էլ մահն էլ քու ձեռդ են։ „Ցազկերտն այսպիսի պատասխան որ լսեց Նոցանից, ասում է Նոցա. “ձեր այդ պատասխանը շատ հեռու է այն Նամակի մտքից, որն ուղարկել էիք ինձ եւ ամենեւին Նման չէ. որովհետեւ այն Նամակում յայտնել էիք թէ “կայ բան՝ որի համար քեզ ծառայել եւ քու կամքիդ ու հրամաններիդ հնազանդել կարող ենք. բան էլ կայ՝ որ ոչ դու պէտք է ասես եւ ոչ էլ մենք պէտք է լսենք եւ կատարենք։ Արդ՝ ես կամենում եմ պատուով ու մեծամեծ փառքերով թողնել ձեզ ձեր աշխարհքը ‘գնալու’, միայն՝ թէոր այն իմ կամքս էլ կատարելու լինիք, որ ձեր հոգու փրկութեան համար մտածել եմ, եւ յետ կենաք ձեր կորստեան ճանապարհից։ Իսկ թէոր մտքերիցդ ուրիշ բան անցնելու լինիք, էլ Նայելու չեմ ձեր ցոյց տուած այնչափ ծառայութեանն եւ օգտին, այլ կնոջով, զաւակներով եւազգուտակով կըկորցնեմ աշխարհիս միջից։

Ծգիչկ. Երդուել եմ մեծ աստուած արեգակի անունով, որ եթէ վաղն առաւօտը՝ Նորա դուրս գալու ժամանակ՝ ամէնմէկդ ինձ հետ միասին Նորան երկըրպագութիւն չտաք եւ աստուած չանուանէք, ոչ-ոքիդ էլ ազատ թողնելու չեմ ամէն տեսակ Նեղութիւններից, մինչեւոր ակամայ կատարէք իմ կամքս։„

Իսկ հաւատացեալները զուարթ երեսով եւ համեստ լեզուով պատասխան տուին Թագաւորին

Դագար. եւ ասում են. “Քաջ Թագաւոր. միտդ ենք ձգում Շապուհի ժամանակները. [3] Աստուած որ Նորան ժառանգել տուեց Հայոց երկիրը, էլի այս հաւատն

էր, որն այժմ մենք ունինք. մեր հայրերն ու մեր պապերը սիրով կատարում էին նորա բոլոր հրամանները եւ նորանից մեծ մեծ պարգեւներ էին ընդունում: Մենք էլ նոյն կերպ ծառայում ենք՝ քեզ աւելի լաւ քանթէ քու նախորդներին: Այժմ աւելի շատ հարկ է վճարում մեր երկիրը՝ քանթէ քու հօրդ ժամանակ. սուրբ եկեղեցին անգամ, որ սկիզբից ազատ էր մեր նախնեաց կանոններով, դու այժմ հարկի տակ դրիր. մենք քու տէրութեանդ սիրուն՝ ամենեւին չընդդիմացանք քեզի: Ուրեմն ասա մեզ. միթէ մեր հաւատը կարո՞ղ է պատճառ լինել, որ դու մեզ անօգուտ համարես քու առաջդ:„

Իսկ դեւն ՙՑազկերտ՚ ասում է. "Նաս եմ համարում ձեր հարկը իմ թագաւորական գանձիս մէջ ընդունելու եւ անօգուտ ձեր քաջութիւնը: Որովհետեւ տգիտաբար մոլորած էք մեր ճշմարիտ հաւատից. դուցէ աստուածները բարկանալով՝ ձեզ համար մեզանից առնեն վրէժը: Թէոր ուզում էք կեանք ունենալ եւ պատուով յետ դառնալ, ինչոր ասացի՝ վաղն առաւօտեան կատարեցէք անպատճառ:„

Երբ լսեցին բոլոր երեք երկրի իշխաններն այս խօսքերը, մի փոքր լուռ մնացին ուրիշները. բայց առաջ անցաւ աներկիւղ եւ քաջ սրտով Մամիկոնէից Տէր եւ Հայոց սպարապետ Վարդանը, պատասխան տուեց Ցազկերտին բոլոր բազմութեան առաջ եւ ասում է. "Այս երեք երկրի իշխանների մէջ շատերը կան՝ որ գահով [4] եւ տարիքով ինձանից վեր են, շատերն էլ ինձանից ստոր են. այն օգուտն եւ հպատակութիւնը որ պէտք է ծառաներն իրենց տէրերին ու թագաւորին ցոյց տան, Ղազար.

դու՝ որ ամէնքիս տէրն ես, եւ բոլոր Արիքը, շատ լաւ գիտէք, եւ ինձ կամ սոցանից մէկնումէկին հարկաւոր չէ բնաւ իւր բերած օգուտը կամ արած ծառայութիւնը ձեզի հասկացնել։ Ես այսպէս եմ մտածում, որ այսուհետեւ, ինչպէս եւ յառաջ, եթէ հնար լինի՝ մէկ անձս շատ անձինք չինեմ եւ իմ կեանքս ու կարողութիւնս, ինչոր տանս մէջն ունիմ, ձեզի տամ եւ Արեաց Թագաւորի ու Արեաց աշխարհքի համար մաշեմ։ Բայց այն հաւատքը որ ես մանկութիւնիցս ուսել եմ, թողնել եւ մարդուց ահ քաշելու պատճառով՝ մի ուրիշ հաւատքի հետ՝ փոխել անկարելի է. քաւ լիցի։ Իմ պատասխանս այս է, որի վերայ եւ ցանկանում եմ մեռնիլ, քանթէ ուրացութեամբ ապրիլ առանց Աստուծոյ։ Իսկ միւսները, որոնք այստեղ ահա ձեր առաջն են ամէնքն էլ, իւրաքանչիւրն իւր անձի համար պատասխան տալ կարող է։„

Եղիշէ: Եւ երանելի Նախարարներն ասում են բոլորի առաջ. “Չէ, Թագաւո՛ր, դու մի՛ ասեր մեզ այդ բանը. եկեղեցին մարդուս շինածը չէ, ո՛չ էլ արեգակի տուածը. ո՛չ Թագաւորներն են պարգեւել մեզ եւ ո՛չ ճարտարները կազմել, ո՛չ իմաստունների գտած հնարած բանն է նա եւ ո՛չ զինուորների փախցրածը։ Նորա հիմքը ո՛չ մարդիկ կարող են շարժել եւ ո՛չ հրեշտակները դրդուեցնել։ Եւ ինչոր երկինքն ու երկիրը դողացնել չեն կարող, թո՛ղ մարդիկներից ո՛չ մէկը չհամարձակի յաղթել նորան։ Ուրեմն ինչոր կամենում ես, կատարէ՛, պատրաստ ենք բոլորս էլ այն ամէն տեսակ տանջանքները քաշելու, որ դու մեզ սպառնացար, ո՛չ միայն չարչարուելու, այլ մինչեւ անգամ մեռնելու։„

Երեք չորս անգամ կրկնեց Թագաւորն իւր անսուտ երդումը արեգակի անունով եւ ասաց. "Չեմ թողնիր ձեզ, որ շուտով հանիք ձեր ուղածին. այլ ձեզ բոլորիդ եւ նոցա, որոնքոր այստեղ զօրքիս մէջն են, անճանապարհ տեղերով աքսորել կըտամ ամուր բերդերն ու անել բանտերը. անթիւ զօրքեր կըղրկեմ փղերի հետ միասին դէպ ի ձեր աշխարհքը, ձեր կանայքն ու որդիքը տանել կըտամ Խուժաստան, [5] ձեր եկեղեցիներն աւերել կըտամ եւ ապականել:" Դադար.

Երեք երկրի իշխաններն այս որ լսեցին, պատասխան տուին Թագաւորին եւ ասում են. "Թողներէ՛ մեզ Թագաւորը, միքանի օր մտածելու իրար հետ, որ հաստատ պատասխան տանք բոլորս միասին: Որովհետեւ մեր հոգիների ընտրողութեան համար է լինելու պատասխանը. եւ դուք մեր նախնի եւ հայրենական աւանդութիւնը քանդել էք պահանջում, եւ ստիպում էք այնպիսի մի հաւատք ճանաչել, որը ոչ մենք ենք ընդունել ու սիրել՝ եւ ոչ մեր հայրերը:"

Թագաւորն իւր մեծամեծների հետ միասին ընդունեց նոցա ասածը. շնորհեց նոցա խնդրած ժամանակաւորութիւնը, եւ արձակեց ատեանը *:

* Եղիշէի ասածով. "Հրամայեց մեծ անպատուութեամբ դուրս տանել նոցա եւ դահճապետին ասաց, որ զգուշութեամբ պահեն նոցա՝ առանց կապանքի ամենին իւր իջեւանումը:"

# ԳԼՈՒԽ Զ.

## *Նախարարների խորհուրդը։*

**Նախարարները խորհուրդ են անում միասին, թէ ինչպէս ազատուին Յազկերտի ձեռքից, եւ որոշում են առժամանակ երեսանց ուրանալ քրիստոնէութիւնը։ Վարդան Մամիկոնեանն հակառակում է նոցա որոշմանը, բայց երբ Նախարարները երդումով ու խոստում են հաստատ մնալ իրենց որոշմանը, յօժարանում է։ Բոլորն էլ հրապարակաւ երկրպագութիւն են անում արեգակին եւ կրակին։ Յազկերտը Նախարարների հետ մոգեր է ուղարկում Հայաստան կրակապաշտութիւն տարածելու։**

«Եթէ գերծուցես զմեզ յորոգայթադիր թշնամւոյն, ամենայն ատացելոց ի քէն լուսյուք՝ հեղլով զարիւն մեր ի վերայ ամենայն աշխարհին փրկութեան։» ՂԱԶԱՐ։

Եղիշէ. *Հաւատացեալները ‘Նախարարք’ ոչ թէ թուլացան եւ դրդուեցան սուրբ վարդապետների առաջին խրատից՝ այլ հնարք էին փնտռում, թէ ինչպէս անեն, որ իրենց սիրելիներին այն մեծ նեղութեան միջից հանել կարողանան։ Այն մեծամեծներին, որոնք Դրանն իրենց օգնում էին, մեծամեծ խոստմունքներ էին անում եւ բաւականին գանձ էլ հէնց այն միջոցին թափեցին նոցա առաջը։ Աբրահամի օրինակն աչքի առած՝ ասում էին. «Ընդունէ՛, Աստուած, այս մեր կամաւոր զոհը, եւ մի՛ թողնիր որ այս անօրէն իշխանը խայտառակէ քո եկեղեցիդ։»*

*Թագաւորի ներքին խորհրդականներից մէկը, որ կենդանի աւազանում մկրտուած էր, շատ հոգս էր քաշում վշտացեալների վերայ։ Սա՝ երբոր ստուգեց իմացաւ, թէ ինչոր Թագաւորն այնպէս խիստ սպառնացաւ, ամէն փորձանք ուզում է բե-*

րել Հայաստանի գլխին, մի հնարք սովորեցրեց՝ որ նոքա իրենց գլուխն ազատել կարողանան առ այժմ։

Երբ գունդ էին պատրաստում, որ նոցա դէպի անդարձ օտարութիւն աքսորեն, քուշանների կողմից մի գուժկան եկաւ յայտնեց, թէ թշնամիների միջից մի գունդ վրայ պրծաւ եւ աւերեց թագաւորական գաւառները։ Ղազար.

Աստուծոյ երկիւղածները ՙնախարարք՚ այս որ լսեցին, աղօթք արին եւ ասացին. "Շարժէ՛, Տէր, նենգաւորի կամակոր խորհուրդները եւ խափանէ՛ նորա չար կամքը ու դարձուր մեղ խաղաղ խորհրդով դէպի սուրբ եկեղեցին։„

Այն ժամանակ ժողովուան միասին բոլոր երեք երկրի նախարարները, մի երկ՚օր խորհուրդ արին. եւ վերջն այս մտքին եկան առժամանակ՝ թէ "Էլ ուրիշ ճար չունինք այս որոգայթից ազատելու, բացի այն՝ որ երեսանց կատարենք առ այժմ թագաւորի հրամայածը, եւ երբ ամէն մէկս մեր երկիրները հասնինք, այնուհետեւ կամ ապրինք ՙայնտեղ՚ Քրիստոսի ճշմարիտ հաւատը պաշտելով, կամ թողնինք մեր երկիրները եւ ամէն մարդ իւր կինն ու որդիքն առնի գնայ օտարութիւն։ Իսկ թէոր մենք միայն մեր անձերի փրկութիւնն աչքի առաջ ունենալով՝ դէմ կենանք այս անօրէն իշխանի հրամաններին, դորանով մենք կըլինինք պատճառ, որ անթիւ մարդիկ ու կանայք, ծերեր ու տղայք յաւիտենական կերպով կըկորչէին։„

Բայց չէին վստահանում իրենց մտածածը յայտնել Հայոց զօրավար Վարդան Մամիկոնէին, որովհետեւ գիտէին, որ նա այդպիսի խորհուրդին հաւանելու չէ. չէին էլ կարող համբերել, որ նո-

րան չյայտնեն եւ չպատմեն այդ ամէնը, որովհետեւ գիտէին, որ առանց Նորան բոլոր այդ խորհուրդները թերի եւ անկատար կըմնան. մանաւանդ տեսել էին ամէնքը եւ գրքերից էլ լաւ իմանում՝ էին, որ ամէն այդպիսի գործերը իսկզբանէ անտի մեծ մասամբ Մամիկոնեան ցեղի ձեռքով եւ նոցա ‘Մամիկոնեանների’ միաբանութեամբ են գլուխ եկել: Այս ամէնը որ միտք բերին բոլոր նախարարներն ու իշխանները, ամէնքը միասին եկան Մամիկոնէից տէր Վարդանի մօտ եւ յայտնեցին Նորան իրենց խորհուրդն ու ասացին. "Նայէ մէկ առաջդ եւ տես, թէ ինչ տեսակ սարսափելի ցաւեր պիտի պատահին. յիշէ մայրերի հառաչանքը, միտք բեր երեխաների լացը եւ բռնութեամբ օտարութիւն քշուող ծերերի ու պառաւների ողբը. եթէ մէնակ մարմնաւոր նեղութեամբ եւ մեռնելով վերջանալու լինէր այդ ամէնը, դարձեալ ծանր կըլինէր միանգամայն եւ անտանելի. ուր մնաց որ առհասարակ հոգու եւ մարմնու կորուստ է եւ դայթակղութիւն. եւ չէթէ լոկ հարեւանցի կըլինի այդ եկած փորձանքի վերջը, այլ միշտ մինչեւ յաւիտեան պիտի խստութեամբ տիրէ մեր եկեղեցիների, ժողովրդի, կանանց ու զաւակների վերայ ամբարշտութեան խաւարը: Եթէ դու մեր խորհուրդն ընդունես եւ կարողանաս քու միտքդ առայժմ յօժարացնել, գիտենք, որ շատերս ողորմութիւն կըգտնենք եւ մեր երեք երկրի եկեղեցիներն առհասարակ չեն աւերուիր ու նոցա բոլոր բնակիչներն էլ գերի չեն տարուիր: Որովհետեւ ‘այդպիսով’ սուրբ հաւատը տեղից չի շարժիր, այլ թէեւ մի փոքր կըխախտուի, սակայն Ամենակալի աջը նորից կըկանգնեցնէ հաս-

տատ ու կ՚ամրացնէ։ Եւ ՙայդ՚ հաստատ կըլինի այդպէս, թէոր կարողանաս մի փոքր հիւանդանալ մեզ համար, որպէսզի ամենագթած բժիշկ Բանն Աստուած մեզ էլ քեզ հետ միասին առողջացնէ։,,

Այս ամէնը որ լսեց Վարդան՝ Հայոց, Վրաց եւ Աղուանքի նախարարներից, յանձնառու չեղաւ բոլորովին լսել կամ համաձայնիլ այդպիսի գործի կամ գոնէ մասնակից լինիլ այդպիսի մի խորհուրդի, այլ սաստիկ նեղսնալով՝ բարձրաձայն ասաց բոլորի առաջ. "Անկարելի՛ է, որ ես ստեմ իմ Արարիչս եւ ուրանամ նորան, որն ուրանալու է իւր Հօր եւ սուրբ հրեշտակների առաջ իրեն ուրացող մարդոց. քա՛ւ լիցի, ես չեմ կարող կնոջս կամ որդւոցս կամ ազգատոհմիս կարիքն ու ցաւերը միտք բերելով մոռացութեան տալ նորան, որն ասաց, թէ "Ո՛վոր իւր կինն եւ որդիքն ինձանից աւելի է սիրում, նա ինձ արժանի չէ։ "Իսկ դուք երեք երկրի տանուտէրներդ ու իշխաններդ, որ այժմ եկել էք ՙինձ մօտ՚, ամէնմէկդ կարող էք ձեր անձի տեղը պատասխան տալ եւ ինչպէսոր մտածումէք, կարող էք կատարել։,,

Այս բոլոր խօսածները որ լսեցին նախարարները Վարդանից, ազատ չթողին նորան այդ առաջարկութիւնից, այլ հաւաքուան միասին եւ կանչեցին իրենց մօտ Մոկաց Արտակ իշխանին եւ շտապեցրին նորան, որ առանձին նստի եւ խօսի իրենց սպարապետի հետ։ Նա ինքը ՙԱրտակ՚ համեստ ու խելացի եւ քաջ մարդ էր եւ Վարդանը նորան աւելի պատուում էր եւ սիրում. այդ պատճառով նա էլ հաւանեցաւ նախարարների առաջարկութեանը եւ յանձն առաւ աշխատել եւ անդադար

աղաչել նորան՝ երբեմն առանձին ու երբեմն Հայոց մեծամեծների հետ միասին։ Երբ երեք երկրի նախարարներն ու իշխանները տեսան, թէ Վարդանի կամքը անշարժ է, չի համաձայնում նոցա խօսքերին ու աղաչանքին, բերին այնուհետեւ սուրբ գրքից պատշաճաւոր առակներ ՝օրինակներ, որ համոզեն՝. Նորան ինչպէս մի ուսեալ եւ տեղեակ մարդու, (որովհետեւ շատ հմուտ եւ ընտելացած էր սուրբ գրքի վարդապետութեանը, եւ սովորել ու խրատ էր առել իւր պապ սուրբ Սահակ հայրապետից), յիշեցնում էին Պօղոսի ասածը Արարչի համար, թէ "նա՝ որ մեղք ասած բանը չգիտէր, մեզի համար մեղք արաւ*,,. եւ դարձեալ Պօղոսի իրեն զիջանիլը, թէ "Ես ինքս սրտով կ՚ուզենայի, որ Քրիստոս ինձ նզովէ իմ մարմնաւոր եղբայրներիս, զաւակներիս ու ազգականներիս պատճառով,,։ Երբ այսպիսի շատ խօսքեր ու անդադար աղաչանքներ էին դնում Վարդանի առաջ, բերին այնուհետեւ սուրբ աւետարանն եւս, ամէնքը առհասարակ դրին իրենց ձեռները նորա վերայ, երդում կերան եւ ասացին. "Թէոր դու միփոքր միայն կարողանաս երեսանց կատարել թագաւորի ասածը եւ մեզի ազատես, բոլոր քու ասածներիդ կը լսենք յետոյ եւ կը կատարենք՝ դնելով մեր անձը մեր սուրբ ուխտի վերայ եւ արիւն թափելով մեր ամբողջ երկրի փրկութեան վերայ։ Եւ եթէ հարկն ստիպէ մեզ թողնել մեր երկիրն եւ բոլոր մեր ստացուածքը եւ օտար երկիր փախչել,

* Սուրբ Գրքի ուղիղ ընթերցուածն այս է. ("Հայրն Աստուած) զայն, որ ոչն գիտէր զմեղս (զՔրիստոս) վասն մեր մեղս արար, զի եղիցուք մեք նովաւ արդարութիւն. տես Բ. Կորնթ. Ե. 21։ Իսկ թէ փարպեցու պատմութեան մէջ այլ կերպ է կարդացուում, այդ թերեւս օրինակողների սխալն է։

կ՛ընդունենք կնոջով եւ զաւակներով միասին ու
սիրով անձերս կ՛առնինք աղքատութիւն եւ մու֊
րացկանութիւն. միայնթէ մէ՛կ այս բարկութիւնից
գլուխներս ազատենք:„

Երբ երեք երկրի իշխանների բերանից լսեց
այս ամէնը, եւ տեսաւ որ ամէնքն էլ սարսափելի
երդումով վերջացրին ՙիրենց խօսքը՚, արտասուք
թափելով յանձն առաւ երեսանց ուրանալ՝ երեք եր֊
կրի եւ նոցա մէջ գտնուող մարդոց եւ կանանց համար:

Այսպէս՝ մէկ խօսք եղան ամէնքը, որ իրենց Եղիշ.
խորհուրդն ամուր պահեն, եւ նոյն խրատ տուող
մարդու ձեռքով պատգամ ղրկեցին ներս ՙթա֊
գաւորին՚, թէ նորա կամքը կատարելու են:

Մոխրանոցի տան մէջ նոցանից ՙնախարարներից՚. Ղազար.
միքանիսը միայն, այլ ոչ բոլորը՝ այն էլ երեսանց,
եւ ոչ ճշմարտութեամբ՝ ցոյց տուին իրենց գլուխ֊
ների խոնարհումը սնոտի պաշտաման առաջ:

Թագաւորը շատ ուրախացաւ. թափեց դիզեց Եղիշ.
նոցա առաջ շատ երկրաւոր պարգեւներ. երեւելի
էր ցոյց տալիս նորանց իւր բոլոր տիեզերական իշ֊
խանութեան մէջ. թագաւորական ագարակներ ու
գիւղեր էր բաշխում նոցա. ՚տանուտէրներին եւ Ղազար.
սեպուհներին թագաւորական զգեստներով էր
զարդարում՚ սիրելի եւ բարեկամ էր անուանում Եղիշ.
նոցա: Շատ այրուձի գումարեց ու եօթը հարիւր
վարդապետից ՙմոգից՚ աւելի այդ այրուձիու
հետ ղրկեց ու մէկ մեծ մոգպետ էլ նոցա վերայ
իշխան նշանակեց: Այսպէս ճանապարհ ձգեց նոցա
դէպի Հայոց երկիրը: Դեռ Հայոց երկիրը չհասած՝
փայտ էին գձում եւ վիճակ բաց անում, թէ ո՛ր
ազգը որ խմբին պիտի աշակերտ դառնայ:

Թագաւորի հրամանն էր, որ ամէն տեղ եկեղեցու կարգը վերցուի, սուրբ տաճարների դռները փակուին, նուիրուած սպասները գրով համարով թագաւորական ՝գանձարանն՝ առնուին, քահանաները չհամարձակին իրենց տներում ուսում տալ ժողովրդին, զանազան մենանոցներում բնակող մարդիկն ու կանայք փոխեն իրենց հագուստը աշխարհականի ձեւով. Նախարարների կանայքը, ազատների ու գիւղականների տղայք ու ազգականները կըրթուին մոգերի հրապարակներում. սուրբ ամուսնութեան օրէնքը վերցուի, մի կնոջ տեղ շատ կանայք առնին, որ Հայոց ազգն աճի ու բազմանայ. աղջկները հայրերի հետ պսակուին եւ քոյրերը եղբարց . . . պատրուճակներն ՝մորթելու անասունները՝ առանց յազելու չմեռնին, խմորն առանց փանդամ չշաղուի [3], ձեռքերն առանց գոմէզ չլուացուին [4]:

Ղազար. Ցորդորում էին ծաղրելի “չնչմանց„ ուսումը սովորիլ, պատուիրում էին, երեք երկրի մէջ էլ խաբէութեան դպրոցներ բանալ եւ բոլորին առհասարակ սովորեցնել թէ մարդոց եւ թէ կանանց։

Եղիշէ. Մինչեւ տարուայ վերջը բոլորն էլ պիտի կատարեն այս ամէնն ինչոր ասացինք [5]:

# ԳԼՈՒԽ Է․

## Ուրացութիւն։

Նախարարներն եւ մոգերը Պարսկաստանից ճանապարհ են ընկնում դէպի Հայաստան։ Պարսից բանակի մէջի քրիստոնեաները բողոքում են նախարարների ուրացութեան դէմ, եւ դեսպանով իմաց են տալիս առաջուց եպիսկոպոսների ժողովին։ Եպիսկոպոսներն եւ նախարարների գերդաստաններն հանդիպում են նոցա։ Վարդան Մամիկոնեանն իւր գերդաստանով ընտրում է օտարութիւն գնալ։ Վասակ Սիւնին եւ միւս իշխանները դեսպան են ուղարկում եւ յետ բերում նորան։ Վարդանն աշխատում է ապստամբութեան գործն սկսել, բայց դեռ չի վճռում։

> "Մարդիկ որ սիրով Աստուծոյ վառեալ էին, զուրացութիւնն մեռելութիւն վարկանէին։"
>
> ԵՂԻՇԷ։

Այնուհետեւ միաբանութեամբ ասացին բոլորին երեք Ղազար.
երկրի՝ Հայոց, Վրաց եւ Աղուանից նախարարներն. առան իրենց հետ մոգերի բազմութիւնն ու դարձան ամէնքը դէպի իւրեանց երկիրները՝ շատ անգամ նորից հաստատելով ճանապարհին նոյն խոստումը սուրբ աւետարանի անունով. եւ բաժանուելով իրարուց՝ գնացին ամէնն իւր տեղը։ Բայց Վրաց Աշուշայ բդեշխին եւ Սիւնեաց Վասակ իշխանի երկու որդւոցը՝ Բաբիկին եւ Ատրներսէհին չթողեց Յազկերտ։

Այժմ պատմենք փոքրիշատէ՝ թէ ինչ անցք Եղիշէ.
պատահեցաւ այնտեղ ՛Պարսկաստանում՛ կարաւանի մէջ։ Պարսից մեծ բանակում զանազան ազգերից, ինչոր Քրիստոնեայ մարդիկ կային, երբոր Հայերի ուրացութիւնը տեսան, սաստիկ զարմացան. եկան ու յանդիմանեցին նախարարներին եւ քահանաներին ու ասում էին. "Դուք առաքելական քարոզու-

թիւններ սովորեցնող էիք, այժմ ինքերդ պիտի մոլար խաբէութեան աշակերտ լինիք. դո՛ւք ճշմարտութեան ուսուցիչ էիք, այժմ պիտի մոգերի ստութիւնը սովորեցնէք ուրիշներին եւ տարերքը իբրեւ Աստուած պիտի ճանչէք. Հրով եւ Հոգւով մկրտուած էիք, այժմ պիտի մոխրի ու մուրի մէջ թաթախուիք. դո՛ւք էիք մեր յուսոյ ամուր պարիսպը. եթէ մեզի այստեղ վտանգ պատահելու լինէր ձեզանով պիտի ազատուէինք. մինչեւ հիմայ ձեր ճշմարիտ հաւատ ունենալուցը՝ մեզ էլ խնայում էին փոքրիշատէ. այժմ ձեր պատճառով մեզ էլ պէտք է անողորմաբար դատեն:„

Այս ու սորանից աւելի շատ բաներ խօսան մեծամեծների հետ եւ ցաւ ցաւի վերայ աւելցրին: Յայտնել եւ ցոյց տալ նոցա իրենց գաղտնիքը չէին կարող 'նախարարները', լռել ու պատասխան չտալն էլ անհնար էր: Նոցա հետ միասին լսողներն էլ տեսնողներն էլ դառնացած՝ անմխիթար սուգ էին անում ամէնքը:

Քահանաները, որ այնտեղ զօրքի մէջն էին, նախարարներից եւ բոլոր բազմութիւնից ջոկուան, եւ շտապով մի ձիաւոր ղրկեցին Հայաստան. գոյժը բերանն առած, օձիքը պատառելով հասաւ նա (ձիաւորը) եպիսկոպոսների ժողովները, [1] եւ պատմեց բոլոր նեղութիւնների մասին, բայց գաղտնիքը չյայտնեց նոցա:

Ցրուուան եպիսկոպոսներն իւրաքանչիւր իշխանութեան մէջ եւ ուղարկեցին քորեպիսկոպոսներին գիւղերն ու ագարակները եւ լեռնային գաւառների շատ ամուր տեղերը. դրդեցին ժողովեցին շատ արանց ու կանանց բազմութիւն. խրատ

դրին, ամրացրին եւ բոլորին էլ Քրիստոսի զինուոր
շինեցին: "Հարազատ եղբօր ձեռքը, ասացին, թող
իւր մերձաւորի գլխին բարձրանայ, թէոր սա Աս-
տուծոյ պատուիրանքից հեռացած է: Աստուածային
օրէնքները թող լինին թագաւոր ամէնքի վերայ. եւ
այն օրէնքներից միայն թող գտնին պատիժ յան-
ցաւորները:„ Երբոր այս այսպէս հաստատուաւ,
ամէնքն էլ երեւում էին զինուած, սաղաւարտուած:
Իսկ Հայոց գունդը մոգերի բազմութեան հետ
միասին՝ չորրորդ [2] ամսում եկան հասան Հայաստան
եւ մտան Անգղ անունով մեծ գեօղաքաղաքը:

Նոցա դիմաւորելու եկան Քրիստոսի պաշտօ- Դադար.
նեաները, բերելով իրենց հետ կենսատու սուրբ
խաչի նշանը եւ սուրբ առաքելանման Նահատակ
Գրիգորի նշխարները: Եւ այնտեղ պէտք էր տես-
նել՝ թէ ինչ լաց ու ճիչ բարձրացրին ամէնքը. ինչ
գոռում գոչում էր լսուում ամէն կողմից: Երե-
խաները, որ հայրերին կարօտացած էին, վախե-
նում եւ փախչում էին նոցանից՝ կարծելով՝ թէ
այլափոխուել են նոքա եւ նոյն առաջուայ կերպա-
րանքը չնկատելով՝ զարհուրում էին եւ շուտշուտ
նայում էին մայրերի երեսը, որոնք լալիս ու ար-
տասուք էին թափում. այս պատճառով իրենք էլ
լաց էին լինում եւ դայեկներից կամ դաստիարակ-
ներից ոչմէկը չէր կարող նոցա ձայնը կտրել տալ:
Իսկ նոքա՝ որ երեւանց այլ ոչ ճշմարտութեամբ ուրա-
ցել էին ՙիրենց հաւատը՚, երբ նկատեցին այս ա-
մէնը, ուզում էին հէնց այն րոպէին վերկենալ եւ
իրենց սրերի վրայ ընկնել ՙիրենց սպանել՚. որով-
հետեւ ոչոք չէր ուզում նոցա հետ մի սեղան
նստել, ոչ կին, ոչ որդի, ոչ ազատ, ոչ էլ ծառայ

կամ սպասաւոր։ Եւ սուգ ու շիւանը ձգած լաց էին լինում մեծ իշխանների կանայքը. այրիները հրապարակներում, մանկամարդ կանայքն եւ օրիորդները փակուած սրահներում եւ հարսները սենեակներում։ Սուրբ եպիսկոպոսները քահանաների եւ եկեղեցական դասի ծերերի, եւ մանուկների եւ բոլոր ժողովրդի բազմութեան հետ միասին վայնասունը ձգած լաց էին լինում Աստուծոյ տան մէջ. եւ պէտք էր տեսնել թէ ի՛նչպէս ծեփուել էին արիւնով ուղղափառ մարդոց երեսները։

Մոգերի գնդերն էլ բռնի ստիպում էին տանել կրակները Տիրոջ սուրբ տաճարը եւ ուրիշ ականաւոր ու գեղեցիկ տեղերում կրակատուններ շինել եւ անյագ չաստուածի բորբոքման համար փայտ բերող բեռնակիրներ նշանակել։

Այս ամէն անբախտութիւնքը որ տեսաւ Մամիկոնէից տէր եւ Հայոց սպարապետ Վարդանը, կանչեց մօտը բոլոր իւր գերդաստան մարդոցը, սկսեց խօսել նոցա հետ եւ ասում է. «ոչթէ կամքով կամ վախից ստիպուած ուրացել եմ ես իմ Արարիչս, քա՛ւ լիցի. եւ չեմ էլ մերժած ինձանից այն հաւատն ու սուրբ աւետարանի վարդապետութիւնը, որը սովորեցրել է ինձ եւ հաստատել է իմ մէջս՝ իմ ճշմարիտ պապս տէր Սահակը, բայց առժամանակ մինչեւ այս րոպէին հանելը ձեր բոլորի փրկութեան համար կորայ երեսանց, որ յետոյ գտնիմ ինձ ձեզ հետ միասին, ապաշխարեմ ու փրկուիմ։ Այժմ, որովհետեւ ես առժամանակ ձեզի համար թողի նորան (Արարչին) երեսանց, կամենում եմ աշխարհքիս բոլոր գործերը թողնել բոլորովին եւ ովոր ձեզանից յանձն առնել կարող

է, պատրաստ եմ ձեզ հետ միասին Քրիստոսի անուան համար օտար երկիր գնալ,,:

Պատասխան տուեց նորան երանելի Հմայեակ եղբայրն եւ ասաց. “Աշխատի՛ր շուտով կատարել ինչոր մտածել ես եւ մի ուշացներ. թէոր ապրելու լինինք, Աստուծով առանց խղճահարութեան մեր կատարածին կը հասնինք, մուրացկանութեամբ կըլինի, թէ օտարութիւն քաշելով՝ այնքան լինի, որ Նորանով (Արարչով) ապրինք եւ ուրացութեան անունը մեզանից հեռու լինի,,:

Այսպէս ամէն մի սնոտի մեծութիւն արհամարհելով՝ ճանապարհ ընկան դէպի Յունաց իշխանութեան տակի երկրները եւ եկան հասան մի գիւղ, որի անունն Արամոնայ [4] է, Բագրեւանդ [5] նահանգի մէջ Բասենին [6] եւ Տուարածատափին [7] սահմանակից. եւ այնտեղ մնացին հանգչելու:

Յանկարծ լուր հասաւ Սիւնեաց Վասակ իշխանին, որ այն ժամանակ Հայաստանի մարզպանն էր, եւ բոլոր Հայոց տանուտէրներին ու իշխաններին, թէ Վարդան մեծ սպարապետն եւ իւր եղբարքը տնով տեղով ելան եւ գնացին Հայաստանից. շատ կոտրուաւ նոցա ‘նախարարների’ սրտերը եւ ահ ընկաւ. որովհետեւ լաւ տեղեակ էին եւ գիտէին, որ առանց նորա առաջնորդութեանը ոչ մի գործ գլուխ չէ եկած Հայաստանում. խորհուրդ կազմեց Սիւնեաց Վասակ իշխանը, եւ բոլորին էլ իւր մտքին յօժարեցրեց ասելով՝ թէ “պէտք է շուտով ընտիր քահանաներ եւ Հայոց տանուտէրներից մեծ մարդիկ ղրկել ‘Վարդանի յետեւից’ եւ աղաչանքով յետ դարձնել նորան այս կողմը: Եւ նամակ գրեց Սիւնեաց Վասակ իշխանն ու հրամայեց,

որ Հայոց ուրիշ մեծ տանուտէրներն էլ նամակներ գրեն եւ կնքեց նամակները ամէնմէկի մատանւով, բերել տուեց եւ կնքած աւետարանը. քահանաներից էլ Ղեւոնդ երէցին ու Երեմիային Նոր.քաղաքից, Մրենցի Խորէնին, եւ Հայոց տանուտէրներից մեծ մարդիկներին ընտրեց ու տուեց նոցա նամակներն ու երդումի աւետարանը եւ դեսպան ղրկեց Վարդանի մօտ։

Նոքա հասան եւ գտան Վարդանին յիշեալ Արամանայ գիւղում եւ իմաց տալով՝ ներկայացան նորան. պատմեցին երանելի Վարդանին եւ նորա եղբարցը Հմայեակին եւ Համազասպին՝ իրենց շտապաւ նոցա մօտ գալու պատճառը. յառաջ բերին եւ երդումի աւետարանը. տուին նորա ձեռքը եւ Վասակի, միւս իշխանների եւ եպիսկոպոսների ու սեպուհների նամակներն եւ ասացին. “Ինչպէսոր հոգս տարաք եւ խնամեցիք ձեզի, այնպէս էլ այսչափ ժողովրդի հոգիքը մի՛ք թողնիր կորչելու. մանաւանդոր՝ այս տեղ շատերս կանք, որ ձեզ ազգական եւ արենակից ենք. մեզ հետ միասին ընդունեցէ՛ք ձեր պսակը Քրիստոսից, ինչպէս ցանկացած էք եւ աշխատում էք՝ որ մէնակ դուք պսակուիք։„

Այս ամէնը որ լսեց Հայոց սպարապետն Վարդան, պատասխան տուեց բոլորի համաձայնութեամբ եւ ասաց. “Ես ու իմ եղբարքս եւ ընտանիքս աշխարհիս ամէն բանից աւելի բարձր ենք համարում մեր հոգիների փրկութեան գիւտն ընտրել՝ եւ չէթէ միայն մեր հոգիների օգուտն ենք փնտռում, այլ ուրիշների փրկութիւնն էլ ենք ուզում. եւ չլինի թէ ձեզանից մէկը կարծէ՝ թէ մենք որ փախել ենք, սրի ահից ենք փախել. այլ՝ ձեր նենգաւոր խաբեբայութիւնից է, ինչպէսոր դուք միշտ մեզ նեղ

տեղն էք ձգած եղել։ Բայց սուրբ եւ երկնաւոր Հրաւիրակիդ՝ աւետարանի առաջ մեր ազգից ‘ցեղից’ ոչոք դէմ չէ կացել, մենք էլ դէմ կեցողը չենք, քաւ լիցի։„ Այս ասելով սուրբ Վարդանն իւր եղբարց եւ սիրելեաց համաձայնութեամբ դարձաւ նորից դէպի իւր ընկերներն՝ Հայոց բանակը։

Երբոր եկան բազմութեան հետ միացան, Վարդանը հանգստութիւն չէր տալիս իւր մտադրութիւններին, եւ ոչ թէ միայն տնական կերպով իւր դրան քահանաներով ու պաշտօնեաներով էր կատարել տալիս ժամասացութիւնը, այլ միաբանութեամբ բոլոր Հայերի հետ միասին ուզում էր գնալ եկեղեցի. բայց կամաւ յետաձգում էր առժամանակ եւ սպասում հանդամանքին, միտք բերելով ընկերների վիճակը, մանաւանդ Վասակի որդւոց եւ Աշուշայի։[8] Եւ այս մտածում էր սուրբ Վարդանը չէ թէ իւր նպատակին օգնականութիւն գտնելու մտքով՝ այլ միայն հոգս էր քաշում իբրեւ մի բարեսէր մարդ, որ չլինի թէ թագաւորի կողմից այն մարդոցը մի դժուար բան պատահի եւ վնասուին։

Բայց Ամատունեաց Վահանն երբեմն ինքը, երբեմն ուրիշների ձեռքով ստիպում էր, որ շուտով ապստամբութիւնը գլուխ բերեն ‘ապստամբին’. որովհետեւ նա վաղուցուանից ոխ ունէր Վասակի դէմ։ Իսկ Վարդան ուրիշի խօսքին չէր նայում, այլ ընկերների հոգսն էր քաշում. եւ այնպէս զօռով քաշքշեց գործը մինչեւ շըքերի մօտենալը. յետոյ գաղթեցին բոլոր բազմութեամբ եւ եկան մտան Ծաղկոտն[9] գաւառը. մէկ ամուր բերդի մօտ Անգղ անունով բանակ դրին եւ հանգստանում էին շըքերի ժամանակ։

# ԳԼՈՒԽ Ը.

## Միաբանութիւն.

Մոգպետն առաջին փորձը տեսնելու համար գալիս է մի եկեղեցու դռները քանդելու։ Ղեւոնդ երէցն եւ ժողովուրդը արգելք են լինում։ Մոգպետը հնար է փնտռում Հայերի կատաղութիւնից ազատուելու եւ յանդիմանում է Վասակին։ Վասակը նորան հանգստացնում է եւ նենգութիւններ անում Հայոց դէմ։ Եպիսկոպոսները պահանջում են Վարդանից որ բոլոր չարութիւնների վրէժն առնուի։ Ուխտապահ նախարարները միաբանում եւ հալածում են Պարսից բանակը։ Վասակն էլ երդումով միանում է նոցա հետ։ Ուխտապահների զօրքը քանդում է մոգերին եւ առնում է բերդերը։

"Օրէնք աստուածային կացցեն թագաւոր ի վերայ ամենայնի։"

Եղիշէ. Այն օրից, երբ մոգերն ու նախարարներն եկան Պարսկաստանից եւ մտան Անգղ գիւղաքաղաքն, անցաւ քանը հինգ օր, մոգպետն ինքը մոգերի հետ միասին մեծ զօրութեամբ եկաւ կիւրակի օրն եկեղեցու դռները քանդելու. ուզում էր իւր գործն յառաջ տանելու առաջին փորձը տեսնել դորանով։ Սուրբ Ղեւոնդ երէցը շատ եկեղեցականներով այն տեղ պատրաստ գտնուաւ եւ թոյլ չտուեց։ Նա լաւ տեղեակ չէր նախարարների մտքին, եւ շատ աղմուկ աղաղակ թափեց զօրքերի ու մոգերի գլխին. որովհետեւ վիրգերը ձեռքերն առած մոգերի ու մոգպետի գլուխները ջարդեցին ու հալածեցին ամէնին իւր իջեւանը եւ իրենք էլ պաշտօնը բարձրացնելով՝ եկեղեցու մէջ, կատարեցին տէրունական կանոնը։

Այսպէս տագնապ հանելուց յետոյ՝ Հայոց աշխարհի ամէն կողմերից շատ կանանց ու մարդոց բազմութիւն եկաւ թափաւ այնտեղ. ոմանք սիրս

առած եւ զէնքերը ձեռքերին՝ մահը կեանքից վեր էին դասում. եկեղեցականներից միքանիսն աւետարանն առած աղօթք էին անում Աստծուն, ոմանք էլ ցանկանում էին, որ գետինը պատառուի եւ իրենց անձերին գերեզման լինի։

Այնպիսի մի իրարանցում բերին մոգպետի գլխին, որ նա շատ անգամ խնդրեց աղաչեց իւր օգնականներին, որ կարողանան ողջանդամ հասցնել նորան Թագաւորի [1] մօտ։ Ստիպում եւ ասում էր՝ թէ "Թողէք գրեմ ցոյց տամ Թագաւորին, որ մէկդի թողնի այսպիսի գործերի հոգացողութիւնը. ընտորում եթէ աստուածներն իրենք էլ մեզի օգնելու գան, դարձեալ անհնարին բան է, որ մոգութեան ուսումը հայերի մէջ հաստատութիւն գտնի, ինչպէս որ ես նոցա եկեղեցականների միաբանութեան փորձը տեսայ։ Թէոր այս երկրի զօրքն եւս մոգեր լինէին, սոքա նոցա էլ չէին խնայեր եւ կրմեռցնէին։ Մարդիկ են, որ ոչ կապանքից են վախենում, ոչ տանջանքից եւ ոչ էլ գանձերով են խաբուում։ Եւ ամէնից գլխաւոր փորձանքն էլ այն է, որ մահը կեանքից վեր են դասում. ո՞վ կարող է սոցա դէմը կայնել։ "Ես լսած էի, թէ Շապուհի [2] ժամանակ, երբ այդ ուսումը ‘քրիստոնէութիւնը’ աճել ու զարգանալ սկսեց, մեր հաւատի վարդապետները Թագաւորին յորդորեցին, որ դադարեցնել տայ քրիստոնէութիւնը։ Եւ ինչքանոր նա ուզեցաւ արգելել, եւս առաւել աճեց ու զարգացաւ. եւ այնպէս աներկիւղ ու համարձակ էին ‘քրիստոնեաները’ Պարսկաստանում, որ ամէն քաղաքի մէջ եկեղեցի շինեցին եւ ամէն տեղ՝ թէ շէն եւ թէ անշէն, մենանոցներ շինեցին. աճելով աճում ու շատանալով

շատանում էին եւ մարմնաւոր հարստութիւններով լցուում: Նոցա հարստութեան պատճառը մեզ անյայտ է, այսքանս միայն հաստատ իմանում ենք, որ ամբողջ տիեզերքը նոցա հաւատն ընդունեց: Թագաւորը խստութեամբ բռնեց շատերին ու չարչրեց եւ շատ շատերին էլ սպանել տուեց. շատ բարկացաւ ու 'մինչեւ անգամ' ձանձրացաւ նա ինքը, բայց չկարողացաւ նոցա թիւը պակսեցնել: Փակեց ու կնքեց նոցա եկեղեցիների դռները բոլոր Պարսկաստանի մէջ. նոքա ամէն տեղ էլի իրենց օրէնքն էին կատարում: Սպանողների սրերը բթացան, նոցա պարանոցները չդադրեցան. նոցա հարստութիւնն յափշտակողներն յոգնեցան, նոցա կարողութիւնն էլի օրէցօր աւելացաւ ու շատացաւ: Երբոր տեսաւ թագաւորը, թէ ամէնքը վրայ պրծան, ինչպէս խաշինք մահ ընդունելու, արգիլեց ու դադար տուեց հարուածներին եւ տանջանքներին, եւ հրաման տուեց մոգպետներին, որ մարդ չդիպչի նոցա: Այդ ահա լսելով գիտենք: Այս՝ որ ես ինքս իմ աչքովս տեսայ, երեւում է, որ առաջուանից աւելի խիստ պէտք է լինի: Թէոր անպէն մարդիկ այսպէս ուժ գործ դրին, բայս որ զինուորներին էլ իրենց հետ միաբանեցնեն, ո՞վ կըկարողանայ դոցա առաջը կենալ: Ես չէի իմանում, որ եկեղեցական ուխտն այդպէս անքակ է իրարուց. ուրիշ բան է՝ ինչոր մարդս լսում է, ուրիշ է՝ երբ նա աչքով է տեսնում նոյնը: Դու, որ հաստատ գիտէիր այդ մարդիկների պնդութիւնը, ինչո՞ւ տեղովը չպատմեցիր թագաւորին: Որովհետեւ դու ես բոլոր նախարարների գլխաւորը եւ բոլոր երկրիս մարզպանութիւնն էլ քեզ է յանձնած. ինչո՞ւ այդպիսի խոհեմու-

թեան գործ չտեսար։ Ապաթէոչ՝ պարզ է, որ դու էլ նոցա հետ մէկ խօսքի ես եւ քու խորհըրդովդ է, որ այս բանը բերին իմ ու իմ զօրքիս գլխին։

Այս խօսքերի վերայ լռութեցաւ Վասակ մարզպանը եւ շուարած մնացել էր տրտում սրտով։ Ստեփ. եպիսկ. Մէկ՝ որ ծնողութեան բոցը այրեց նորա սիրտը իւր որդւոց համար, որոնք այնտեղ թագաւորի մօտ պատանդ էին։ Մէկ էլ՝ որ վախում էր իւր թշնամի Վարազվաղանից, որը թագաւորի մօտն էր եւ Վասակի մահին էր սպասում։ Մէկ էլ այն՝ որ վախում էր, թէ չզրկուի այն մեծ եւ երեւելի փառքից եւ իւր հայրական ժառանգութիւնից։ Այս երեք անհնարին տարակուսանքները նորան մաշում նեղացնում էին. ոչ գիշերը քուն ունէր եւ ոչ ցերեկը հանգստութիւն։ Եւ որովհետեւ մարդս ի բնէ անտի միշտ սխալուելու եւ գայթակղուելու վիճակուած է, աս էլ սխալեցաւ յետ կայնաւ սուրբ աւետարանի երդումից եւ չար յուսահատութեան ծնունդ էր այդ, որի ինչպէս լինիլը Աստծու դատաստանը միայն կարող է իմանալ եւ ոչ մէկ ուրիշը։

Պատասխան տուեց մարզպանը մոգպետին եւ Եղիշէ. ասում է՝ թէ "Դու մի փոքր համբերութիւն ունեցիր եւ քու խորհուրդներդ ոչ մօր ասելու լինիմ՝ նոցա յայտնէ. մինչեւոր ես ինձ ույժ ժողովեմ, գուցէ՛ կարողանամ եկեղեցականների միաբանութիւնն երկպառակել։ Եթէ այդ այդպէս անեմ, դիտեմ, որ այնուհետեւ թագաւորի հրամանն էլ կըկարողանամ կատարել։

Եւ իսկոյն բերել տուեց Սիւնեաց աշխարհից իւր գունդը մոգպետին թիկունք եւ օգնութիւն

լինելու։ Յետոյ ասաց նորան. “Դէ՛հ, այժմ դու մի գիր գրէ Թագաւորին այն այրուձիու համար, որ Աղուանքումն է, որպէսզի ձմերելու համար Հայաստան գան ՝Աղուանքի զօրքը՝. եւ երբ նոցա էլ մեր ձեռքը ունենանք, էլ մարդ չի մնար, որ համարձակի չընդունել Թագաւորի հրամանը։

Մոգպետը պատասխան տուեց մարզպանին ու ասում է. “այդ խորհուրդդ դարձեալ իմ ասածիս հակառակ է. եթէ բռնութեամբ կռիւ անենք այս երկիրը բաժան բաժան կը լինի եւ մարդիկը կը փախսուին, Թագաւորին էլ բաւական մեծ կորուստ կը հասնի։„

Բայց մարզպանը չուզեցաւ ականջ դնել նորա՛ն, որովհետեւ հոգւով սրտով ընդունած էր պարսկական ուսմունքը։ Սկսեց խաբխբել այնուհետեւ՝ ոմանց կարասւով ՝պարգեւներով՝ ոմանց քաղցր լեզւով. ռամիկին էլ ահ բերող խօսքերով էր սրտաթափ անում. ամէն օր տաճարի ռոճիկն [3] աւելացնում էր եւ անմեղ մարդոցը շատ խաբեբայութիւններով հրապուրում եւ իւր կողմն էր քաշում։

Երբոր սուրբ եպիսկոպոսները տեսան այս ամէնը, աւելի՛ սրտով միաբանեցան իրար հետ։ Մի գիշեր խորհուրդ կազմեցին եւ զօրքի սպարապետին [4] էլ ՝Վարդանին՝ կանչեցին խորհրդի. հարցրին, քըննեցին եւ հաւատի եղան, որ նա իւր հաւատին հաստատ է եւ նորից ընդունեցին նորան առաջինիների խումբը ու նորանով շատերին որսացին իրենց կողմը, որոնք եկան հաւաքուան եւ մի մեծ զօրքի գունդ կազմուաւ։

Վասակն սկսեց մոգեր բաժանել նախարար-

ների տները եւ մեծմեծ ռոճիկներ նշանակել նոցա եւ մկրտուած [5] մարդոցը յազած 'զոհի' միս ուտեցնել բռնի, եւ արեգակին երկրպագութիւն անել տալ։ Երբ բոլոր երկրում սկսեց աւելանալ այսպիսի պղծագործ խառնակութիւնը, փուշտիպաններին կանայքն եւս համարձակութիւն առան մի կիրակի օր եկեղեցու ճրագները հանգցնելու եւ հաւատաւոր [6] կանանց հագուստները պատառոտելու։

Այս աղմուկն եւ գոյժը որ տեսան սուրբ եպիսկոպոսները, ամէնքը միասին աւետարանը ձեռքերն հասան սպարապետի իջեւանը [7], որտեղ ժողովուած էր Հայոց զօրքը, եւ ասացին. "Աղաչում ենք ձեզ բոլորիդ այս սուրբ աւետարանի անունով՝ թէօր ձեր խորհրդովն են կատարում այն ամէնանօրէնութիւնը մարզպանն ու մոգպետը, յառաջ մեր գլուխները կտրեցէք եւ յետոյ եկեղեցիներին ձեռք զարկէք։ Իսկ թէօր առանց ձեր կամքին են գործում նոքա այն չարութիւնները, այսօր իսկ պիտի առնուի նոցանից վրէժ։„

Երբ իմացաւ 'Վարդան' թէ շատ տարածուում է ապստամբութեան գործը եւ շատ թոյլ մնալուց մեծ մեծ վնասներ են պատահում, առանձին ժողովեց պատուական եպիսկոպոսներին, ականաւոր քահանաներին եւ աւագ տանուտէրներին ու սեպուհներին, եւ ասում է նոցա յայտնի կերպով, թէ "Մինչեւ երբ պիտի համբերենք ճշմարտութիւնը թագցնելով եւ վնաս կրենք։„ Ոստանեայ տանից մէկը՝ Ջանդազան անունով լսեց միքանիսից Հայերի խորհուրդը եւ գնաց շուտով յայտնեց իրեն նըմանակ Վասակին։ Այս որ լսեցին աւագ նախարար-

ները, բռնեցին նորան ‘Ջանդազանին’ Արծակ [8] գիւղում, եւ տարան մի Բերդկունս [9] անունով ուրիշ գիւղում կապեցին նոյն Բագրեւանդ գաւառումը, եւ շատ օր չանցաւ քարկոծել տուին նորան
Մղկճկ. եւ մեռցրին։ ՚Մեծ ահ ընկաւ բոլորի վերայ։ Ամէնքը բարկութեան կրակով բորբոքուան եւ շուտով զէնքերին դիմեցին. բոլոր գիշերը կազմուան կարգուան եւ արեւի ելնելու ժամանակ գունդը երեք մաս բաժանեցին ու բանակի [10] վերայ ղրկեցին. առաջին գունդը արեւելեան կողմից, երկրորդ գունդը արեւմտեան կողմից, երրորդ գունդը հիւսիսային կողմից, չորս բոլորով պատեցին փակեցին բանակի բազմութիւնը. շատերին կոտորեցին, շատ շատերին էլ երեւելի մարդիկներից կապեցին ու ամուր բերդերի մէջ իրենց իշխանութեան տակ
Ջաւզառ. պահեցին։ Յետոյ հաւաքուան ամէնքը միասին Վարդանի մօտ եւ նորա հետ միասին սուրբ գրոց հրամանի զօրութեամբ մտան Սիւնեաց Վասակ իշխանի՝ ‘այսինքն’ Հայոց մարզպանի մօտ, եւ յայտնեցին նորան բոլորի միաբանական խորհուրդը. Թէպէտ աշխատում էր ‘բանը’ յետաձգել, մէկ՝ իւր որդւոց համար, որոնք Թագաւորի մօտն էին, մէկ էլ՝ որ իւր սիրտն էլ միշտ չարի կողմն էր քաշում. բայց հարկից ստիպուած յանձն առաւ նոցա հետ միաբանելու։ Սուրբ եպիսկոպոսներն եւ քահանաներն հրամայեցին նորից, որ երդումի աւետարանը բերեն եւ երդում տուին բոլոր զօրքը Թէ՛ ազատներն եւ Թէ՛ անազատները Սիւնեաց Վասակ իշխանի հետ միասին ու. հաստատեցին երդումը, ում մատանիքով որ աւետարանը կնքուած չէր՝ կնքեցին, եւ ձեռքերը երկինք բարձրացուցին եւ ասացին. “Տէր

ընդունէ՛ մեզի ինչպէս որդին ուրացօղ. մեղանչեցինք երկնքի եւ քու առաջդ, լուսաւորիչ առաքեալների բարեխօսութեամբ եւ նոցա նմանի ու գործակցի այսինքն սուրբ նահատակ Գրիգորի քաշած չարչարանքների շնորհիւ պարգեւէ՛ թողութիւն մեր մեղքերին, եւ ինչպէսոր քու սուրբ արիւնդ մեղաւորների վերայ թափեցիր, մեզ էլ շնորհք տուր, որ մեր արիւններն այս խոստովանութեան վերայ թափենք եւ ամէն մէկիս մեղքերի թողութեան վերայ։„

Այս ամէնը գրեցին ու կնքեցին նախ՝ Սիւնեաց Վասակ իշխանի մատանւով եւ յետոյ բոլոր Հայոց տանուտէրների եւ սեպուհների մատանիներով. դրին երդումի աւետարանի մէջ ու տուին պատուական եպիսկոպոսներին ու աւագ քահանաներին, որ այն տեղ էին։ Այս կատարելուց յետոյ՝ մեծ ուրախութեամբ եւ հոգեւոր երգերով գնացին Տիրոջ տունը եւ երկրպագութիւն տալով միակ ճշմարիտ Աստծուն աղօթք արին։

Եւ զօրքի բազմութիւնը առանց սպասելու բնաւ մեծամեծների հրամանին գնաց մոխրանոցի տունը, առաւ կրակարանը ու թափեց նորա միջի կրակը ջրի մէջ, իբրեւ իւր եղբօր գիրկը, ինչպէս որ Պարսից սուտ վարդապետներն ասում են, մոգերի բազմութեան մասին էլ հրաման արին, որ այն օրը զգուշութեամբ պահեն եւ հետեւեալ օրը արեւի ծագելու ժամանակ սպանեցին նոցա մոգերին Զարեհաւանում։ [11]

Այս ամէնը կատարելուց յետոյ՝ հանգստանում Եղիշէ.
էին շաքերի ժամանակ։ Նոքա, որոնք եկած էին եկեղեցու սուրբ դռներն յափշտակելու, ակամայ

դրին իրենց անձերն ու աւարը սուրբ եպիսկոպոսների եւ բոլոր զօրքի յառաջը եւ այսպէս քանդուաւ ապականուաւ Թագաւորի Հրամանը։

Մարդիկ եւ կանայք եւ բոլոր ռամիկ բազմութիւնը աղաղակում էին եւ ասում. "Պատրաստ ենք սուրբ եկեղեցու համար հալածանք քաշելու եւ մեռնելու ամէն կերպ նեղութիւնների ու չարչարանքի մէջ։ Չէր երեւում այնուհետեւ տէրն աւելի քան թէ իւր ծառան եւ մէկը միւսից պակաս չէր երեւում քաջութեան մէջ. ամէնքն առհասարակ մի զինուորութիւն էին կազմում, միեւնոյն ճշմարտութեան գօտւով էին ամրացրել իրենց մէջքերը՝ թէ մարդիկ եւ թէ կանայք։ Այս խօսքն էր աւելի ստէպ լսուում բոլորի բերանից՝ "միմիայն քաջութիւն ցոյց տալով մեռնի՛նք, անուն ու հոգիներս միայն վաստկինք։„

Կրկին յարձակուան այն բերդերի ու աւանների վերայ, որոնք Պարսիկների ձեռքն էին զանազան տեղերում. քանդում աւերում էին նոցա բնակութեան տեղերը՝ մեծ Արտաշատն [12] իւր աւաններով, Գառնի [13] քաղաքը, Անին, [14] Արտագերսը [15] եւ ուրիշները։ Կործանում քանդում էին նոցա շինուածները. կրակ ձգում վառում էին նոցա աստուածպաշտութեան տները եւ կրակի սպասաւորութեան տեղերը. բոլոր հեթանոսական տեղերում կանգնում էին Քրիստոսի խաչը եւ յոյսերը նորից հաստատելով՝ առհասարակ ուրախութիւն էին անում ամէնքը։

## ԳԼՈՒԽ Թ.

### Օգնութիւն:

*Մոգերի մի մասը մտնում է զօրքով Աղուանք եւ ստիպում է ուրացութեան: Աղուանները խնդրում են Հայերից օգնութիւն: Հայերը խնդրում են օգնութիւն Յոյներից, Յոյները մերժում են: Եպիսկոպոսները քաջալերում են ժողովրդին: Հայոց զօրքն երեք բաժին է լինում. Վարդան Մամիկոնեանը մէկ բաժնով գնում է Աղուանքն ազատում եւ Ճորայ պահակին տիրում.(450:)*

“Դուք որ կարող էք՝ զօրութիւն տկարացն բարձէք:”

Մի քանի օրից յետոյ Աղուանքի հայրապետը սուրբ եպիսկոպոսի հետ միասին սաստիկ շփոթուած եկան շտապեցնում էին Հայոց զօրքը եւ ասում. “Պարսից գունդը, որ Հոնաց աշխարհքի կողմերն էր, յետ եկաւ մտաւ մեր երկիրը, ուրիշ թագաւորական պլուձի էլ հետը. Նաեւ երեքհարիւր մոգ վարդապետներ բերած են հետները, բաժան բաժնութիւն ձգեցին մեր երկրի մէջ. ուզում էին եկեղեցիներին ձեռք տալ ու թագաւորի հրամանով ստիպում էին եւ ասում. “Թէ ձեր կամքով չկատարէք, հրաման ունինք գիւղերում ու քաղաքներում կրակատուններ շինել եւ ձեր բոլոր երկրի մէջ օրէնսդիր նշանակել մոգերին ու մոգպետներին: Եղիշէ.

Հայոց զօրքն այս որ լսեց, բնաւ չթուլացաւ քաջասրտութիւնից եւ միաբան իրարու սիրտ տալով ՚ճանապարհ ձգեցին նոցա, որ միփոքր խաբխբելով յետ պահեն Պարսիկներին, որպէսզի եկեղեցին ձեռք չտան, մինչեւ որ մի հնարք գըտնին իրենք: Մովսէս կաղ.

Շուտով նամակ գրեցին կայսերն եւ Յունաց Ղազար.

դրան մեծամեծներին. նաեւ Աղձնեաց բդեշխին, Անգեղ տան իշխանին, Ծոփք, Հաշտեանք, Եկեղեաց գաւառները եւ Անտիոքայ մեծ սպարապետին[1]: Պատրաստեցին վահան Ամատունեաց իշխանին, իբրեւ խելացի եւ հաւատարիմ մարդու, Վարդանի եղբօրն Հմայեակ սուրբ սեպուհին, Արծրունեաց տոհմից սուրբ Աղանի[2] եղբօրը երանելի

Եղիշէ. Միհրուժանին եւ ՚Գնունեաց տոհմից Ատոմ մեծ նախարարին. սոցա ուղարկեցին շտապով արեւմտեան երկիրն՝ օգնութիւն խնդրելու համար եւ եթէ նա[3] կամենայ՝ ՙայսինքն՚ Յունաց կայսրը՚, նորա իշխանութեան տակ մտնելու:

Ղազար. Նոքա գնացին ներկայացան Թէոդոս Թագաւորին, որ լսելով նոցա գալու պատճառը յանձն առաւ զօրքով օգնել նոցա ՙՀայոց՚. եւ այնժամանակ, երբ պատրաստութիւն էր տեսնում իւր խոստումը կատարելու, մահը վրայ հասաւ եւ զրկեց նորան կեանքից: Նորա տեղը Թագաւոր եղաւ Մարկիանոս, որ իմանալով Հայերի խնդիրքը, ՙխորհուրդ՚ հարցրեց իւր դրան մեծամեծներից: Անատոլը, որ այն ժամանակ Անտիոքի սպարապետն էր, եւ մի Փղորէնտ անունով Ասորի մարդ, որ Թագաւորի Դրան գլխաւորներիցն էր, պատասխան տուին Մարկիանոսին եւ ասացին. "Մեզ հաճելի չէ արհամարհել այն դաշինքը, որ գրած հաստատած են առաջին Թագաւորները, եւ պատերազմով բաժանել մի երկիր իրենց Թագաւորի իշխանութեան տակից. այլ եւ հարկաւոր է միտք բերել գործերի անորոշ դրութիւնը, որ մարդ չգիտէ թէ ինչպէս պէտք է վերջանայ:,, Այսպէս յետ կայնեցրին Թագաւորին,

Եղիշէ. ՚որն շտապեցաւ հաստատ խօսք տուեց Պարսիկնե-

րին՝ թէ ձեռնթափ է լինում Հայոց զօրքին օգնութիւն տալու։

Այսպէս՝ կտրուած մարդիկներից օգնականութիւն գտնելու յոյսը. նոքա, որոնք Յունաց երկիրն էին գնացել, երբ տեսան թէ էլ օգուտ չկայ նոցանից, շտապեցին յետ գալ, որ գտնէ՛ իրենց ընկերների հետ միասին մարտիրոսութեան բաժակը խմել կարողանան. ՝որովհետեւ Յունաց պատասխանն այնքան յետացաւ, որ Հայերի ու Պարսիկների մէջ արդէն սկսուել էր պատերազմը՝։ Ղազար.

Եպիսկոպոսներն սկսեցին քաջալերել թէ իրենց անձերն եւ թէ Հայոց զօրքը. նայում էին իրենց սակաւութեանը եւ երկու թագաւորների միաբանութեանը, բայց բնաւ չէին թուլանում. միտք էին բերում առաջին ուխտադրութիւնը, սիրտ առնում եւ ասում. "Պատրաստ ենք սպանուելու եւ մեռնելու։ Աստծու համար հեշտ է քիչ մարդոց ձեռքով շատերի գործ կատարել եւ անարգների միջնորդութեամբ մեծմեծ բաներ գլուխ բերել։" Թէպէտ չունէին թագաւոր, որ նոցա առաջնորդ լինէր, ոչ էլ դրսից՝ օտարների միջից՝ մէկ օգնական, բայց իրենց առաքինութեամբ եւ սուրբ Վարդապետների մխիթարելովը ամէն տնից եկան ՝Հայերը՝ շուտով հաւաքուան միասին. բոլոր զօրքը երեք գունդ բաժանեցին. առաջին գունդը Ռմբոսեան Ներշապուհին տուին, որ Հայաստանը պահպանէ՝ Ատրպատական աշխարհի սահմանների մօտ. երկրորդ գունդը Հայոց զօրավար Վարդանի ձեռքը տուին, որ Վրաստանի սահմաններից անցնի գնայ Ճորայ մարզպանի * վերայ, որն եկած էր Աղուանքի եկե- Եղիշէ.

* Ըստ Կաղանկատուացւոյն՝ Ջողայ մարզպան։

ղեցիներն աւերելու. երրորդ գունդը՝ Հայաստանը պահպանելու համար Սիւնեաց Վասակ իշխանի ձեռքը տուին, որն ընտրեց իրեն հետ Բագրատունեաց Խորխոռունեաց, Ապահունեաց, Վահեւունեաց, Պալունեաց, Գաբեղէնից եւ Ուրծայ իշխաններին իրենց զօրքերովը. եւ արքունի տանից էլ շատ ուրիշ զօրք քաշեց իւր կողմը, նաեւ մի քանի սեպուհներ ուրիշ ցեղերից:

Ղազար. Վարդան՝ Հայոց սպարապետն առաւ իրեն հետ Հայոց տանուտէրներից միքանիսին եւ ուրիշ շատ սեպուհներ եւ Հայոց զօրքից շատերին եւ մարդպետական այրուձիուց միքանի գնդեր. եւ բաժանուելով Վասակից եւ նորա հետ մնացող իշխաններից՝ միամիտ սրտով գնացին պատերազմելու. երբ մտաւ սուրբ եկեղեցին Աստուծոյ երկրպագութիւն տալու՝ առաւ ՚Վարդան՚ սուրբ աւետարանը եւ կենսատու խաչի նշանը ՚համբուրեց՚ եւ չէր կշտանում դնելով անդադար աչքի բբերին եւ ճակատին. նոյնը անում էին ջերմեռանդ սիրով եւ նոքա ամէնքը, որոնք նորա հետ էին:

Սիւնեաց Վասակ իշխանը շուտով գաղտնի դեսպաններ ղրկեց Միհրներսեհին եւ Նիխորական Սեբուխտին * եւ ուրիշ այն մեծամեծներին, որոնց

Եղիշէ. նշանակել էր Միհրներսեհը Հայերի վերայ: "Ահա քակեցի, ասում է Վասակ, Հայերի միաբանութիւնը. գունդը մաս մաս արի եւ երեք կողմ բաժանեցի. եւ մնացած՝ կռուի ընդունակ մարդոցն էլ երկրի մէջ զանազան տեղ ցրուեցի: Բայց երրորդ գունդն Աղուանք ղրկեցի. համարձակ դուրս արի նորա առաջ պատերազմ տալու:

* Ըստ Կաղանկ. — Միհրներսեհ:

«Դուք միամիտ եղէք այդ մարդոց կողմից, որոնք Ղազար.
Վարդանի հետ եկել են ձեր դէմ. որովհետեւ
զօրքի մեծ մասը այստեղ իմ մօտս պահեցի եւ շատ
քիչն է դորա՝Վարդանի՛ հետ»: Այս գրեց Սեբուխտ Եղիշէ.
մարզպանին: Նա երբ ստուգեց թէ Հայոց սպարա-
պետը սակաւաթիւ զօրքով է գալիս իւր վերայ,
ժողովեց իւր բոլոր զօրքի բազմութիւնը եւ շտա-
պով անց կացաւ Կուր անուն մեծ գետից եւ պա-
տահեցաւ նորան Խաղխաղ [4] քաղաքի * դէմու-
դէմը:

Քաջ Վարդանը եւ բոլոր նորա զօրքը տեսնե-
լով հեթանոսների գնդի բազմութիւնը, թէեւ
իրենք շատ նուազ էին, ամենեւին չվախեցան, այլ
միաբանեցան ու ասացին. «Տէր Աստուած, քու զէն-
քովդ ու ասպարովդ օգնէ՛ մեզի, որ ամէնքը ճանա-
չեն, թէ յաղթելն էլ յաղթուելն էլ քու ձեռքդ
է: Մենք պատրաստ ենք քու սիրուդ եւ ճշմար-
տութեան համար մեռնելու:»

Կռուի ժամանակ կարգի դրեց՝Վարդան՛ իւր Ղազար.
գունդը՝ եղած այրուձիու չափով. երեք թեւ բա-
ժանեց եւ ամէն մէկը մի զօրագլխի ձեռքը տուեց.
առաջինի վերայ զօրագլուխ նշանակեց Արշաւիր
կամսարականին, ՝որն Հայոց զօրավար Վարդանի
փեսան էր՝ նորա դուստրն ունենալով իրեն կին՛.
նորան նիզակակից տուեց Գիմաքսեան ցեղից աւագ
սեպուհ Մուշին. ձախ կողմը տուեց Խորէն Խորխո-
ռունու ձեռքը, եւ նորան օգնական նշանակեց Հը-
մայեակ Գիմաքսեանին. ինքը սուրբ զօրավար Վար-
դանն էլ պատրաստում էր իրեն յարձակման մէջ-
տեղին: Այսպէս՝ ճակատ կազմելով եւ Աստուծոյ

* Ըստ Ղազարու. — Խաղխաղ քէ—ղ:

թագաւորների ցեղից էր. դեսպաններ ղրկեցին Հոնաց երկիրը նոցա հետ դաշինք կապելու, որ անքակ միաբանութիւն պահեն իրենց հետ։ Մովսէս կաղ. Իսկ նոքա ՝Հոնք՝ իսկոյն եկան այնտեղ եւ ականատես եղան գործի յաջողութեանը. յանձն առան քրիստոնեաներին երդում տալու՝ որ հաստատ միաբանութիւն պահեն նոցա հետ։

# ԳԼՈՒԽ Ժ.

## Վասակի անձնութիւնը:

*Վասակ Սիւնին Հայոց գնդի մեծ բաժնով մնում է Հայաստանում եւ նորից յետ է կոչնում իւր երդումից. Հայաստանի շատ տեղերը նորա ձեռքով աւերւում են, Հայոց եկեղեցիները քանդւում եւ եկեղեցականները հալածւում: Վարդանը վերադառնում է Աղուանքից: Վասակը փախչում է իւր երկրի ամրոցները. Հայոց ուխտապահ զօրքը մնում է Այրարատում ձմերելու: Եպիսկոպոսները մխիթարում են ժողովրդին եւ դեսպան են ուղարկում Յազկերտի մօտ: Յազկերտն յառաջ թողութիւն է շնորհում քրիստոնեաներին, յետոյ կրկին միտքը փոխում է: Հայերի մէջ տիրում է միաբանութիւն: Միհրներսեհը գալիս է Փայտակարան եւ Վասակի օգնութեամբ պատերազմի պատրաստութիւն տեսնում: Հայերի անօգնական վիճակը. Վասակի եւ իւր արբանեակների նենգութիւնները. Միհրներսեհ յանձնում է Վասակին Պարսից զօրքը եւ զօրագլուխները. գլխաւոր զօրապետութիւնը տալիս է Մուշկան Նիւսալաւուրտին:*

«Ամենայն թագաւորութիւն բաժանեալ յանձն՝ աւերի»: ՂՈՒԿ.

Այն ժամանակ երբ այս ամէնը գլուխ էր գալիս Հայերի ուզածի պէս, յանկարծ դեսպան եկաւ Վարդանի մօտ եւ ասաց՝ թէ ՙԱհա՛ անօրէն Վասակը յետ կեցաւ Աստծուն տուած խոստումից. Նմանապէս նորա մօտ մնացող Հայ իշխաններն էլ յետ կեցան եւ գլուխ բարձրացրին. դեսպան ղրկեցին Պարսկաստան եւ նամակներով խօսք կապեցին Պարսիկների հետ. Հայոց բերդերի մարդոցը դուրս արին ու իրենց կողմից բերդակալ նշանակեցին, Մամիկոնեան, Կամսարական եւ ուրիշ տանուտէրների որդիքը հաւաքեց դայեակների մօտից նենգաւոր Վասակը, ՚բերել տուեց * իւր մօտ եւ

Ղազար. Մակփ. Եղիշէ.

* Ղազարն ասում է. «տանել տուեց Պարսից թագաւորի մօտ:»

Սիւնեաց աշխարհի անառիկ բերդերում պահեց: Եղիշէ. ՚Քանդեց Թագաւորական ձմերանոցները, ² որոնց մէջ զօրքերի բնակարաններն էին. աւերեց նաեւ Արտաշատ նահանգը եւ նոյնիսկ Արտաշատը միանգամայն վառեց. եւ ձեր բոլորիդ գերդաստաններն իրենց բնակութեան տեղերից հալածեց. սուրբ եկեղեցիներին էլ ձեռնամուխ եղաւ. քահանաների ընտանիքը գերի քշեց, Նոցա իրենց էլ կապեց ու բանտ դրեց: Այն գունդը, որ Ատրպատականի կողմերն է, չկարողացաւ օգնութեան հասնել եւ դեռ ձեզ հետ միաբան են, իսկ այն՝ որ Նորա ՙՎասակի՚ հետ էին, շատերը Նորա մոլորութեան յետեւից գնացին:

Ղազար. Այս ամէնը որ լսեց Հայոց Սպարապետ Վարդանը Նախարարների եւ այն զօրքի հետ, որն իրեն մօտ էր, չտրտմել չէին կարող. եւ իրենց ու գերի առած երեխաներին ամենապահ Աջին յանձնելով Մովսէս Կաղ. բոլորը միասին ճանապարհ ելան Աղուանքից եւ՝ երեսուն օրուայ մէջ եկան հասան՝ Հայաստանի Այրարատ գաւառը, այնտեղ ձմեռուայ օրերը մնացին անհամբեր սպասելով գարնան օրերին, որ իրենց Նահատակութեան օրուանը հասնին *, որովհետեւ էլ ուրիշ բան չէր անցնում Նոցա մտքից յաղթելու կամ յաղթուելու մասին. Ստեփ. եպիսկ. ՚եւ մէկ ամսից յետոյ եղաւ մեծ պատերազմը:

Եղիշէ. Երբ ուրացեալ Վասակին եւ իշխաններին իմաց

* Սիւնեաց Ստ. եպիսկոպոսն ասում է. "երբոր մեծ յաղթութեամբ վերադարձաւ Աղուանքից, միւս իշխանների հետ միասին շատ օրեր մտածում էին մի հնարք գտնելու: Եւ երբ բոլոր տեղերից յոյսերը կտրեցին, մահը կեանքից վեր դասեցին. եւ գնալով Արտազ գաւառը մի ամսից յետոյ եղաւ մեծ պատերազմը, որի մէջ նահատակուեցաւ սուրբ Վարդան...:,,

տուին Վարդանի զօրքի քաջութեան եւ Հոնաց միաբանութեան մասին, մի գիշեր օգնական ճարեց փախաւ իւր երկրի ‘Սիւնեաց’ ամուր տեղերն ընկաւ եւ այնպէս շտապ փախաւ, որ գերին ու աւարը, որ Այրարատ գաւառից առել էր, իրենն էլ հետը՝ թողեց ու գնաց։ Եւ որովհետեւ ձմեռ ժամանակ էր ու պաշարն էլ թշնամեաց զօրքերն էին յափըշտակել, չկարողացաւ ‘Վարդան’ մի տեղում դարմանել բոլոր զօրքը միասին, այլ ուղարկեց զանազան գաւառներ. պատուիրեց՝ որ գարնան սկզբին պատրաստ գտնուին պատերազմի. եւ աւագ նախարարներից միքանիսին միայն թողեց իւր մօտ. իւր ձեռքն էին եւ թագաւորանիստ տեղերը. ջոկջոկ գնդեր ուղարկեց Սիւնեաց երկրի վերայ. առաւ ու աւերեց շատ գաւառներ եւ այնպէս նեղը ձգեց նորան ‘Վասակին’ եւ բոլոր նորա զօրքին, որ մեռած էշեր ու ձիեր էին ուտում սովից ստիպուած։ Եւ շատ վնաս հասցրին ուրացեալ Վասակին, այն աստիճանի՝ որ սուրբ եպիսկոպոսներն ու բոլոր քահանայական դասը դառն արտասուքներ էին թափում խեղճ վնասուօղների վերայ։

Բոլոր եպիսկոպոսներն եւ քահանաները հրամայեցին ժողովրդին, որ ամբողջ Քաղոց [3] ամիսը պահք պահեն եւ աղօթք անեն Աստծուն։ Եւ մէկ Պարսկի, որ յառաջ բանտումն էր, հանեցին բերին նախարարների առաջը, խօսեցին նորա հետ եւ ցոյց տուին բոլոր վնասները, ‘այսինքն’ երկիրների աւերուիլը եւ թագաւորական զօրքի կոտորուիլը. հասկացրին նորան ապստամբ Վասակի խաբէութիւնը, որ Հայերի անունով [4] թագաւորին խաբել է թէ մոգութիւնն յանձն կ'առնեն։ Նորան ‘այն Պարսկին’

դեսպան ղրկեցին ՙթագաւորի մօտ որ հնարք գտնի գուցէ՛ կարողանան իրենց եղբայրներին նեղութիւնից ազատել՚։ Այն մարդը գնաց այս ամէնը պատմեց թագաւորին. թագաւորն էլ նայեց տեսաւ, որ ինքը շատ տկար է. հասկացաւ որ՝ ինչոր ուզում է անել, գլուխ բերել չի կարող, սկսեց քաղցր ու աղաչական խօսքեր խօսել ամէնքի հետ ու ասում էր. "Ի՞նչ վատ բան եմ արել ես, ո՞վ նեղութիւն տուեց նոցա եւ ստիպեց միւսնոյն մոգական հաւատն ընդունելու. մանաւանդ քրիստոնէութեան համար (որը մեր դէնիմազդէզի * հետ մէկ եւ հաւասար եմ համարում). տեսէ՛ք, դուք ինձ գործել տուիք այն ինչոր ես չէի ուզում։„ Այս ամէնը խօսում եւ իւր սխալուելու մեղքը մոգպետի եւ մոգերի վերայ էր գձում. Նոցանից սակաւ մարդիկ (միքանիսը) ասում էին "Ճշմարիտ է, քա՛ջ թագաւոր, այդ ամէնը, ինչոր ասացիր, այդպէս է. այժմ ահա՛ դու կարող ես ամէն բան կարգով կանոնով ձեռքիդ տակ քաշել. որովհետեւ աստուածները քեզ իրաւունք են տուել, որ ամէն բան, ինչոր կ՚ուզես, կարող ես անել։ Երկայնամիտ եղիր եւ համբերութեամբ թոյլ տուր այդ մարդիկներին քրիստոնէութիւնը պաշտելու եւ դոցա ձեռքով կարող ես հնազանդեցնել ապստամբներին։„ Թագաւորը հաւանեցաւ այս խօսքերին։ Այնօրը հրաման տուեց որ քրիստոնէութեան հաւատի մէջ մնան. հրովարտակներ ղրկեց քրիստոնեաների համար. "Եթէ, ասաց, մէկը կապանքի տակ է, թագաւորական հրամանով պէտք է արձակուի. եթէ մէկից մի բան յափշտակուած է, յետ պէտք է տրուի. նմանապէս հողերը թէ հայ-

* Տես Յաւելուածք, գլուխ Բ. 1. Օրէնք մոգուց։

ւական լինին, թէ պարգեւած եւ թէ գնուած, թէոր մէկը խլել է նոցանից (քրիստոնեաներից) հրամայեցինք, որ յետ դարձուին։,, Նոցանից՝ քրիստոնեաներից՛ հաւատարմութեան վկայութիւն էր ուզում եւ երդումով խօսք էր տալիս թէ “բնաւ յիշելու չեմ քէն կամ վրէժ. ինչպէսոր յառաջ հաւատարմութեամբ պաշտում էիք ձեր կրօնը, այսուհետեւ էլ նոյնը արէք, միայն թէ մեր իշխանութեան տակից դուրս մի՛ք գար։,, Ցետոյ երբ ստուգեց թէ Հոռոմներն յետ քաշուան քրիստոնէութեանն օգնական լինելուց, նորից դարձաւ դէպի իւր առաջուայ սխալ կարծիքը։

Իսկ Հայերը զարմացած մնացել էին նորա անկատար խորհուրդների վերայ եւ ասում էին. “ի՞նչքան լիրբ է նա իւր խորամանկ խաբէութիւններով. ըստորում երկու երեք անգամ մեր անքակ միաբանութեան փորձը տեսաւ՝ էլի՞ դեռ կամենում է մեզ վհատեցնել. ի՞նչ լաւութիւն է արել նա Պարսից տէրութեան մէջ գտնուող բոլոր եկեղեցիներին։ Նա՝ որ ինքն իրեն համար վատ է, ուրիշների համար լաւ լինել չէ կարող. որովհետեւ անիրաւութիւնից արդարութիւն չի լինիր, ստութիւնից էլ ճշմարտութիւն։ Երեխայի նման խաբուելու չենք, անտեղեակ մարդու պէս մոլորուելու չենք, տգէտների նման սխալուելու չենք, այլ պատրաստ ենք ամէն մի փորձութիւն քաշելու, որպէսզի ինչ բան որ սկսել ենք, նոյնը գլուխ բերենք քաջութեամբ, այլ ոչ թէ վատութեամբ. ձեր տուած պարգեւների ու արած լաւութիւնների տեղ՝ ուզում էք մեր ճշմարիտ կեանքը խլել մեզնից, այդ գլուխ գալու բան չէ եւ լինելու էլ չէ։ Նա որ Քրիստոսին հայ-

հոյում էր եւ հաւատացեալներին ուրացնել էր տալիս նորանից, երդում էր ուտում իւր սուտ ու սնոտի հաւատի վերայ, որ ամենայն չարչարանք թափէ եկեղեցու պաշտօնեաների գլխին, այժմ ե- կել է գողի նման շնորհակալութիւն է յայտնում, եւ այդպիսով կամենում է իւր բոլոր չարութիւնը մեր գլխին թափել: Դորան հաւատալ չենք կարող եւ չենք ընդունում դորա սուտ հրամանը:,,

Յազկերտը զօրք ժողովեց եւ շատ փղի երա- մակներ էլ նոցա հետ ուղարկեց Հայաստան. Հայոց սահմաններին հասնելով՝ զօրավարը մտաւ փայտա- կարան քաղաքը, որ իւր չարահնար մտքերի համար պատրաստութիւն տեսնի: Այս զօրավարն էր Պար- սից բոլոր տէրութեան հրամանատարն ու իշխանը Միհրներսէհ անունով:

Միհրներսէհը, որովհետեւ Վասակի ամբարիշտ լինելը ճանաչում էր, ուղարկեց եւ կանչեց նորան. իւր մօտ, ստուգեց նորա հաւատարիմ լինելը եւ Հայերի անիրաւ ապստամբութիւնը. թէեւ սաստիկ ատում էր նորան, այնու ամենայնիւ երեսանց մե- ծարեց եւ սխալ կարծիքի մէջ ձգեց նորան, որպէս թէ նա կարող է մինչեւ անգամ թագաւորութեան հասնել[5], միայնթէ մի հնարք գտնի, որ թագաւորի կամքը կատարուի Հայաստանում:

Վասակը յանձառու եղաւ նորա կամքին հե- տեւելու, գողի նման սողաց մտաւ ինչպէս օձ ամ- րականների մէջ, առաւ դուրս բերեց շատերին ազատներից եւ իշխաններից ու միքանիսին էլ յի- շեալ քահանաներից. եւ իւր ամբողջ երկիրը ՙՍիւ- նիք՚ ապստամբեցնել տուեց ուրացութեամբ ՙեկե- ղեցու դէմ՚:

Վասակն ամենեւին չէր դադարում. նամակներ Ղազար. էր գրում Հայաստանի իշխաններին, գիւղականներին ու քահանաներին. ինչոր թագաւորից եկած սուտ սուտ երդումներ ու դատարկ վկայութիւններ էր ցոյց տալիս թէ "մեծ թագաւորը թոյլ է տալիս քրիստոնէութիւն պաշտելու եւ մոգերի սպանման վնասը չի պահանջում. ապստամբութեան մասին ասում է, յիշելու էլ չեմ, միայնթէ հեռու կացէք Վարդանի խրատից ու խօսքերից եւ մի՛ք կորչիր դորա հետ միասին.„ իւր մասին էլ գրում էր ուխտանենգ Վասակը թէ "ես միջնորդ կըլինիմ այս բոլոր բանի համար եւ Հայաստանն անվնաս կըպահեմ.„ եւ տալիս էր սուտ քահանաների ձեռքը, որ ման ածեն 'շրջեցնեն' Հայաստանի մէջ:

Մի երէց Ջանգակ անունով եւ մի երէց Պետրոս անունով, մի սարկաւագ Սահակ անունով* Եղիշէ: երդուում էին սուրբ աւետարանի վերայ եւ ասում թէ "թագաւորը կըթողնի բոլորիդ քրիստոնէութիւն պաշտելու„. եւ խորամանկութեամբ շատերին սուրբ միաբանութեան միջից բերում խառնում էին ուրացողների գունդը:

Վասակ գրեց եւ ցոյց տուեց հազարապետին 'Միհրներսէհին' սաստիկ պարծենալով թէ ի՛նչպէս հետեւեցաւ խաբէութեան վատ գործին, ի՛նչպէս բաժանուած ու երկցեղ ձեւացրեց Հայոց զօրքը. նաեւ քանդեց Վրաց, Աղուանից եւ Աղձնեաց երկրների միաբանութիւնը Հայոց հետ: Ինչպէսոր նա շատ չար էր 'Վասակ', եւս առաւել ժամանակն էլ բերեց նորան յաջողութիւն գործերում. որով

* Ըստ Ղազարու՝ երեք երէց էին՝ Ջանգակ, Սահակ Ջայնող, Պետրոս Երկաթի: Սահակն ու Պետրոսը Սիւնեաց գաւառից էին:

հետեւ դրսից ոչ մէկը չգտնուաւ ամենեւին Հայոց գնդին օգնող, Հոնաց ազգից զատ, բայց նոցա համար էլ հաւաքեց Արեաց [5] պրուծիու բազմութիւնը եւ արգիլեց ու փակեց նոցա ելումուտը։

Այս ամէնը գրեց եւ հասկացուց Պարսից մեծ հազարապետին, որն իւր մօտ կանչեց Վասակին եւ ովոր նորա հետ կային բոլոր իշխաններին. շատ պարգեւներ տուեց Թագաւորի կողմից թէ նոցա եւ թէ այն զօրքին, որը նոցա հետ մէկ խօսք էին։ Ուրացեալ քահանաներին էլ ցոյց տուեց Վասակ, վկայեց եւ յայտնեց թէ «ահա՛մ սոցանով պէտք է որսամ եւ քանդեմ նոցա (ուխտապահների) միաբանութիւնը։»

Հազարապետն երբոր լսեց այն ամէնը, շատ շնորհակալ եղաւ, եւ նոցա առաջ յոյսեր դրեց. «եթէ, ասաց, յաղթութիւնը մեր կողմը լինի, միւս քահանաների հարստութիւնն [7] էլ դոցա կըբաշխեմ եւ դոցա ծառայութիւնն էլ թագաւորին կըյայտնեմ։»

Այսպէս շարժեց Վասակ եւ շփոթեց Հայաստանը. մինչեւ անգամ հարազատներից շատերին բաժանեց իրարուց։ Եւ ինչ էլ որ չէին իմանում անօրէն հեթանոսները, նա հասկացնում էր նոցա։

Այս ամէն չարութիւնները որ տեսաւ Միհրներսէհ նորա մէջ, իրենից շատ նորա վերայ էր դրել յոյսը։ Նորանից իմացաւ բազմութեան (զօրքի) թիւը. աւելի շատ աշխատեցաւ տեղեկանալ թէ քանի՞ մարդ են քաջ նահատակների գլխաւորները, որպէսզի ամէնմէկի դէմ երեքին պատրաստէ։

Երբ այս ամէնը տեղեկացաւ Միհրներսէհ Վասակից, կանչեց բոլոր զօրագլուխներին. [8] եւ

ամէնին պատուէր տուեց Նորա առաջը, որ Նորա խրատին լսեն բոլորը. եւ բոլոր զօրքին զօրագլուխների հետ միասին յանձնեց մէկ իշխանի, որի անունն էր Մուշկան Նիւսալաւուրտ։ Եւ ինքը գնաց Արեւելեան երկիրը ՙՊարսկաստան՚ եւ Ներկայացաւ մեծ Թագաւորին, պատմեց Նորան բոլոր անցած բաները՝ այսինքն իւր հնարագիտութիւնը եւ Վասակի խաբեբայութիւնքը, որով քանդեց բաժանութիւն ձգեց Հայոց գնդի մէջ։

Բարկացաւ Յազկերտն ինքն իւր մէջ եւ ասաց անսուտ երդմամբ. «եթէ այն անօրէնը ՙՎասակը՚ ազատուի պատերազմից, մեծ անարգանքով ըմպել կըտամ Նորան մահուան դառն բաժակը։

---

# ԳԼՈՒԽ ԺԱ.

## Ավարայրի կռիւը:

*Ուխտապահները ժողովւում են Արտաշատ: Առանձար Ամատունին գնում է լրտեսելու Պարսից զօրքը եւ չփոթ ձգելով նորա մէջ յետ է գալիս: Պարսից ու Հայոց բանակները տեղաւորւում են Արտազ դաշտի վերայ: Ուխտապահների նախապատրաստութիւնը. Ղեւոնդ երէցի ճառը. Վարդանի կարդացած քաջալերութիւնը: Ամբողջ զօրքը եւ զօրավարները կատարում են իրենց քրիստոնէական վերջին պարտքը եւ պատրաստւում մահ ընդունելու: Պարսից զօրավարն էլ իւր զօրքն է քաջալերում եւ ճակատը պատրաստում: Վարդանը բաժանում է Հայոց զօրքը չորս թեւ: Պատերազմը տեւում է առաւօտուանից մինչեւ արեւի մայր մտնելը, երկու կողմն էլ յաղթւում է: Վարդանն ուրիշ նախարարների հետ ընկնում է պատերազմի դաշտում (451 թ.): Հայերի յուսահատ վիճակը:*

“Մահ ոչ իմացեալ՝ մահ է. մահ իմացեալ՝ անմահութիւն է:„ ԵՂԻՇԷ:

Ղազար. Բոլոր ուխտապահները՝ որ Աղուանքից եկած եւ Այրարատում դադարած էին ձմեռ ժամանակ՝ մեծ զատկի տօնին ուրախութեան աւետիս տուին իրարու կենարարի յարութեան պատճառով. մի քանի օրից յետոյ լսեցին, թէ զօրք է եկել Հեր եւ Զարեւանդ գաւառը:[1]

Եղիշէ. Մեծն Վարդան բոլորովին չթերահաւատեցաւ եւ չվախեցաւ. սիրտ տուեց ինքն իրեն եւ
Ղազար. քաջալերեց զօրքերին: Իմաց արաւ ուխտապահներին, որոնք տօն օրերի պատճառով իրենց տներն էին գնացել եւ ասաց. “ահա մեծ գունդ է եկել հասել ու բերում է աստուածասէրների համար երկնաւոր պսակներ. դէհ, ո՛վոր ցանկանում է առնել՝ թող շտապի. իսկ թէ ուրիշ կերպ մտածող կայ ձեր մէջը, ինչպէս ուրիշներն ՝են անում”, լաւ է թող դադարի մնայ, ուրոր հաճելի կըլինի.

որովհետեւ ոչոք պսակ ընդունել չի կարող, եթէ չտանջուի։„

Այս որ լսեցին ճշմարտութիւն եւ անմահութիւն սիրողները, շտապեցին եկան Վարդանի յետեւից. ՚եւ հրամայեց նոցա ժողովուիլ Արտաշա- Եղիշէ։
տում, որովհետեւ դեռ իւր ձեռքն էր բոլոր երկիրը։ ՙԱյնտեղից՚ ՚ուղարկեց Վարդան բոլոր մեծա- Ղազար.
մեծների հաւանութեամբ՝ Ամատունեաց ցեղից մէկ իշխանի Առանձար անունով, մօտ երեք հարիւր ձիաւոր զօրք էլ հետը, որ գնան լրտեսեն թէ ինչքան է Պարսից զօրքը։ Առանձարն եւ այն զօրքը որ նորա հետ էր, տեսան Պարսից բանակը, եւ մի զօրեղ վերջապահ թեւի վերայ ընկնելով՝ շատերին սրերի վերայ հանեցին *, ուրիշներին էլ փախցրին Պարսից զօրքի մէջ ձգեցին. ու իրենք ողջառողջ ուրախութեամբ յետ եկան Հայոց բանակը եւ պատմեցին Աստուծոյ ցոյց տուած զօրութիւնը. զօրագլուխների մասին էլ ՙպատմեցին՚ թէ Մուշկան Նիւսալաւուրտն եւ Դղոմի են. այն էլ հաղորդեցին, որ թշնամին շուտով կըհասնի Հայաստանի միջին գաւառները։

Այսոր լսեց սպարապետը՝ շտապեցան նոցա ՙՊարսից՚ դէմ գնալու, գուցէ, ասացին, հէնց այն տեղ Հեր եւ Զարեւանդ գաւառում կարելի լինի վերջ տալ պատերազմին։

Բայց աւելի շտապով գալիս էր Պարսից զօրքը, եւ հասաւ Արտազ [3] գաւառը Աւարայր գիւղի մօտ մի շրջափակուած տեղ Տղմուտ դաշտի վերայ. Նորա մէջ եւ բանակ դրին Պարսիկները։

Պենտէկոստէի ուրբաթօրը եկան հասան Նոյն Եղիշէ.

* Այսինքն կոտորեցին, թրէ անցուցին։

տեղերին մօտ եւ Հայոց զօրքը։ Եւ բոլոր զօրքին հանդէս արին տեսան, որ վաթսունը վեց հազար մարդ կայ թէ հեծեալ (ձիաւոր) եւ թէ հետեւակ (ոտնաւոր)։ Եկել էին նոցա հետ սուրբ Յովսէփն ու Ղեւոնդ երէցը եւ ուրիշ շատ քահանաներ։

Ղազար. Անպատրաստ գտնելով Պարսից զօրքը, թէ կամենային կարող էին Հայերը մասնաւորապէս վնաս տալ նոցա. բայց այն օրը թողլ թողին ու հանգըստացան։ Պարսից բանակի զօրքին մտիկ՝ իրիկուայ ժամանակ իրենց սովորութեամբ աղօթք եւ ժամասացութիւն արին եւ չափաւոր ուրախութեամբ եւ կերակուրներով սկսեցին զուարճանալ։ Այս ամէնը կատարելուց յետոյ սուրբ քահանաներից հրաման առան, որ բոլոր գիշերը արթուն մնան եւ աղօթքով անցկացնեն։ Սուրբ երէցն Յովսէփ, որ կաթողիկոսութեան աթոռն էր կառավարում, հրաման տուեց սուրբ Ղեւոնդին, որ խրատ ասէ ժողովրդին եւ քաջալերէ։ Սուրբ Ղեւոնդն էլ բոլոր գիշերն առանց ձանձրանալու ուսուցանում էր ամէնքին՝ առակներ բացատրելով. Նոցա միտքն էր ձգում ամէնից առաջ սուրբ Գրիգորի անպատմելի համբերութիւնը, յետոյ բոլոր ուրիշներինը. "մի-քանիսը, ասում է, տանջանքով ու մահով, միքանիսը պահքով ու դետնատարած անկողիններով, ուրիշներն աղքատսիրութիւնով, շատերն էլ աշխարհաշինութիւնով եւ արդար դատողութեամբ երեւելի են եղել եւ Աստուծուն ընտրելի. որովհետեւ ամէնքին էլ մարդասիրութեան վիճակ չի պատահիր, այլ ժամանակին յարմար, ինչոր Աստուած կըպարգեւէ, եւ առնօղները պարտաւոր են արդար վաճառականութիւնով գնել անցաւորի տեղ

անանցը։ ’Թէոր մահը մահով պիտի մեռնի, պէտք Եղիշէ.
է չվախենանք Քրիստոսին մահակից լինելու. որով-
հետեւ ում հետ որ մեռնում ենք, նորա հետ եւ
կենդանութիւն կ՚առնինք։ Բոլոր ուրիշները, որ
հաւատի համար քաջութիւններ արին զանազան
դարերում, մարդիկներից գովեստ ստացան եւ Աս-
տուած էլ նոցա արդարացուց։ Չէ՞ որ մի եւ նոյն
Տէրն է սկզբից մինչեւ հիմայ եւ մինչեւ յաւի-
տեան։ Այժմ մեր յոյսը մեզ երկու կերպ է
երեւում. թէոր մեռնինք, կեանք է. թէոր մեռ-
ցնենք, դարձեալ նոյն կեանքն է մեր առաջը։,,

Ուրիշ շատ խօսքեր ասաց եւ քաջալերեց մե- Ղազար.
ծամեծներից ամէն մէկին երանելի սուրբ Յովսէփի
հետ միասին։ Նոցա վարդապետութեանը ուշա-
դրութեամբ ականջ դնելով երանելի Վարդանը
խօսել սկսեց զօրքի հետ եւ ասում է. “Շա՛տ պա- Եղիշէ.
տերազմներ մտած եմ ես, դուք էլ ինձ հետ էք
եղել. պատահել է, որ քաջութեամբ յաղթել ենք
թշնամիներին, պատահել է, որ նոքա են մեզ յաղ-
թել. բայց այն քաջութիւնները անարգ եւ անօ-
գուտ եմ համարում եւ այն շատ պարգեւներն էլ
ոչինչ բան են. որովհետեւ այդ բոլորն էլ անցա-
ւոր են։ Չլինի թէ հեթանոսների շատութիւնիցը
վախենանք եւ ահ քաշենք. թէոր մեր կեանքի
վերջը եկել է, այս պատերազմի ՙբերած՚ սուրբ
մահովն ընդունենք նորան ուրախ սրտով, միայնթէ
մեր ՙցոյց տուած՚ քաջութիւնների մէջ վատութիւն
ՙվախկոտութիւն՚ չխառնենք։ Ես մոռանալ չեմ կա-
րող, ի՛նչպէս մենք անօրէն իշխանին խաբեցինք,
երեսանց նորա չար կամքը կատարեցինք մեր սիրե-
լիների պատճառով, որ մեծ նեղութեան մէջ էին.

մենք հնար էինք փնտրում նոցա աղատելու. քանի՛որ նոցա բնաւ օգնել չկարողացանք, անկարելի բան է, որ մարմնաւոր սիրու համար՝ Աստծուն մարդուս հետ փոխենք։ Երեք կռուի մէջ Աստուած ինքը մեզի օգնեց մեծ հրաշքով. քաջութեան անունը ժառանգեցինք, թագաւորի զօրքերը կոտորեցինք, մոգերին անողորմաբար մեռուցինք, կռապաշտու-թեան պղծութիւնը զանազան տեղերից սրբեցինք. եթէ ուրիշներն աստուածային օրէնքների անունով կոտորեցինք ու մեր անձերին պարծանք ժառանգե-ցինք, ի՞նչքան աւելի կըլինի, եթէ մենք մեր տիրոջ Յիսուսի Քրիստոսի անունը վկայելով մեռնինք, որին երկնաւորներն անգամ փափագում են, եթէ հնար լինի։ Այն օրը, երբ մարդիկ մեր չար գործի մասին լուր առան, շատ արտասուք թափեցին թէ՛ եկե-ղեցիներում եւ թէ մեր սիրելիների մէջ. մեր ըն-կերներն անգամ մեզի դառն մահ սպառնացան. մեր ծառաներն անգամ՝ մեզանից հեռու էին փախչում. եւ որ ամէնից գլխաւորն է, ոչ միայն մարդիկ աշ-խարհքիս վերայ, այլ եւ հրեշտակներն երկնքում իրենց երեսները մեզանից դարձրին, որ չլինի թէ տխուր դէմքով նայեն մեզ վերայ։ Եւ ահա եկել հասել է ժամանակը, որ ամէն մի վատ անուն մե-զանից հեռու ձգենք։ Վախը թերահաւատութեան նշան է. մենք թերահաւատութիւնը մեզնից վաղուց հեռացրել ենք. նորա հետ միասին թող վախն էլ փախչի մեր մտքից ու մեր խորհուրդներից։„

Առաջինի զօրավարը կրկին քաջալերեց ծածուկ ամէն մէկին, եւ բոլոր պակասութիւնները լրացուց իրենից եւ ընկերներից. ով զէնք չունէր՝ զէնք տուեց, ով հագուստ չունէր՝ հագուստ, եւ ով ձի

չունէր ձի։ Առատ ռոճիկներով * ուրախացնում էր ամէնքին. քաջ մարդիկների յիշատակարանները միշտ կրկնում էր նոցա առաջ. Մակաբայեցւոց երեւելի նկարագրութիւնը ձեռքն առած՝ կարդում էր բոլորի առաջը. զօրականի միտքն էր ձգում, թէ ինչպէս Մատաթիայի ազգատոհմը քանդուած, բաժանուած միութիւնից, մեհեաններ շինեցին, Աստծու ճանապարհից դուրս եկան եւ ընդունեցին մահուան պատիժը սուրբ միաբանեալների ձեռքից։

Երբոր այսպէս խօսեց պրծաւ սուրբ զօրավա- Ղազար.
րը, աքլորի կանչելու (խօրօզխօսին) ժամանակ հրամայեցին սուրբ Յովսէփն ու Ղեւոնդը բոլոր քահանաների հետ միասին ժամասացութիւնը կա-
տարել։ ՚Սեղան կազմեցին, ամենասուրբ խորհուրդը Եղիշէ.
կատարեցին. աւազան կազմեցին, թէոր զօրքի մէջ մի երեխայ կար, գիշերը մկրտեցին. առաւօտեան հաղորդուան սուրբ խորհրդին. եւ բոլոր զօրքի բազմութիւնն աղաղակեց ու ասում էր. «Թող հաւասարէ Աստուած մեր մահը արդարների մահի հետ եւ չմտնէ իւր եկեղեցին հեթանոսների ձեռ-
քը։ ՚Այսպէս՚ շտապում էին առաջիկայ գործին Ղազար.
ձեռք տալու, որովհետեւ արեւը դուրս գալուն մօտ էր, եւ Պարսից գունդը պատրաստութիւն էր տեսնում պատերազմ սկսելու։

Պարսից գնդի զօրավարն երբ տեսաւ ՙառ հա- Եղիշէ.
սարակ՚, թէ էլ յոյս չկայ ցրուել Հայերին անքակ միաբանութիւնից, յառաջ կանչեց անօրէն Վասակին եւ բոլոր ուրացեալ հայ իշխաններին, սկսեց հնարներ իմանալ նոցանից, թէ ինչպէս պէտք է

* Օրական պաշար. սնունդ։

յաղթեն. Հրամայեց յառաջ բերել փղերի երամակները, եւ ամէն մէկ փղին երեք հազար զինուորուած մարդ նշանակեց. խօսել սկսեց արքունի հրամանով մեծամեծների հետ ու ասաց. “Միտք բերէ թող ամէն մարդ մեծ թագաւորի հրամանը. լաւ է մահ ընտրէք քանթէ կեանք վատութեան մէջ. դուք ինքներդ լաւ գիտէք Հայերի քաջութիւնը եւ իւրաքանչիւր մարդու անձնազոհութեան հոգին:,, Նաեւ նոցա միտն էր ձգում շատ ընկերակիցներին, որոնք թէեւ պատերազմից ապրեցան, բայց սրով ընդունեցին իրենց մահուան վճիռը, նոցա որդիքն ու աղջիկներն աքսորուան եւ բոլոր հայրական գաւառները ձեռքերից առնուան: Կարգի բերեց բոլոր զօրքը եւ մեծ դաշտի երկայնութեանը ճակատ կազմեց. հրաման տուեց որ գնդի աջ կողմիցը պատրաստ գտնուին Հայոց զօրավարի դէմուդէմը:

Քաջ Վարդանը բոլորի խորհրդով զօրագլուխներ նշանակեց. կռուի տեղը որոշեց բոլոր դաշտի երեսովը Արեաց զօրքի դէմուդէմը՝ Տղմուտ գետի ափում. առաջին գունդը Արծրունեաց Ներշապուհ իշխանի ձեռքը տուեց եւ նորան նիզակակից նշանակեց Մոկաց մեծ իշխանին: Երկրորդ գունդը տուեց Խորէն Խորխոռունու ձեռքը, եւ նորան նիզակակից նշանակեց Ընծայինին եւ Ներսէհ Քաջբերունուն: Երրորդ գունդը տուեց Վանանդեցի Թաթուլին, եւ նորան նիզակակից նշանակեց Տաճատ Գնթունուն: Իւր վերայ առաւ չորրորդ գունդը, եւ իրեն նիզակակից նշանակեց Արշաւիրին եւ իւր եղբօրն Համազասպեանին*:

* Ըստ Ղազարու “Մէջտեղի գնդին գլխաւոր նշանակեց

Այսպէս կազմուած, առան սուրբ քահանաների օրհնութիւնը, Աստուած կանչեցին եւ ՚երկու կողմն էլ գազանացած զօրութեամբ յարձակուան իրար վերայ։ Աղմուկի խստութիւնից եւ ձայների Ղազար. շատութիւնից սարերի քարանձաւները շարժ էին Եղիշէ. գալիս։ Վահանաւորների կոփկոփուիլն եւ աղեղների լարերի ճարճատիլն առհասարակ ամէնքի ականջը՝ խլացնում էին. խումբ եղած բոլոր բազմութիւնը գետը միջերն առան փակեցին. եւ Պարսից գունդը գետի դժուարութիւնիցը վախենալով տեղնուտեղն սկսեց որդունքի նման ղեռալ, սաստիկ զարնուելով իրարու, երկու կողմից էլ շատ վիրաւորներ գետին ընկած դիաթաւալ էին լինում։

Քաջ Վարդանը Պարսից գնդի աջ թեւը կոտրելով գազանների կողմն էր ձգում. մինչեւ անգամ մատեան գունգը քանդուաւ բաժանուաւ իւր պինդ կազմուածքից՝։ ՝Այնպէս որ՝ ՚սկիզբը Պարսից զօրքը փախչել սկսեց. իսկ Հայոց զօրքի միւս բազմութիւնից, ով որ կամաւ չէր ցանկացել երկնային բարութիւններին հասնելու, նոյնպէս փախաւ կորաւ։ Ղազար. ՚Մուշկան Նիւսալաւուրտը տեսաւ, որ Հայոց գնդից միքանիսը բաժանուել են եւ յետ են մնացել սարերի հովիտների մէջ, այդ պատճառով սիրտ տուեց Արեաց զօրքին, որ իւր շուրջն էին եւ Վարդանի Եղիշէ

Արծրունեաց տէր եւ մարդպետ Ներշապուհին եւ Արշարունեաց Արշաւիր իշխանին, Մոկաց Արտակին եւ այլ մեծ նախարարներին։ Աջ կողմից նշանակեց երանելի Մաղխազ Խորէնին, Վանանդայ տէր Թաթուլին, Ներսէհ Քաջբերունուն եւ այլ մեծ նախարարների հետ. Ձախ կողմից իրեն պատրաստեց իւր գնդով Առաւեղենից Փափագ իշխանի եւ ուրիշ մեծ նախարարների հետ, որովհետեւ այն կողմից աւելի շատ էր երեւում Սիւնեաց կատիչ զօրքը եւ ուրիշ զօրաւոր մարդիկների դրօշները, եւ իւր եղբօրն Համազասպեանին էլ թողեց վերջապահ։,,

գնդի դէմն էին տեղ առել։ Այնտեղ երկու կողմն
էլ զգացին իրենց յաղթուիլը. քաջ Վարդանը իւր
քաջ նիզակակիցների հետ միասին բաւական շատ
կոտորած պատճառեց այն տեղումը, եւ ինքն էլ ար-
ժանացաւ կատարեալ նահատակութիւն ընդու-
նելու։

Պատերազմի երկարելուց օրն էլ տարաժամել
սկսեց եւ երեկոն վերայ հասաւ. շատերի մահուան
բոպէները հասել էին, եւ երկու կողմի մէջն էլ մեծ
իրարանցումն էր թագաւորած։

Նոքա որոնք մնացել էին՝ ցրուեցան ամուր ձո-
րերի լեռնադաշտերը, եւ երբ պատահում էին
իրարու, մէկ անգամ էլի նորից իրար արիւն էին
թափում. եւ մինչեւ արեւի մէր մտնելն անդադար
կատարուում էր նոյն անախորժ գործը։

Որովհետեւ գարնանային էր ժամանակը, ծաղ-
կալից դաշտերը արիւնի գետ էին դառել. մէկը որ
տեսնում էր այն ընկած դիակների ահագին կոյտը,
սիրտը դող էր ընում եւ աղիքը կտրատուում. ոչ
թէ կողմ կար որ յաղթող էր, եւ կողմ էլ կար՝
որ յաղթուած, այլ քաջերը քաջերի դէմ ելան
եւ երկուսն էլ յաղթուան։

Որովհետեւ Հայոց զօրավարը մեծ պատերազմի
մէջ ընկած էր, չկար այնուհետեւ մէջտեղը մի
գլխաւոր, որ նորա մօտ ժողովուէին մնացած գուն-
դը. ապրօղներն աւելի շատ էին՝ քանթէ մեռնօղ-
ները. եւ ընկան նոքա ՙապրօղները՚ երկրի ամուր
տեղերը, զօռով տիրեցին շատ այնպէս բերդերի՝
որ ոչոք չէր կարող առնել։

Ղազար. Որոնքոր այն ժամանակ սուրբ Վարդանի հետ
նահատակուան, այս մարդիկն են. Խորխոռունեաց

ցեղից Խորէն, Պալունեաց ցեղից Արտակ, Գընդունեաց ցեղից Տաճատ, Դիմաքսեան ցեղից Հմայեակ, Քաջբերունեաց ցեղից Ներսէհ, Գնունեաց ցեղից Վահան, Ընծայնու ցեղից Արսէն, Սրուանձտեան ցեղից Գարեգին։ Եւ ինչպէսոր շատ հետամուտ եղանք իմացանք նահատակուածների թուի մասին, պատերազմի տեղում աւագ նախարարների հետ մարտիրոսական պսակ ընդունեցին երկու հարիւր եօթանասունը վեց մարդ. եւ նոցա թիւը, որոնց ամրոցներից իջուցին սպանեցին, եօթը հարիւր յիսուն մարդ. բոլորը միասին հազար երեսունը վեց (1036) մարդ։

Իսկ Պարսից զօրքից՝ պատերազմի օրն ընկածների թիւն է (ինչպէս որ հաստատ տեղեկացել Պարսից զօրագլուխներից եւ ասել են մեզ,) երեք հազար հինգ հարիւր քառասուն չորս (3544) մարդ։
ʼՈւրացեալների կողմից կոտորուել են 3544 մարդ։ Եղիշէ.
Մուշկան Նիւսալաւուրտը, երբոր տեսաւ թէ իւր զօրքը եօթն անգամ աւելի է վնասուել քանթէ Հայերինը, հանգստութիւն չէր կարող գտնել իր մտքի մէջ։

## ԳԼՈՒԽ ԺԲ.

### Մ ա ք ա ռ ո ւ մ։

*Մուշկան Նիւսալաւուրտը Վասակի օգնութեամբ նուաճում է ցիրուցան եղած ուխտապահ Հայերին։ Ցազկերտը հրամայում է մարզպան կարգել Ատրորմիզդին. ազատութիւն տալ քրիստոնեաներին իրենց հաւատը պաշտելու եւ Վասակին ու գլխաւոր քրիստոնեաներին էլ իւր մօտը կանչել։*

"Մի ծառայեցուցանէք զոգիս ձեր երկիւղի մարդկան։"

Եղիշէ.

Մուշկան Նիւսալաւուրտն երբոր տեսաւ թէ իւր գնդի կորուստն եօթն անգամ աւելի է քանթէ Հայերինը, չէր կարող հանդարտել իւր մտքի մէջ. որովհետեւ ինչպէսոր սպասում էր՝ այնպէս չվերջացաւ պատերազմը։ Ճշմարտութեամբ գործը գրել եւ ցոյց տալ թագաւորին վախենում էր, թագցնել էլ չէր կարող։

Ուրացեալ Վասակը մխիթարում էր նորան եւ հնարք էր սովորեցնում թէ ինչպէս կարող է նա ամրոցների հետ կռուել խաբէութեամբ։ Խաբեբայ քահանաներով, որ նորա հետն էին, պատգամաւորներ էր ղրկում եւ այնպէս էր ցոյց տալիս՝ թէ ապստամբութիւնը ներում են նոցա եւ առաջուայ պէս բոլոր կարգերն էլի յարմարացնում։ Թէպէտ թագաւորի հրամանը հաստատ էր տուած, բայց Հայոց զօրքը Վասակի խաբեբայութիւնների պատճառով չէին կարող շուտով հաւատալ թագաւորի հրամանին. դրդեց Մուշկան Նիւսալաւուրտին եւ Պարսից բոլոր մեծամեծներին. զօրք առաւ հասաւ այն ամրոցի վերայ, որի մէջն էին Հայոց զօրքից մի գունդ՝ սուրբ քահանաների հետ միասին. երբ չկարողացան նոցա վերայ ազդել, երդումների վերայ

դրին իրենց յոյսը եւ երկուերեք անգամ աւետարան տանել տուին. զօրականներից շատերը չէին կարող հաւատալ Վասակի սուտ խոստումին. քաջ զօրականներից մէկը՝ Բակ անունով՝ ելաւ պարսպի վերայ եւ յիշեցնում էր Պարսից զօրավարի առաջ այն բոլոր չարութիւնները որ արել է Վասակ Հայաստանի գլխին։ Այս միեւնոյն մարդը (Բակ) նոյն գիշերին եօթը հարիւր մարդով ելաւ բերդից գնաց եւ ոչ ոք չկարողացաւ ձեռք տալ նորան։ Իսկ նոքա, որոնք ամրոցի մէջն էին մնացել, ներսը պաշար չունէին եւ ակամայ դուրս եկան նորա՝ Վասակի՝ առաջը կայնան. եւ հրամայեց նոցանից երկու հարիւր տասներեք մարդու սպանել. սուրբ քահանաները, որոնք այն տեղ պատահեցին, Յովսէփն ու Ղեւոնդը շատ ընկերներով միասին իրենց պարանոցները սրին մօտեցուցին, որովհետեւ ոչ թէ այն երանելիները մարմնաւոր կեանքի ակնկալութիւն ունէին, այլ իմաստութեամբ հնարք էին փնտրում աշխարհի շինութեան համար. այս պատճառով էլ թագաւորին բողոքեցին, եւ բոլոր գանգատներն անօրէն Վասակի վրայ էր։ Այս որ լսեց Մուշկան Նիւսալաւուրտ չհամարձակեցաւ նոցա սպանել, այլ Յովսէփին ու Ղեւոնդին թակել տուեց եւ հրամայեց զգուշութեամբ պահել. իսկ միւս քահանաներին արձակեց իրենց տեղերը ասելով, որ այսուհետեւ պէտք է շինութիւն եւ խաղաղութիւն լինի երկրի մէջ։

Մարգիկ էլ կային, որ բոլորովին չէին հաւատում սուտ թողութեանը, այլ ասում էին, թէ "ի՞նչ պէտք է մեզ անցաւոր աշխարհքիս կեանքը. կամ ի՞նչու էլ տեսնում ենք մենք արեւ մեր սի-

րելիներից յետոյ. չենք ուզում ձեր խաբեբայ հրամաններին լսել եւ պղծ անօրէն իշխանի ձեռքն ընկնել:,, Թողին այնուհետեւ ամէն մարդ իւր գիւղն, աւանն ու ագարակը. եղան հարսներն առագաստներից եւ փեսաները սենեակներից. գնում էին երիտասարդներն ու կոյսերը, եւ բոլոր մարդոց ու կանանց բազմութիւնը, բռնում էին անապատի ամուր տեղերն եւ շատ լեռների անխաբ խորշերը. լաւ էին համարում որ գազանի նման ապրին աստուածպաշտութեամբ քարանձաւների մէջ, քանթէ ուրացութեամբ փափկակեաց լինին լաւ շինուածքների մէջ. Նոցանից ոչմէկն էլ յուսահատութեամբ սուգ չէր անում սրով ընկածների վերայ, եւ ոչոք չէր հառաչում մերձաւոր սիրելիների վերայ. շատերը մեծ նախարարների ազգից էին բոլոր իրենց սիրելիների հետ միասին. միքանիսը Խաղտեաց [1] անլոյս երկրում, շատերը հարաւային կողմերը Տմորեաց [2] անմատչելի ամուր տեղերում, ոմանք Արցախի [3] թանձրախիտ անտառների մէջ, ոմանք էլ միջերկրեայ տեղերում տիրեցին զօրով շատ ամրոցների. ամէնքը մեծ համբերութեամբ քաշում էին շատ նեղութիւն եւ խնդրում էին Աստուծուց՝ որ չտեսնին իրենց սուրբ եկեղեցիների աւերումը:

Թագաւորական հրամանով շատ այրուձի եկաւ աւելացաւ ընկածների փոխարէն, եւ գնդի շատութիւնն այնքան դառաւ ինչպէս առաջ. եւ սկսեցին կռուել Կապոյտ [4] սարի մեծ բերդերի հետ: Ներսը գտնուողները քաջութեամբ կռւում եւ սպանում էին Պարսից գնդի միջից շատերին եւ մնացածներին փախստական էին անում ձգում բանակը: Ոչոք

չհաւատաց դուրս գալ իջնել նոցա ‘Պարսից’ մօտ, բայց երդումների պատճառով հարկ եղաւ մէկ Արշէն անունով քահանայի ցած գնալ նոցա մօտ. խնդրում աղաչում էր ուրացեալ Վասակին եւ նորա միտն էր ձգում, որ նա յառաջ քրիստոնեայ է եղել, որպէսզի գուցէ՝ մի փոքր քաղցրանայ ‘խըղճայ’, բայց նա ‘Վասակ’ բոլորովին չլսեց նորա խօսքերին, կապեց երանելուն եւ նորա հետ ցած եկողներին եւ տարաւ իւր հետ։ Երբոր տեսաւ Վասակ թէ Պարսից զօրավարը նորա խրատին հետեւում է, սկսեց ասպատակաւոր ղրկել եւ վառել տալ շատ տեղեր։

Նոքա որոնք Տմորիքի ամուր տեղերումն էին, ամրականների օգնութեամբ վրայ պրծան եւ հասան մինչեւ Պարսից մօտաւոր երկիրը, շատ արիւններ թափեցին այն տեղ, եւ մնացածներին էլ գերի առան տարան իրենց ամրոցները, եւ Պարսից երկրի շինուածներին էլ կրակի տուին։

Նոքա, որոնք Խաղտեաց սարերումն էին, յարձակեցան Տայոց [5] ձորագաւառի վերայ, եւ գտան այն տեղ շատ թագաւորական զօրք, որ եկել էին գերի տանել այն տեղի ամրականներին եւ կարծում էին, թէ նախարարների գանձերն էլ այն տեղ կըլինին։ Վրայ թափուան, կռիւ բացին եւ Պարսից գնդի զօրութիւնն ընկճելով՝ մնացածներին էլ քշեցին իրենց կողմերից դուրս։

Նոքա, որոնք Արցախու անտառների մէջ փախել պահուել էին, Հոնաց գնդին համոզեցին եւ յիշեցուցին նոցա դաշինքը Հայերի հետ, որ անսուտ երդումով հաստատել էին։ Հոները մեծ գունդ ժողովեցին եւ ընկան Պարսից տէրութեան սահման-

ների վերայ, շատ գաւառներ ոտնակոխ արին, եւ
այսպիսով յայտնի ցոյց տուին Թագաւորին 'Ցազ-
կերտին', որ Հայոց գնդի հետ միաբանութիւն
ունին։

Ղազար. Մուշկան Նիւսալաւուրտը 'վերջապէս' գիր գրեց
Թագաւորին եւ յայտնեց նորան պատերազմի ելքը
թէ՛ յաղթութեան աւետիս տալով եւ թէ՛ միառ մի
ցոյց տալով եւ սպանուածների հաշիւը երկու կող-
մից եւս։ Ցազկերտը լսելով քաջ մարդոց մեռնիլը
Պարսից գնդի միջէն եւ Վարդանի մահն եւս, մեծ
սուգի մէջ ընկաւ յիշելով նորա 'Վարդանի' քա-
ջութիւնն ու լաւութիւնը, որ նա շատ անգամ ցոյց
էր տուել Արեաց աշխարհի 'Պարսկաստանի' թշնա-
Եղիշէ. մինների դէմ։ 'Եւ որովհետեւ' Մուշկան Նիւսա-
լաւուրտը գնաց, ամէն բան գրեց եւ ցոյց տուեց
Թագաւորին ճշմարտութեամբ ու գործի վնասը
'մեղքը' ուրացեալ Վասակի վերայ ձգեց, 'ուստի'
Թագաւորը կամենում էր տեսնել թէ ո՞վ կայ այն-
պիսի մարդ, որ կարողանայ ճշմարտութեամբ պար-
զել ամէն բան։ Միհրներսեհն ասաց Թագաւորին
թէ "ինչ գլխաւոր մարդիկ որ կան քրիստոնեայ
Հայերի մէջ՝ կանչել տուր նոցա քեզ մօտ, եւ յօ-
ժարութեամբ կըգան կըպատմեն քեզ ամէն բան
ճշմարիտ կերպով։,,

Ատրորմիզդ * անունով մէկ աւագ նախարարի
գրեց 'Ցազկերտ' եւ յանձնեց նորան Հայոց աշ-
խարհի մարզպանութիւնը. Մուշկան Նիւսալաւուր-
տին էլ Աղուանից աշխարհքը ղրկեց**, եւ նորա
հետի մնացած զօրքն էլ հաւաքեց այն ամրոցները

* Ըստ Ղազարու "Արշական յաշխարհէն Հայոց։,,
** Ըստ Ղազարու "Մուշկան Նիւսալաւուրտին գունդը կանչեց։,,

որ Հոներն աւերել էին Հայոց հետ դաշինք ունենալու պատճառով. Թագաւորն աւելի շատ տրտմած էր Պահակի աւերուելու վերայ, որն երկար ժամանակ հազիւ կարողացել էին շինել եւ այն միջոցներն այնպէս հեշտ քանդուաւ եւ նոր շինելու էլ յոյս չկար։

Յազկերտ հրամայեց նաեւ, որ Վասակին եւ Ղազար.
գլխաւոր քրիստոնեաներին կանչեն գալ իւր մօտ։ Ատրորմիզդին էլ յանձնեց որ Հայերին չխրտնեցնէ, այլ սիրով նուաճէ, եւ հրաման տուեց որ քրիստոնէութիւնը համարձակապէս պաշտուի։

———

## ԳԼՈՒԽ ԺԳ.

### *Ազատութիւն:*

Ատրորմիզդը խաղաղութիւն եւ կրօնի ազատութիւն հրատարակեց. Հմայեակ Մամիկոնեանի գնդի վերայ զօրք ղրկեց: Հմայեակն սպանուաւ եւ նորա գունդն էլ ցիրուցան եղաւ: Հայոց բողոքները լսեց եւ գրեց Յազկերտին: Վասակը նախ՝ քահանաներին եւ ուրիշ կալանաւորներին ուղարկեց Պարսկաստան, ապա ինքն էլ գնաց (453) Յազկերտին ներկայանալու: Յազկերտը նոր հրովարտակներ գրեց ազատութեան: Հայոց նախարարները գորանից սիրտ առած՝ եկան ներկայացան Յազկերտի առաջը:

"Ոչ ոք պսակի ընդ ընկերաց իւրոց եթէ ոչ տանջի:" Ղ. ՓԱՐՊ:

Ղազար. *Ատրորմիզդ մարզպանն եկաւ եւ շատ խաղաղութեան գրեր գրեց Հայաստանի զանազան կողմերը, եւ յայտնեց թէ բոլորին էլ շնորհում է թագաւորը քրիստոնէութեան կարգը. այս համբաւից ուրախութեամբ եկան ժողովուան նորա մօտ Պարսկաստանից ու Սիւնեաց աշխարհից ամէնքը:*

*Երանելի Հմայեակի վերայ Տայոց ամուր տեղերը զօրք ղրկեց Սիւնիների եւ Պարսիկների միջից, գունդը երկու բաժին արաւ եւ նոցա վերայ զօրագլուխ նշանակեց Արտէն Գաբեղեանին եւ Վարազշապուհ Պալունուն: Այն ժամանակները Հայ փախստականներից շատերը՝ նախարարներ, սեպուհներ, քաղաքացիք եւ ռամիկներ՝ փախել գնացել էին Տայոց երկիրը եւ հաւաքուել Վարդան սուրբ զօրավարի եղբօր 'Հմայեակի' մօտ, որն ուշացել էր Յունաստանից գալիս եւ չէր հասել պատերազմին, ու Պարխար[1] սարի մօտ խաղտեաց սահմանի վերայ մնացել էր: 'Ատրոմիզդի ղրկած գունդը' եկաւ յարձակեցաւ նորա 'Հմայեակի' ընկերների վերայ Որջնհաղ գիւղում Տայոց գաւառի մէջ. փախստական մարդիկը շուտով ձիերը նստան, միքանիսը*

մերկանդամ, միքանիսը զինուորուած կռիւ բացին Պարսից զօրքի հետ եւ փախցրին նոցա. շատերին հէնց այն տեղ գեղի մէջտեղը, ուրիշներին էլ այգիների մէջ կոտորեցին. այն տեղ եւ ընդունեց կատարելութեան պսակն եւ Հմայեակ սեպուհը. իսկ ուխտապահների զօրքը, երբ գործը այսպէս տեսան, ընկան մեծ սգի մէջ եւ յուսահատեցան. իսկոյն փախան եւ դէպի Պարխար սարը դարիվէր գնացին: Ատրորմիզդը լսելով այնչափ լաւ մարդոց կորչիլը Պարսիկների եւ Սիւնիների միջից, թէեւ տրխրեցաւ, բայց տեղեկանալով Հմայեակի մեռնելու մասին՝ շատ ուրախացաւ, իմանալով որ էլ բոլորովին չկայ քաջ երեւելի զօրավար ՙՀայերի մէջ՚: Խորհուրդ կազմեց թէ ինչպէս հնարք կըլինի փախստականներին որսալ առանց Պարսիկների կըռուելուն եւ հարկի տակ դնել Հայոց աշխարհը. եւ այս կարծիքին եկան թէ միմիայն սուտ երդումով եւ սնոտի խոստումներով կարելի կըլինի այդ: Ուղարկեց նոցա մօտ Յազկերտի բերանից ասելու, թէ "ոչ մէկիդ էլ չենք սպաններ, եւ ոչ էլ ձեր տէրութիւնը կամ՝ պատիւը կըխլենք ձեռքերէդ,,. եւ այսպէս խաբեբայութիւններով նուաճեց մարդիկներին եւ բռնեց բոլորին էլ ղրկեց Թագաւորի դուռը:

ՙՅետոյ՚ Թագաւորի հրամանով կանչեց իւր մօտ Եղիշէ.
Ռշտունեաց Սահակ եպիսկոպոսին, որ նորանից իմանայ թէ ինչ գանգատներ ունին. այդ Սահակը մի ատրուշան էր աւերել եւ ծեծել էր կրակի սպասաւորներին: Արծրունեաց տանից էլ մէկ Մուշէ անունով քահանայ, որը Արծրունեաց երկրին առաջնորդ էր, մի կրակատուն էր աւերել եւ շատ նեղութիւններ էր տուել մոգերին: Երկու ուրիշ

*քահանայ էլ, Սամուէլն եւ Աբրահամը, որ Արտաշատու արուշանն էին քանդել, ուրացեալ Վասակի ձեռամբ բռնուած էին բանտի մէջ։ Կանչեց եւ մեծ Յովսէփին, Ղեւոնդին, Քաջաջին ու Արշէնին։ Երբոր տեղեկացաւ մարզպանը նոցանից ամէնից ՙինչոր պէտք էր՚, ամէն բան ճշմարտութեամբ գրեց թագաւորին, ինչոր լսել էր նոցա բերանից։*

Ղազար. *Սիւնեաց նենգաւոր իշխանը Վասակն ինքն էլ կամենալով գնալ Յազկերտի մօտ՝ յառաջուց ճանապարհ ձգեց Հայոց սուրբ քահանաներին, որոնց բռնել էր նա եւ դրել Սիւնեաց բերդերի ամուր տեղերը. ՙայդ քահանաներն էին՚ սուրբ Յովսէփ երէցը, որ կաթուղիկոսութեան աթոռն էր կառավարում այն ժամանակ, տէր Ղեւոնդը, Արածայ քահանաները՝ տէր Սամուէլն եւ տէր Աբրահամը. նոցա հետ՝ էին՚ եւ Ռշտունեաց տէր Սահակ եպիսկոպոսն եւ Արծրունեաց Ներշապուհ իշխանի դրան երէց տէր Մուշէն եւ սուրբ երէց Արշէնն եւ սուրբ սարկաւագ Քաջաջը։*

*Ուղարկեց նաեւ այն երեխաներին, որոնց բռնել էր Մամիկոնեան, Կամսարական եւ ուրիշ հայ իշխանների ցեղերից։ Այս բոլորին իրենից յառաջ ճանապարհ ձգելով ՙդէպի Պարսկաստան՚, նենգաւոր Վասակն ինքն էլ Յազկերտի թագաւորութեան երեքտասաներորդ [2] տարին մեծ պատրաստութեամբ ու շատ մարդիկներով ճանապարհ ընկաւ թագաւորի մօտ գնալու, կարծելով՝ որ վարձ պէտք է ընդունէ նորանից ՙՅազկերտից՚ Հայոց թագաւորութիւնը։ Երբ դուրս եկան այն ճանապարհի վերայ, ուր տանում էին սուրբ քահանաներին կապած եւ ջորիների վերայ նստեցրած, Վասակի ծառաները հասան Քրիստոսի նահատակներին։*

Սուրբ Յովսէփը հարցրեց սուրբ Ղեւոնդին թէ “գիտեմ Վասակը կըհամարձակի գալ եւ բարեւ տալ մեզ, միտք արա դու թէ ի՞նչպէս պէտք է շարժինք, եւ հրամայէ՛, որ այնպէս անենք։” Սուրբ Ղեւոնդը պատասխան տուեց ու ասաց, թէ “Քրիստոսի սովորեցրած բանը մի՛ հեռեւիր սովորել մարդիկներից. ի՛նչ քաղաք կամ գիւղ որ մտնելու լինիք, ասացէք ողջոյն, ‘այսպէս է ասել Քրիստոս:’ ” Նենգաւոր Վասակն եկաւ հասաւ նոցա եւ իսկոյն իջաւ ձիուց եւ ողջունեց սրբերին, որոնք բնաւ ոչ մի թշնամութիւն ցոյց չտալով նորան, ուրախութեամբ եւ սիրով տեսան նորան, եւ մանաւանդ սուրբ Ղեւոնդն անտրտում եւ զուարթերես քաղցր լեզուով միամտութեամբ երկար խօսեց նորա հետ. նա էլ երբ լսում էր նոցա քաղցրաբանութիւնը, կարծեց թէ սոքա չեն էլ իմանում բնաւ իրենց գլխին բերած վատ բաները. այս պատճառով աւելի մխիթարուած գնում էր նոցա հետ երկար տեղ. եւ Սիւնեաց տէրը աղաչեց սրբերին այն օրը իրեն հետ ճաշ ուտել իւր օթեւանի մէջ։ Երբ մի փոքր յառաջ անցաւ նոցանից Վասակը, կանչեց յետեւից սուրբ Ղեւոնդ՝ բարձրաձայն նորա պատուի անունը տալով, թէ “Սիւնեաց Տէր, Սիւնեաց տէր”. Նա ‘Վասակ’ էլ յօժարութեամբ պատասխան տուեց թէ “Տեա՛րք, ի՞նչ էք կամենում”. սուրբն էլ ‘Ղեւոնդ’ ասաց թէ “ամենից օգտակարը մոռացանք հարցնել քեզ՝ թէ ո՞ւր ես գնում”։ Նենգաւոր Վասակն այս լսելով զարմացած ասաց. “տիրոջս մօտն եմ գնում, որ մեծ վարձատրութիւն ստանում նորանից։” Սուրբ Ղեւոնդը պատասխան տուեց նորան եւ ասաց. “Այն դեւը, որ քեզ դրդեց

ու սուրբ աւետարանին ստել տուեց, նա քեզ այժմ
այնպէս երեւցնում է, թէ միայն Հայոց թագաւո-
րութիւն տալով՝ կարող են վարձատրել քեզ Պար-
սիկները. բայց ոչ մի բան էլ չկայ, որ նոքա քեզ
փոխարէնը տան, եւ եթէ դու արդարեւ կարողա-
նաս գլուխդ ուսերիդ վերայ մէկ էլ Հայաստան
դառնալ, այնժամանակ Աստուած[3] թող պատիժս
տայ:„ Այս որ լսեց նենգաւոր իշխանը, բոլոր նորա
Եղիշ. սնոտի յոյսը կտրուաւ: ՚Վասակն աւելի յառաջ
Ղազար. Հասաւ դուռը: ՚Յառաջ դրան մեծամեծների հետ
տեսութիւն արաւ, յետոյ մտաւ թագաւորի մօտ:
Եղիշ. ՚Առժամանակ ընդունում էին նորան պատուով եւ
շքեղութեամբ: Նա ամէն բան սուտ սուտ պատմեց,
բայց չէր կարող թագաւորի մտքումն իրեն արդարա-
ցնել: Մինչեւոր բերին հասցրին սուրբ քահանաներին,
Ղազար. ապստամբների երեխաներին՝ թագաւորական ձմերո-
Եղիշ. ցը[4] ՚երկու ամսում եւ. քսան օրում: ՛Այս միջոց՚
հրաման տուեց թագաւորը առաջուայ պէս յայտնի
պաշտել քրիստոնէութիւնը եւ թողնել ժողովրդի
հարկերը, եւ որ ամէնքից գլխաւորն է, ովոր ակամայ
ընդունած է մոգութիւն, հրովարտակ գրեց, որ
նորից քրիստոնէութիւն պաշտէ:

Այն նախարարները, որոնք Հայաստանի բերդե-
րումն էին, երբոր եկեղեցու հաստատուիլը տեսան,
սիրտ առան եւ ուզեցին ներկայանալ թագաւորին:

Այս որ լսեց թագաւորը, հրամայեց նոցա՛ նա-
խարարներին՚ էլ կանչել իւր մօտ թագաւորական
ձմերոցը, եւ պատուիրեց, որ ատեան կազմուի հար-
ցափորձ անելու նոցա:[5]

---

## ԳԼՈՒԽ ԺԴ.

### Հարցափորձ։

*Հայոց քահանաները դատւում են Միհրներսէհի ատենում. Նոցա եւ նախարարներին կապել են տալիս եւ նշանակւում է մեծ ատեան հարցափորձի։*

“Որ գիտէ զմահ՝ ոչ երկնչի ի մահուանէ։„

Պարսից անօրէն հազարապետն յառաջ հրամայեց քահանաներին բերել ատեան եւ հարցրեց Արածայ սուրբ երէց Սամուէլին եւ սուրբ սարկաւագ Աբրահամին, որն Արտաշատու կրակն էր հանգցրել։ “Ո՞ւմ հրամանով համարձակեցաք այնպիսի մեծ կրակին ձեռք տալ. Թէեւ մարդուն ցոյց տուած լինէիք այնպիսի յանդգնութիւն, միանգամայն մահու արժանի գործ կատարած կը լինէիք, ո՜ւր մնաց՝ որ աստուածներին ՙէք ցոյց տուել՚։ Նոքա պատասխան տուին՝ մասամբ ստոյգ բաներ խօսելով, մասամբ ծաղրելով, եւ ասացին. “մեր հաւատքն եւս սովորեցնում է մեզ արժանաւոր եւ ճշմարիտ երկիւղ կրել թագաւորներից եւ իշխաններից, բայց Աստծու ահը մարդու ահի հետ փոխել մենք յանձնառու չենք լինիր բնաւ։ Այդ կրակի համար որ ասում ես, թէ “սպանեցիք„ մենք նորան վնաս տուած չենք, այլ տեսնելով սպասաւորների վատութիւնը, որ իրենց աստուածների երկիւղը դատարկ բան համարելով՝ թողին ու գնացին, մենք էլ տեսանք որ կրակն առանց մարդու մոխիր է դարձել շատ ժամանակ, առանք մոխիրը դուրս թափեցինք. որովհետեւ նոյնը նորա սպասաւորների մէջ էինք տեսնում, որ միշտ մոխիրը կրում եւ թափում էին Ղազար

գետին։ Բայց որովհետեւ մեր չարախօսներն իմաց են տուել ձեզ մեր մասին, թէ “կրակն առան ու ջուրը թափեցին„, այդ բանի մասին էլ ձեր արդարադատութիւնը պիտի չբարկանայ մեզ վերայ, այլ գովութեան ու պատուի պէտք է արժանացնէ մեզ. որովհետեւ, եթէ ճշմարիտ, ինչպէս դուք ասում էք, ջուրը կրակի եղբայրն է, մահու արժանի են նոքա, որոնք թողին կրակն ու գնացին, այլ ոչ թէ մենք, որ առանք եւ եղբօրը տուինք, որ սիրով պահպանէ նորան եւ իւր ժամանակին բաց թողնի։„

Այս օրինակով հարցրին միւս սուրբ քահանաներին եւս թէ “ի՞նչպիսի համարձակութեամբ աւրեցիք կրակատունները, սպանեցիք այնպիսի փառաւոր կրակները (որոնք վատ ու վնասակար բաներից անվնաս պահած էին մեզ), սպանեցիք մոգերին, ձեր կախարդութեամբ կորցրիք այնպիսի քաջ մարդուն ‘ինչպէս’ Վարդանը, որ օգտակար էր Արեաց տիրոջը։„

Յառաջ եկաւ սուրբ Ղեւոնդն եւ պատասխան տուեց ու ասաց. “Սոքա ամէնքը, որ ձեր իշխանութեան առաջը քննուում են, եկեղեցու կարգով ջոկջոկ պատիւներ ունին։„ եւ ցոյց տուեց ամէնմէկի ո՞վ լինելը. սուրբ Յովսէփի համար ասաց. “Սորան ինչպէս տեսնում էք տարով ինձանից փոքր է, այլ պատուով նշանակուած է իւր արժանաւորութեանն համեմատ Հայոց բոլոր քահանաներին գլխաւոր.„ սուրբ Սահակին ցոյց տալով ասում էր. “Սա մեր օրէնքին համաձայն ընդունած ձեռնադրութեամբն ամէնից կատարեալ օծման կարգն ունի. իսկ միւսներն, ինչպէս եւ ես, միատեսակ ենք քահանայութեան կարգով. եւ ամէնքս էլ ո՛չ թէ

ինչպէս անգէտ մարդիկ՝ առանց հասկանալու կատարած ենք այնպիսի մեծ ու սարսափելի գործն եւ զղջացած ենք, կամ թէ այժմ մեզ համարում են միքանիսը որպէսթէ վախով այլ ոչ ուրախութեամբ ենք եկել կայնել ձեր ահաւորութեան առաջն. ընդհակառակը մենք մեր գործածների վերայ ուրախ ենք. զանազան ցաւերի ենք պատահել, մահին էլ փափագելով սպասում ենք, որ արժանի լինինք։ Իսկ ատրուշանների աւերելու մասին, որ ասում էք, կամ կրակի սպանելու մասին, մեր գրքի մէջ ասուած է. "Այն աստուածները, որ երկինք ու երկիր չեն ստեղծել թող գետնի տակը կորչին։„ Կրակը շատ նիւթերից է լինում. կայ որ՝ ինչ նիւթից գոյացած է, նոյնից եւ հանգչում է, կայ որ՝ ինչ նիւթից գոյացած է, նոյնից եւ աճում է ու բորբոքում. այսպէս՝ կրակը երկաթից է ծնում, քարից, ջրից, փայտից։ Կայ եւ մի սպիտակ հլուն, որից կրակ է լինում։ Կաւարծաթից էլ կրակ է լինում եթէ մարդ նորան արեգակի դէմը դնէ եւ շողացնէ։ Եւ երկաթից ծնած կրակի վերայ, եթէ երկաթ գիզես, կըհանգչի. եւ քարից եղած կրակն եթէ քարերով ծածկես, կ'անցնի. իսկ փայտից եղած կրակը, փայտով վառուում է եւ աւելանում. ուրեմն ո՛չ թէ կրակն, այլ փայտն է արժանի աստուած կոչուելու, որովհետեւ նա է ծնում եւ կեանք տալիս։ Ամէն նիւթի մէջն էլ կրակը պակաս չէ. (ամէն նիւթի մէջն էլ կրակ կայ.) ուրեմն երկրիս ամէն նիւթերն էլ աստուածներ են, ինչո՞ւ կէս մասին աստուած էք կանչում եւ կէսին աղտեղի բաների մէջ գործ գնելով անպատուում։ Աղիւսներով եւ քարերով՝ մասամբ ապարաններ

էք շինում, մասամբ աղբևրի ու աղտեղութեան տներ։ Արծաթից մասամբ բաժակներ էք շինում, մասամբ էլ աղտեղութեան ամաններ։ Աստուածների կրակոտն արջառներ ու ոչխարներ էք խորովում, եփում։ Ջրով աղբերը, Թարախներն եւ կեղտերն էք լուանում, մասամբ էլ կամ առանձին եւ կամ գինեխառն էք խմում ու չէք զարհուրում։ Միք բանալ տար մեր բերանը միառմի ձեր անզգայութիւնը Թուելու։ Վարդան քաջ նահատակն եւ նորան նմանները միշտ ձեզի բողոքում էին, Թէ ձեր պաշտամունքը սուտ են, անմիտ մարդու խելքի բաներ են, դուք չէիք լսում որովհետեւ բռնութիւնն իրաւունք ճանաչել տալ չի կարող. այդ պատճառով էլ նոքա չհամբերեցին, իրենց անձերը մահին մատնեցին ու պսակներ ընդունեցին. մենք էլ քաջալերող էինք եւ իրաւ որ նոցա ճշմարիտ վարդապետներն էինք։„

Այս ամէնը որ խօսեցաւ պրծաւ սուրբ Ղեւոնդ, սուրբ քահանաները միաբերան գովեցին 'նորան' եւ շատ ուրախ եղան։ Եւ նոցա երեսի ուրախութիւնը տեսնելով Միհրներսէհն ու միւս մեծամեծները բարկացան եւ ասում են. "մեր օրէնքը Թոյլ չէ տալիս մէկին պատժել, մինչեւ որ նորա բերանից բան լսած չլինինք. արդ՝ ասացէք մեզ, Թէ դուք էլ 'միւս քահանաներդ' նո՞յն բանն էք ասելու, ինչոր այդ մահապարտն համարձակեցաւ աներկիւղ խօսել մեր առաջը։„ Եւ սուրբ Յովսէփն ու սուրբ Սահակը պատասխան տուին եւ ասացին. "բոլոր այդ բաներն ինչոր խօսեցաւ ձեզ հետ այդ տէր Ղեւոնդը՝ մենք վաղուց շատ անգամ մտածած ենք եւ խօսած. այդ մոքերի վերայ ամէնքն են եւ դորա վերայ

‘հաստատուած’ ենք եւ մենք. եւ խնդրում ենք, որ արժանացնէք դորանով եւ վերջացնելու մեր կեանքը:„ Բարկացաւ զայրացաւ սրբերի վերայ անօրէն իշխանն եւ հրաման տուեց դահիճներին ամուր շղթայել երանելիների բերաններն, այնպէս որ արիւնը լցուաւ նոցա բերաններն եւ թափում էր դուրս:

Ատեանն արձակեց ‘Միհրներսէհ’. միւս կապեալներին, որոնք այն ատենի մէջն էին, հրամայեց դահիճներին, որ տանին եւ խիստ կապանքներով պահեն՝ ‘այսինքն նախարարներին’. մինչեւոր Թագաւորն ինքն, ասաց, իւր առաջն հարցնէ եւ լսէ, ինչոր խօսելու են: Եւ միւս օրը մտաւ Թագաւորի մօտ, յայտնեց նորան բոլոր իւր հարցուածների ու քահանաների տուած պատասխանների մասին: Թագաւորը նեղացաւ եւ հրամայեց, որ միւս օրը մեծ ատեան լինի իւր առաջը, բայց Մամիկոնեանների եւ Կամսարականների տոհմի երեխաների մասին հրաման տուեց Միհրներսէհին, ումոր ուզում է, նորան տայ:

---

# ԳԼՈՒԽ ԺԵ.

## Վասակի անկումը:

Յազկերտը մեծ Հրապարակի առաջ դատում է Նախարարներին եւ Վասակին: Վասակը մեղաւոր է դուրս գալիս եւ պատժւում: Վարազվաղան Սիւնին լինում է Սիւնեաց տէր: Վասակը մեռնում է Թշուառութեան մէջ:

"Չիք յանիրաւութենէ արդարութիւն,
ի ստութենէ ճշմարտութիւն:„ ԵՂԻՇԷ:

Ղազար. Բոլոր զինուորներն, ովոր Թագաւորից մի
պատիւ ունէր, առաւօտեան կանուխ եկան ատեանը:
Սիւնեաց ուխտանենդ իշխանն[1] էլ 'եկաւ' բոլոր իւր
Եղիշէ. Նշաններով զարդարուած. 'Հագել էր այն պատուա-
կան հագուստը' որ բաշխել էր նորան Թագաւորը.
'գլխին' կապել էր պատուավորւքն 'եւ' ոսկեղէն
խոյրը դրել նորա վերայ. մարգարիտներով ու պա-
տուական քարերով զարդարուած կռանակուռ ոս-
կեձոյլ կամարը մէջքը. օղերն ականջը. եւ գումար-
տակը վիզը. սամոյրն ուսերին եւ իւր պատուի բոլոր
Ղազար. Նշանները վրէն ձգած: 'Միայն' 'Թագաւորական պա-
տիւն էր պակաս, որ նա չունէր, իսկ ուրիշ ար-
քունի պատիւներից բան չէր մնացել որ չունենար.
եւ այնուհետեւ կարծում էր, որ Հայոց մեծ աշ-
խարհքի Թագաւորութիւնը պիտի առնի:

Եղիշէ. Իսկ այն Նախարարները, որոնք կամքով եկած
էին դուռը, եւ այն սուրբերը, որոնք աւելի յառաջ
էին եկած եւ կապանքի տակ էին Թագաւորի դրա-
նը, երբ տեսան Վասակին, որ զարդարուած գալիս
է մեծ բազմութեամբ արքունիք, իրենց մտքում
սկսեցին խնդալ նորա վերայ եւ ասել. "ով անմիտ
վաճառական, որ անմահ եւ անանց պատիւը տուիր
ու այդ անցաւորը գնեցիր:„

Վասակն եկաւ եւ տեղ առաւ ներքեւն այն գահլիճների մէջ, ուր մեծամեծների հրապարակն էր։ Ատեանը բացուաւ։ Թագաւորն հրամայեց, Ղազար. որ Հայոց ապստամբներին կապած բերեն նորա առաջը. եւ հարցրեց նոցա ու ասում է. „Ի՞նչ համարձակութեամբ կամ ի՞նչ օգնականութեան յոյս էիք տեսել, որ դիմեցիք այնպիսի մէկ ահաւոր գործի, որի մէջ դուք ձեր անձերի ու ձեր երկրի կորուստն էիք տեսնում, ինչպէսոր ահա եղաւ եւ տեսաք։„

Հայոց նախարարներն ամէնքն էլ լուռ մնացին առժամանակ. Թագաւորն յառաջուայ նման էլի կրկնեց իւր հարցն եւ ուզում էր ստիպմամբ, որ պատասխան տան։ Նոքա էլ պատասխան տուին եւ ասում են. "Թո՛ղ քու բարերարութիւնդ իրաւունք տայ մեզ, որ մեր միջից մի մարդ ցոյց տանք եւ նորանից լսեցէք, թէ բոլոր մեր գործերն իսկզբանէ ինչ կերպ սկսուան եւ գլուխ եկան։ Որովհետեւ վայելչէ, որ մենք բոլորս էլ անկարգ կերպով խօսինք քու առաջդ։„ Թագաւորն եւ բոլոր մեծամեծները յօժարութեամբ ընդունեցին եւ թոյլ տուին։ Նոքա էլ Արշաւիր կամսարականին յառաջ քաշեցին. Նորանից լսեն ամէն բան լիովին։

Արշաւիր կամսարականն աներկիւղ յառաջ անցաւ. սկսեց խօսել եւ ասում է։ "Սկզբից, երբ դուք այդ բաներին ձեռք տուիք եւ մեզ ստիպում էիք մի այնպիսի հաւատք ընդունել, որ ոչ մենք գիտենք եւ ոչ մեր նախնիքը, շատ անգամ բողոքեցինք ձեզ, թէ անկարելի է մեզ մի այնպիսի հաւատք պաշտել, որը մեր նախնիքը չպաշտեցին, որը մեր մտքին էլ ծանր է երեւում եւ արհամարհանք է. եւ դուք մեզ լսել չուզեցիք ու ձեր բռնաւոր կամ-

քին համաձայն ստիպեցիք, յանձն առնել տուիք մի հաւատ, որը վախից ստիպուած բերանով պատուեցինք սուտանց, իսկ սրտով գարշելի համարեցինք եւ ատում էինք. ՛այդ միջոցին՝ եւ մոքերս դրինք մի հնարքով ազատուիլ եւ գնալ մեր երկիրը, թողնել մեր երկիրը, եւ կնոջով զաւակներով գնալ օտար երկիր. այս բանն ամէնից յառաջ ձեր ծառան Վարդանն արաւ. (եւ վկայ են իմ ազածներիս Պարսիկ մեծամեծներից միքանիսը, որոնք այժմ ողջ են եւ այստեղ ձեզ մօտ են.) Վարդանն առաւ լոկ իւր կինն եւ ընտանիքը, ձեր ահիցը փախաւ գնաց Յունաց երկիրը: Այս բանը որ իմացաւ այդ Սիւնեաց տէր Վասակը՝ շուտով դեսպաններ ղրկեց աւագտանուտէրներից եւ սուրբ քահանաներից. եւ մեր օրէնքի սուրբ գիրքն էլ իւր մատանովը կնքած, որով եւ երդուած էին, ղրկեց նորան. նոցա հետ ինձ էլ ղրկեց. եւ նամակի մէջն էլ այսպէս գրեց. “ինչո՞ւ փախար եւ ի՞նչից ես վախենում. դարձիր. նամակ կըգրենք կայսերն եւ նա կը հաւատայ, որ այսպիսի մի մեծ երկիր կամաւ նորան կըհպատակեցնենք, ուրախութեամբ յանձնառու կըլինի եւ զօրք կուտայ մեզ. մենք էլ կըմիանանք ու անդադար կընեղացնենք Արեաց տիրոջն եւ Արիներին. իսկ եթէ կայսրը ուրիշ կերպ մտածելու լինի, ես որ Վրաց մարզպան էի եւ Աղուանքի դուռն իմ ձեռս էր, Հոնաց (Յունաց*) շատ զօրագլուխներ ինձ հետ բարեկամացան, երդումով խօսք տուին ՛բարեկամութեան՝ եւ այսօր էլ նոյն բարեկամութեամբ գնալ գալ ունին ինձ մօտ. Հայոց երկրի հարկերն էլ ինձ մօտ են. գործակալներն իմ ձեռիս են. ու-

* տես բնագիր:

րիշ շատ բաներ էլ, որ Պարսիկ գործակալներից հանել էի, իմ գանձերիս մէջն են. ՙեթէ այսքան բանից՚ մէկ մասը հոնաց ղրկելու լինիմ, նոցա միջից այնքան հոն ՙզօրք՚ հանել կուտամ, որ Պարսիկների հողն էլ բաւական չի լինիր նոցա աւարի համար։„ Եւ զօռով յետ դարձնել տուեց Վարդանին, որն արդէն մօտեցել էր այն օտար իշխաններին, որոնք ձեր իշխանութեան տակ չեն։ |Այն նամակը, որ Վարդանին գրեց ՙՎասակ՚ ողջ է եւ կնիքն այստեղ մեզ մօտ է.|։ Իւր որդւոց համար էլ ասում էր, թէ "Հայաստանում ինչ Պարսիկ որ կայ՝ բոլորին կըկապեմ ամուր բերդերը կըդնեմ, մինչեւ որ թագաւորն իմ որդիքս ազատէ։„ Միքանի Պարսիկների առ ժամանակ կապեց եւ երբ ինքը խաբեբայութեամբ մեր կորստեան խորհուրդը գլուխ հանեց, ապա դուրս թողեց նոցա։ Նամակներ գրեց եւ Վահան Ամատունուն ու միքանի ուրիշ նախարարների ամէն ցեղերից Յունաստան ղրկեց. Վարդանին ու մեզ էլ զօրքով Աղուանք ղրկեց. ինքն անզգայաբար մեզ խաբեց այս փորձանքի մէջ ձգեց ու ձեր այնպիսի պիտանի ծառային ՙՎարդանին՚ սպանեց եւ այնչափ Հայերի ու Պարսիկների բազմութեան կոտորուելուն պատճառ եղաւ։ Այժմ դուք հրամայեցէք տեսնել բոլոր նամակները, որ նա գրել ու կնքել է. եւ ինչոր ձեր Արիներիդ կամքն է, կատարեցէ՛ք մեր գլխին. որովհետեւ ինչտեղ որ գրած ու կնքած բաներ կան, այնտեղ աւելորդ խօսքեր ու շատախօսութիւն պէտք չեն։„

Եւ Պարսից թագաւորն ու բոլոր մեծամեծները տեսնելով նամակները, որ Վասակ գրած էր,

Եղիշէ· գլխու ընկան եւ սաստիկ զարմացան։ ՚Նա մեղաւոր դուրս եկաւ ուրացեալների կողմը. որովհետեւ ‘բաց ի այն’ ցոյց էին տալիս Վասակի թղթերը, որ միաբանին նորա հետ ապստամբելու համար ‘նաեւ’ Վրացիք եւ Աղուանք. ‘ցոյց տուին’ մի հրովարտակ Յունաց թագաւորին գրած եւ մի թուղթ էլ Անտիոքոս մեծ սպարապետին գրած. այս բոլոր թղթերի վերայ էլ Վասակի վաւերական մատանին ‘կնիքը’ կար դրած։

Խառն էր նա ‘Վասակ’ եւ մոգերի սպանման ‘գործի’ մէջ Ջարեհաւանում։ Մուշկան Նիւսալաւուրտն էլ նորա վերայ գրած գանգատի մասին յիշեց. նաեւ ժողովրդի հարկերի մէջն էլ նորա ‘Վասակի’ գողութիւնը գտան։ Մոգերից ու փշտիպաններից շատերն ասացին թէ “այն մեծ վնասը, որ թագաւորական զօրքին հասաւ եւ Հայոց երկրի աւերումը եւ թագաւորական հարկերի կորչելը՝ այդ ամէն վնասների առաջնորդն ու պատճառն այդ մարդն ‘Վասակ’ եղաւ։„ Ազգականներն ցոյց տուին, յայտնեցին նորա խարդախութիւններն ընկերների ու թագաւորի առաջ։ Որովհետեւ նա իրաւունքով չէր տիրել Սիւնեաց երկրին, այլ նենգութեամբ սպանել տուեց իւր հօրեղբօրը Վաղինակին։

Բերին եւ Ռշտունեաց Սահակ եպիսկոպոսին, սուրբ Յովսէփին եւ Ղեւոնդ երէցին։ Սահակ եպիսկոպոսն ասաց. “Դուքա, որոնք յայտնի կերպով ուրացել են ճշմարիտ Աստծուն, սատանայի բուն են ինչպէս այդ Վասակը։ Որովհետեւ յառաջ երբ դա քրիստոնէութեան անունն երեսանց էր կրում, կարծում էր թէ կարող է բոլոր իւր չարութիւնը թագցնել ձեր տէրութեան առաջ. եւ բոլոր իւր

խաբեբայութիւնները քրիստոնէութեամբ էր ծած-
կում։ Դուք դորան իւր արժանաւորութիւնից աւել
պատուեցիք, Վրաց երկիրը դորան հաւատացիք.
մէկ հարցրէք թէ գո՞հ են դորանից. Սիւնեաց իշ-
խանութիւնը ‘տէրութիւնը’ դորան տուիք. դորա
ազգականներիցը լսեցէք ահա, թէ ինչ են խօսում
դորա վերայ. Հայոց մարզպան նշանակեցիք դորան.
դա մէկ տարուայ մէջ բոլոր երկիրը կորցրեց։ Դա
ձեզ սուտ յուսով ուրախացրեց ‘խաբեց’. ոչ դուք,
ոչ դա եւ ոչ էլ նոքա, որ ձեզանից յետոյ գալու
են, այն բանը ‘յոյսը’ մեր մէջ տեսնել չէք կարող.
ուրեմն վարուէք դորա հետ ինչպէս որ կամենաք
մեզ էլ ինչո՞ւ էք հարցնում։„

Այն ժամանակ յառաջ կանչեց Թագաւորը Ղազար.
Սիւնեաց Վասակ իշխանին. սկսեց խօսել նորա հետ
եւ ասել. “դէհ ասա ինձ այժմ, ի՞նչ էիր անցնում
մտքիցդ, որ համարձակեցար սիրտ տալ մարդիկնե-
րին խօսքով, ինչպէս քու գրածդ նամակներից
ստոյգը իմացանք. երդմնցնելով քաջ Վարդանին եւ
նորա ընկերներին՝ նամակներով խաբեցիր. համար-
ձակեցուցիր նորան զօրքով Աղուանք երթալ Պար-
սից գումարտակի [2] վերայ. եւ պատճառ եղար իմ
այնչափ ծառաներիս՝ թէ՛ Արիների եւ թէ՛ Անարի-
ների կոտորուելուն. ըստ որում այնպիսի մի ծառայ,
ինչպէս Վարդանն էր, թէ՛ Յունաց կայսրը եւ թէ՛
Հոնաց թագաւորն աշխատում էին իմ ձեռքիցս
խլել զօռով, բայց ես բոլոր զօրութեամբս հակա-
ռակում էի եւ չէի տալիս. եւ այժմ դու քու ձե-
ռովդ այնպիսի ծառային սպանեցիր եւ մի մեծ ու
պիտանի երկիր կորցրիր։ Եւ համարձակեցար լր-
բաբար մեզ մօտ գալ եւ մեր երեսը տեսնել ‘կար-

ծելով թէ՝ մենք անտեղեակ ենք քո նենգաւոր գործերից։ Բայց այս մէկը լաւ իմացիր, որ այսուհետեւ Սիւնեաց տէր չես. եւ հրամայեցինք, որ իմ Հայոց երկրիս հարկերը, նոյնպէս եւ այն սպանած Պարսիկների հարկերն ու կարասիքը, որ խլած էիր, քու տանից ու քու որդիքներից պահանջեն, մինչեւ որ բոլորը վճարուի։„

Ողորմելի ուխտադրուժ Վասակն ուզում էր խօսել եւ պատասխան տալ, ըստ որում որքանեւիցէ օգուտներ բերած էր Պարսիկներին. եւ աշխատում էր այն միջոցին ցոյց տալ. բայց այն էլ նորան օգնող բան չէր, այլ ընդհակառակն աւելի մեղադրանքի
Եղիշէ. պատճառ։ ‘Այնպէս որ’ ’պապանձեցաւ ամենեւին եւ ճշմարիտ խօսք չգտնուաւ նորա բերանումը։ ‘Թագաւորը’ մահուան վճիռ դրեց նորա վերայ. եկաւ դահճապետը բոլոր մեծամեծների առաջ մերկացուց նորանից բոլոր պատուի նշանները, որ ունէր թագաւորից, եւ հագցուց նորան մահապարտի հագուստ. ձեռն ու ոտը կապեցին, կնիկ մարդու պէս մատակ ձիու ‘մատեանի’ վերայ նստեցուցին եւ տարան դրին այն զնդանը, որտեղ բոլոր մահապարտ-
Ղազար. ներն էին գտնուում։ ’Նոյն օրը նորա թշնամին ուրացող Վարազվաղանը Սիւնեաց վերայ տանուտէր կարգուաւ. Վարազվաղանը Սիւնեաց երկրում շատ մոխրանոցներ շինեց՝ իւր տունը ‘ցեղը’ գայթակղեցնելու մտքով. եւ երկար ժամանակ տանջուելով դեւից, դառն մահով կնքեց իւր կեանքը։

Եղիշէ. Հայոց նախարարներն ու սուրբ եպիսկոպոսները քահանաների հետ միասին զարմացած էին այնպիսի մեծ յայտնութեան ‘այսինքն Վասակի անկման’ վերայ։ Մխիթարում էին իրարու եւ ասում. “ամէն

տեսակ առաքինութիւնների մէջ գլխաւորն համբերութիւնն է, եւ երկնաւոր իմաստութիւնն է կատարեալ աստուածպաշտութիւն. չարչարանքը քանի՛ երկար քաշէ, այնքան կ՚աւելանայ եւ վարձատրութիւնը կամ պարգեւը. լաւ է Աստծու վերայ յոյս դնել քանթէ մարդոց. լաւ է Աստծուն ապաւինել քանթէ իշխաններին:,, Ուրացեալ Վասակը նայում էր սուրբ կապեալների միաբանութեան վերայ եւ կարօտ էր մնում. բայց ո՛չոք չխառնեց նորան նոցա մէջ: Ամէն օր ինչպէս մի գէշ ձգում էին հրապարակի վերայ, ծաղրում էին, խայտառակում էին բոլոր կարաւանի առաջեւը. այնպէս ձաղեցին նորան աղքատութեամբ, որ ծառաները գնում էին հաց մուրալու եւ բերում տալիս էին նորան: Հօրական, պապական եւ իւր սեփական կարողութիւնը եւ կանացի զարդերն անգամ տուեց, տուգանք քաշեց եւ էլի չկարողացաւ բոլոր թագաւորական պարտքերը վճարել: Երբ այսպէս ամէն կողմից մնասուաւ, այնտեղ հէնց բանտումը վատ ցաւերի մէջ էլ ընկաւ. նորա վերայիցը մահուան հոտ փչեց եւ հեռու փախան նորանից մինչեւ անգամ իւր ձեռնասուն ծառաները:

Միքանի տարի ՙբանտում՚ մնալով Վասակն Ղազար.
ամէն օր, ամէն ժամ ինքն իւր ձեռքերի թաթերը բանալով եւ երեսին ծեծելով ասում էր, "Ահա՛ ա՛ռ այս հարուածները, որ բերեց սուրբ աւետարանի ուխտանենգութիւնն եւ սուրբ Վարդան Մամիկոնեանի եւ ուրիշների նահատակութեան արդար արիւնը. նոքա յաւիտենական կեանքը ժառանգեցին, բարի եւ ազգից ազգ անմոռանալի անուն գտան. իսկ դու, մեղաւոր անձն իմ, ապրում ես, որ

խղճահարութեամբ եւ ցաւերով քու կեանքիդ սակաւ օրերն անցնես. եւ պատրաստուած ես մըշտնջենաւոր եւ անանց գեհենի համար։„ Այսպիսի հառաչանաց եւ լացի խօսքեր ‘խօսում է եղել նա’ մինչեւ իւր մահուան օրը, ‘ինչպէս որ’ պատմեցին մեզ նորա արժանահաւատ սպասաւորները։ Եւ մեռաւ նա այնտեղ Պարսից երկրում։

Եղիշէ. ’Եւ այն մարդը, որ կամենում էր Հայաստանին թագաւոր դառնալ մեղքով, նորա գերեզմանի տեղն անգամ չերեւցաւ. ըստ որում ինչպէս շուն մեռաւ եւ ինչպէս գէշ դուրս ձգուաւ։ Ջնջուաւ նորա անունը սրբերի շարքում. նորա յիշատակը չկատարուաւ եկեղեցու մէջ սուրբ սեղանի առաջ։ Ո՛չ մի վատ բան չթողեց, որ չկատարէր իւր կեանքումը, եւ մեծամեծ վատութիւններից էլ բան չմնաց, որ նորա գլխին չգար մահուան ժամանակ։ Այս յիշատակարանն էլ գրեցինք նորա մեղքերը վատաբանելու մտքով, որպէսզի ամենայն մարդ, որ այս բանն իմանայ, նորա գործերին ցանկացօղ չլինի։

# ԳԼՈՒԽ ԺԶ.

## Քահանաներն ու նախարարները:

*Քահանաներն եւ նախարարները բանտարկուած մնում են Գարակստանում: Յազկերտը Քուշանաց դէմ անյաջող պատերազմ ունենալով՝ հրամայեց քահանաներին սպանել. (453):*

«Ամենայն մարդ յանձն իւր եկեղեցի էր. նոյն ինքն քահանայ»:

Իսկ սուրբ քահանաներին եւ Հայոց նախարարներից էլ երեսունը մէկ մարդ հրամայեց Յազկերտ կապած պահել այնտեղ Վրկանում:[1] Եւ իւր թագաւորութեան տասն եւ վեցերորդ տարին բոլոր իւր բազմութեամբն ելաւ գնաց Քուշանաց վերայ պատերազմ: Հրամայեց Հայ կապեալներին էլ՝ քահանաներին եւ նախարարներին Վրկանից տանել իւր հետ: Երբոր եկան Ապար աշխարհի Նիւշապուհ քաղաքը,[2] հրամայեց, որ Հայ կապեալներին պահեն այդ քաղաքի բերդում. բայց երկու քահանայի՝ տէր Սամուէլին եւ Աբրահամին հրամայեց իրենն հետ առնել. նոցա խիստ կապանքներով եւ ծեծով միշտ նեղեցնել էր տալիս. եւ դորանով ահ ու երկիւղ էր ուզում ձգել իւր կարաւանում գտնուող քրիստոնեաների սրտերը: Ղազար.

Խայլնդուրների թագաւորական ցեղից մէկ Հոն՝ Բէլ անունով՝ թագուն համակրում էր քրիստոնեաներին եւ սիրով յօժարութեամբ սովորում էր նոցանից ճշմարտութիւնը. կամքով մտել էր թագաւորի ՙՅազկերտի՚ իշխանութեան տակ, եւ սաստիկ շատ նեղանում էր, երբ տեսնում էր սրբերին չարչարուած: Բայց որ էլ ոչինչ չէր գալիս ձեռքից, փախաւ ընկաւ Քուշանաց թագաւորի մօտ եւ պատ- Եղիշէ.

մէջ նորան բոլոր նեղութեան անցքերն Հայաստանի գլխին պատահած. ցոյց տուեց նորան Արեաց երկրի երկպառակութիւնն ու տրտունջը։

Քուշանաց թագաւորը երբոր թէլից ստուգեց, թէ Ցազկերտը Քուշանաց վերայ էր գալիս, շուտով զօրք հաւաքեց, շատ վնասներ տուեց թագաւորական զօրքերին, ասպատակով հասաւ աւերեց շատ գաւառներ ու ինքը ողջառողջ դարձաւ իւր երկիրը։

Ղազար. Եւ ‘Ցազկերտ’ միանգամայն կոտրուած ամօթալից դարձաւ յետ. որովհետեւ չէ թէ ճակատ առ ճակատ պատերազմ արին թշնամիները Պարսից զօրքի հետ, այլ անակնունելի կերպով ընկնում էին առանձին առանձին թեւերի վերայ, սրի էին հանում շատերին, եւ իրենք կրկին աներեւոյթ լինում. եւ այսպէս շատ օրեր տեւեց ու սաստիկ վնաս հասաւ Պարսից զօրքին։

Ցազկերտը տեսնելով իւր այսպիսի խայտառակութիւնը, մտքի մէջ ընկաւ եւ ուզում էր իմանալ թէ ի՞նչ պատճառով պատահեցաւ նորան այնպիսի ծանր խայտառակութիւն. եւ շուարանքի մէջ լինելով՝ պատճառը մէկ իւր զօրքի անմիաբանութեան վերայ էր ձգում, մէկ էլ մոգերի ծուլութեան վրայ՝ թէ ուրեմն նոքա ‘մոգերը’ չեն կարողացել ընծաներով եւ զոհերով ինչպէս պէտքն է քաղցրացնել աստուածների սիրտը։

Եղիշէ. Իսկ մեծ հազարապետը ‘Միհրներսէհ’ սաստիկ վախի մէջ էր, որովհետեւ ինքն էր բոլոր վնասների պատճառը։ Սկսեց մոգպետին եւ մոգերին խրատ տալ. եւ նոքա ասացին թագաւորին. «Քա՛ջ թագաւոր, մենք մեր օրէնքի վարդապետութիւնից գիտենք, որ մարդկանցից ո՛չ ոք կարող չէ քու մեծ զօրութեանդ

առաջ դիմանալ: Թող քու մտքիցդ ուրիշ բան Ղազար. չանցնի այս վատ դէպքերի համար, որ պատահեցան աստուածների բարկութիւնից այն աստուածասպան հայ քահանաների պատճառով. ընտրում եթէ մարդասպան եղած լինէին նոքա, շատ ծանր կըլինէր եւ մեղադրութեան արժանի նոցա գործը. ուր մնաց որ նոքա համարձակեցան աստուածներին ձեռք տալ. եւ դեռ կեանք ու արեւ են տեսնում նոքա. իրաւոր աստուածները մեզ պատժում եւ հարուածում են անխնայ:,,

Թագաւորը նոցա սուտ պատճառն ստոյգ կարծելով, հրաման տուեց՝ իւր հետի քահանաներին՝ սուրբ Սամուէլ երէցին եւ սուրբ Աբրահամ սարկաւագին մի աներեւոյթ տեղ տանել կարաւանից շատ հեռու եւ այնտեղ գլուխները կտրել. ‘կարաւանից շատ հեռու տանել’ այնպատճառով՝ որ չլինի թէ քրիստոնեաներից մէկը գտնի նոցա ոսկորները եւ պատուեն: Բայց հրամայեց, որ նոցա սպանելուց յառաջ սուրբ Սամուէլի աջ ձեռը կտրեն եւ դնեն Աբրահամի ձեռի մէջ. նոյնպէս եւ սուրբ Աբրահամի աջ ձեռը կտրեն եւ դնեն Սամուէլի ձեռի մէջ. այնպատճառով, ասում է, որ նոքա համարձակեցան իրենց ձեռքը պատուական կրակին ձգել եւ սպանել ‘նորան’: Սորանից յետոյ եւ կտրել սրով նոցա գլուխները: Եւ այս կերպ նահատակուան յիշեալ սրբերը Հրոտից ամսի եօթերորդ օրը Վարդգէս գաւառի մէջ: Սորանից յետոյ հրամայեց դեսպաններ ղրկել շուտով Բասենի եպիսկոպոս Երանելի Թաթիկի համար, որը բանտի մէջն էր Ասորեստանում, եւ հրաման տուեց՝ այնտեղ սպանեն եւ անհետացնեն սրբի մարմինը, որ

քրիստոնեաները չգտնին։ Մոգերն ուրախութեամբ կատարելով Թագաւորի հրամանը՝ յառաջ մի քանի օր քերեցին սրբի մարմինը ոսկորներից ՛հանեցին՛, եւ ապա սրով կտրեցին գլուխը։ Միւս քաքանների համար էլ հրաման տուեց Վեհդենշապուհ ամբարապետին, որ առնի իւր հետ Ջնիկան մոգպետին եւ Մովան անդերձապետին եւ գնայ հանէ բանտիցն այն սրբերին ու տանի նոցա քաղաքից հեռու մի անկոխ անապատ տեղ ու ինչպէս կամենայ այնպէս զրկէ նոցա այնտեղ կեանքից։ Բայց սաստիկ պատուէր տուեց եւ զգուշացրեց Թագաւորը. չլինի թէ մէկին իմաց տաք, ասաց, ո՛չ ձեր առնելն ու գնալը քաղաքից, ո՛չ այն ճանապարհը՝ որտեղից պիտի տանիք, ո՛չ նոցա մահուան տեղը՝ ուրոր պիտի սպանէք նոցա։ Որովհետեւ ստոյգ լսած եմ, ասաց Յազկերտ, որ քիստոնեաներն ասում են թէ այն մարդոց ոսկորներից, որոնք իրենց Աստուծոյ համար են մեռնում, ո՛վ որ իւր տան մէջը պահէ, այն տանը վատ կամ վտանգաւոր բան չի մօտենար, ատեննների մէջ մարդուս յաջողութիւն կուտան եւ իմաստութիւն եւ քաջութիւն. այլ եւ այն հաւատարիմ մարդիկները, որոնք առաջ նոցա մոլար աղանդումն էին եւ յետոյ մեր լուսաւոր եւ ճշմարիտ կրօնն ընդունեցին, մեզ ասել են, թէ նոցա կանայք, աղջիկներն եւ որդիք չեն ափսոսար վզաներիցը հանել ոսկի եւ արծաթէ զարդերը կամ թանկագին մարգարտէ վզնոցները կամ շարաններն եւ տալ ու գնել գոնէ մի փշրանք այն ոսկորներից։„

# ԳԼՈՒԽ ԺԷ.

## Մ ո գ պ ե տ:

*Այր աշխարհի դենպետ իշխանը բանտարկեալ քահանաների շնորհիւ քրիստոնեայ է դառնում եւ Յազկերտի հրամանով տարաշխարհ է լինում։*

«Որպէս մեծ է հոգի քան զմարմին, այնպէս մեծ է տեսանողութիւն մտաց քան զմարմնոյ։»
ԵՂԻՇԷ։

Այր աշխարհի դենպետ [1] իշխանը բոլոր գիտուններից աւելի տեղեակ էր զրադաշտական վարդապետութեանը. եւ որ մեծ պարծանք էին համարում ‘Պարսիկները’, համակդեն պատուանուննն եւս ունէր. գիտէր նաեւ ամպարտքաշը, բոզպայիտը, պահլաւիկը եւ պարսկադենը. ըստ որում այս հինգ հաւատի ուսմունքն (զրադաշտական, ամպարտքաշ, բոզպայիտ, պահլաւիկ, պարսկադեն) են, որ գրաւած ունեն ամբողջ մոգութեան օրէնքը, բայց կայ եւ մէկ ուրիշն էլ, որ մոգպետ [2] են ասում։ Եղիշէ.

Նա ‘դենպետը’ բաժանեց քահանաներին նախարարներից, ձգեց նոցա մի մութն եւ թաց գետնատուն եւ հրամայեց վեց մարդուն մէկ մէկ անգամ ամէն օր երկու քաշկէն ‘գարի հաց’ տան եւ դորակ ու կէս ջուր։ Քառասուն օր այս կերպ նեղացնում էր նոցա, եւ չլսեց նոցանից մի թուլութեան խօսք անգամ։ Մտքէն անցաւ թէ գուցէ մէկը ծածուկ նոցա կերակուր է տալիս։ Ինքը գնաց բանտի երդիկն ու դուռը կնքեց եւ նշանակած կերակուրն էլ իւր հաւատարիմներին էր տալիս նոցա տանելու։ Այս էլ տասնը հինգ օր արաւ. երանելիները համբերութեամբ քաշում էին չարչարանքը։ Պահա-

պանները զարմացած լինելով նոցա առողջութեան վերայ, պատմեցին մոգպետին 'դենպետին' եւ ասացին. “այն մարդիկն առանց մեծ զօրութեան չեն. որովհետեւ մեր միտքը չի գալիս, որ կապեալներից մէկը կացած լինէր այդ տան մէջ՝ գոնէ մէկ ամիս. ուրեմն, ասում ենք քեզ, եթէ հրամայած է քեզ, որ նոցա մեռցնես կամ սպանես, այդ դու գիտես. եթէ ոչ՝ քեզ յանձնուած է պահել նոցա, այլ ոչ նեղացնել:„

Մոգպետն ինքը կէս գիշերին գնաց բանտի երդիկը, նայեց տեսաւ որ իւրաքանչիւր կապեալի անձը անշիջանելի կանթեղի պէս վառուած բոցբոքում է: Եւ սրբերն իւրեանց խշտեակներից ելան եւ սովորական աղօթքի կայնան: Մոգպետի սիրտն ահ ընկաւ եւ ասում է. “կապեալներից ո՞ր մէկին այսպիսի հրաշք պատահած է. ես ոչ մէկին էլ չեմ ճանաչում.„ եւ կեսամեռ եղաւ տանիքի վերայ մնաց մինչեւ առաւօտ: Կանչեց պահապաններին եւ ասաց. “հանեցէք կապեալներին եւ դրէք մի աւելի ցամաք տեղ վերնատան մէջ, ինչպէս որ դուք ասացիք:„ Մոգպետն ելաւ գնաց նոցա մօտ միայնակ եւ անձայն, եւ երբ մի ծակից դէպի ներս էր նայում, տեսաւ առաջուայ պէս մի տեսիլք: Մտաւ սրբերի մէջն եւ պատմեց իւր երկու անգամ տեսածը:

Ղեւոնդ երէցն ասում է:“ Աստուած լոյս ծագեց այսօր քու խաւարած մտքիդ մէջ եւ քու կուրացած հոգուդ աչքերը բացուան:„ Եւ ոտքի ելան բոլորն ու ասացին. “Գոհանում ենք քեզանից, Աստուած, որ այսօր յայտնի եղաւ քու զօրութիւնդ այս խաւարազգեստ ազգի մէջ:„ Նա էլ 'մոգպետը' սկսեց առանձին իւր համար ասել. “Տէր, մի՛ նայեր

իմ երկարամեայ չարութեանս վերայ. սատանան, որ ինձանով սիրտ առած պարծենում էր, ինձանով կոտրուած թող ամաչէ իւր աշակերտների մէջ։„ Այսպէս հանդարտեցան եւ քուն եղան ամէնքը. իսկ Նա ոտքի կայնած աղօթք էր անում. եւ երբ աչքերը երդիկին տնկած երկինք էր նայում, յանկարծակի երեւցաւ Նորան լուսեղէն սանդուղք, որ երկրից երկինք էր դրած եւ գունդգունդ զօրքեր վեր էին բարձրանում. եւ բոլորի տեսիլն էլ փառաւոր էր ու զարմանալի ինչպէս հրեշտակի տեսքը։ Տեսաւ նաեւ Վարդանին, Արտակին, Խորէնին, որոնք ունէին ձեռքերում իննը պսակ, խօսում էին իրար հետ ու ասում.„ ահա եկաւ հասաւ ժամանակը, որ սոքա էլ մեր գունդերի մէջ խառնուին, մենք էլ սոցա էինք սպասում, ում էլ որ չէինք սպասում" նա էլ եկաւ խառնուաւ ‘նոցա մէջ’ ինչպէս Քրիստոսի զինուորներից մէկը։„ Այս բանն երեք անգամ երեւեցաւ։ Զէն տուեց սրբերին քնից, եւ պատմեց նոցա ամէն բան։ Որովհետեւ ինքն այն երկրի մոգպետ իշխանն էր, առաւօտեան համարձակութեամբ հանեց ‘նոցա բանտից’ եւ տարաւ իւր ապարանքը. լուաց ու սրբել տուեց նոցա, շինեց իւր տան մէջ աւազան եւ ընդունեց նոցանից սուրբ մկրտութիւնը. ճաշակեց Քրիստոսի կենարար մարմինն ու արիւնը. նոցա առաջ բացեց կերակրի սեղան, դիշերը ծածուկ հրաւիրեց եւ այն նախարարներին, որոնք նոյն քաղաքի մէջ բանտն էին դրած, եւ շատ մեծ ծախսեր արաւ։ Սեղանի ժամանակ երբ ամէնքը կերակուրը պրծան, ոտքի ելաւ սուրբ Յովսէփն ու սկսեց ասել. "Ուրախ եղէք ամէնքդ Քրիստոսի անունով. ըստորում վաղն այս ժամանակ մենք մա-

ռացած կըլլինինք բոլոր մեր քաշած նեղութիւններն ու չարչարանքը։,, Այս որ ասաց, բոլոր բազմականները ոտքի ելան եւ գոհացան։ Նոյն ժամին մեծ խորհուրդ եղաւ նոցա մէջ թէ ի՞նչպէս կարող են ապրեցնել մոգպետին։

Առաւօտեան դահիճներն եկան բանտի դուռն եւ տեսան, որ մոգպետը նստած է նոցա ‘բանտարկեալների’ մէջ եւ լսում է նոցանից եւ սիրտ է տալիս անգամ նոցա, որ չվախենան մահից։ Գնացին եւ պատմեցին Դենշապուհին, որին յանձնել էր թագաւորը սրբերին չարչարելու։ Դենշապուհն հրամայեց, որ հանեն բոլորին բանտից կապած, եւ հեռու տարաւ այն քաղաքից. եւ ծածուկ խօսեցաւ մոգպետի հետ թէ ի՞նչ է նորա կապուած լինելու պատճառը. պատասխան տուեց նա եւ ասաց. “մի՛ խօսիր ինձ հետ թագուն, բաց հարցո՛ւր ինձ եւ ես կըպատմեմ քեզ, որ Աստծու մեծամեծ գործերը տեսայ ‘հասկացայ’։,, Երբ լսեց նորանից ամէն բան եւ ստուգեց ‘Դենշապուհ’ նորա միաբանելու մասին, շտապեց գնաց թագաւորին պատմեց գաղտուկ ամէն բան։ Թագաւորը պատասխան տուեց եւ ասաց Դենշապուհին. “Մարդ թո՛ղ չլսէ քեզանից այդ բանը, մանաւանդ այն մեծ տեսիլքի մասին. որովհետեւ մի չնչին մարդ չէ նոցա հաւատքին դիմողը, այլ մի համակդեն ամբողջ վերին երկիրների մէջ երեւելի։ ‘Գնա՛’ յառաջ կանչէ՛ քու առաջդ այն չարացած ալեւորին. եթէ սիրով համաձայնի, մեծարէ՛ նորան, իսկ եթէ չկամենայ միտք դարձնել իմ խօսքերիս, նորա վերայ շատ դանգատներ հանել տուր ժողովրդի կողմից որպէս զի թագաւորական գործերի մէջ վնասակար ճանաչուի, եւ աքսորէ՛

Նորան կուրանի եւ Մակուրանի կողմերը. եւ այնտեղ մի վիրապի մէջ թող ընկած մնայ ու գտնի իւր մահը։ Եւ ուրիշ հաւատ ունեցողներին շուտով զրկէ՛ աշխարհային կեանքից, ըստորում եթէ ճարտար մոգպետին այդպէս շուտ քաշեցին իրենց կողմը, տգէտ մարդիկն ի՞նչպէս կարողանան պիտի նոցա առաջը կենալ։

Դենշապուհը կատարեց նորա վերայ թագաւորի հրամանը. եւ քշեցին մոգպետին դէպ ի հեռաւոր օտարութիւն։

# ԳԼՈՒԽ ԺԸ.

## Քահանաների հրաժարականը:

*Քահանաների հրաժարումը բանտարկեալ նախարարների մօտից եւ դէպի իւրեանց մարտիրոսութեան տեղը տարուիլը։*

*"Ոչ եթէ ակնկալութիւն ինչ էր բառ մարմնաւոր կենացն, այլ հնարս խնդրէին ամենայն աշխարհին շինութեան։"*

Ղազար.

*Վեհդենշապուհ ՝Նոյն եւ Դենշապուհ՝ մտաւ Նիւշապուհի բերդը, սուտսուտ բաներ էր խօսում եւ աւետիք էր տալիս նենգութեամբ՝ թէ "Արքայից արքան հրաման տուեց ինձ, որ այդ Հայ երէցներին որ այստեղ բանտում են՝ իրենց երկիրն արձակեմ. միւս իշխանների համար էլ թագաւորը խօսք տուեց, որ երբ ես գամ՝ նոցա էլ կ'արձակեմ կապանքից։*

*Այս որ լսեց շահաստանի ժողովուրդը՝ կարծեց որ ճշմարիտ է. բայց սուրբ քահանաներն երբ իմացան, իսկոյն հասկացան որ իրենց նահատակութեան բարի ժամն հասած է։ Սկսեցին խօսել Հայոց նախարարների հետ, որոնք կապուած էին, եւ ասում են. "Թէպէտեւ Վեհդենշապուհն ուզում էր ճշմարիտը թագցնել, չկարողացաւ. որովհետեւ մեր երկուսի գործերն այդպէս եւ պէտք է վերջանան. դուք կարծես թէ Քրիստոսի ողորմութեամբ պիտի արձակուիք ձեր կապանքից, մենք էլ Հոգւոյն սրբոյ զօրութեամբ գնալու ենք դէպի մեր բնիկ աշխարհքն ու բոլորիս Արարիչը։"*

*Դահիճներից մէկը, որ սիրով ընդունում էր Հայոց կապեալ նախարարներին, ճիշտը լսեց երանելի Խուժիկից, եկաւ յայտնեց թէ ինչպէս թագաւորն հրամայել է քահանաներին սպանելու։*

Այս որ ստուգեցին երանելի Նախարարները՝ սաստիկ լաց եղան, իսկ սրբերը սիրտ առան եւ զուարճացան, եւ Աստծուն փառք տալով իսկոյն երեկոյեան աղօթքի պատրաստուան:

Որովհետեւ ամբարակապետի ՙԴենշապուհի՚ շահաստան գալը այնքան կանուխ չէր, այդ պատճառով հարկաւոր եղաւ գիշերը հէնց քաղաքումը մնալ:

Սրբերն իրիկուայ աղօթքը վերջացնելուց յետոյ մի փոքր բան կերան եւ ընթրիքից ելնելով էլի աղօթք արին: Հրամայեցին, որ ամէն մարդ իւր կարգին համեմատ աղօթքի եւ տքնութեան պարապի այն գիշեր ու ասացին բոլորին. "Թէ որ դուք այսօր մէկին Հայաստան ճանապարհ ձգելու լինէիք, չէ՞ որ ձեր ամէնմէկ սիրելուն բարեւագրեր, ուրախալից պատգամներ ՙխաբար՚ կըղրկէիք: Նաեւ Աստծուն կ՚աղաչէիք, ՙոր՚ Նոքա ողջառողջ հասնին իրենց տները եւ ձեր դրած պատուէրները կատարեն. ահա մենք այժմ ճանապարհ ենք ընկնում ձեր միջից դէպի Աստուած. ամէնքս էլ խնդրած ենք մեր փրկիչ Քրիստոսից եւ սուրբ Հոգուց, որ ամէնքս էլ արժանի լինինք երկնային ճանապարհին: Մեր բազումողորմ Արարչի գութը թող ազատութիւն տայ ձեզ այդ երեւելի կապանքներից, որոնցով դուք կապուած էք, եւ թող արժանի անէ ձեզ Աստուած, տեսնիք ձեր երկիրն եւ ձեր ընտանիքը, ձեր ամէնիդ ոսկորները ձեր հայրերի ոսկորների մօտ թող ժողովէ եւ ձեր հոգիներն անվնաս պահէ:,,

Երբ լսեցին Նախարարները սուրբ քահանաներից այնպիսի հրաման, պատասխան տուին եւ ասացին. "Ո՞վ կըցաւի ու տխրութիւն կըզգայ արդեօք

անանցանելի բարութեան մէջ, որտեղից մերժուած են ցաւերն էլ տրտմութիւններն էլ. բայց մենք որ լաց ենք լինում, ՙպատճառն այն է՚ թէ ինչո՞ւ Արարչից անմահ ու անցաւ ստեղծուածներս թշնամութեամբ խաբէութեանը գերի եղած՝ կրկին ընկանք հողի վերայ ցաւի ու մահու ՙիշխանութեան՚ տակ։”

Այսպիսի խօսքեր լսելով սուրբ քահանաները, ձեռքերն երկինք բարձրացուցին եւ ասացին. “Գոհութիւն եւ փառք քեզ, Տէր Աստուած, որ սուրբ առաքեալների քարոզութեան շնորհիւ շատ առաքեալներ ու անթիւ նահատակներ ծնար ՙյառաջ բերիր՚, ինչպէս տէր Գրիգորիոս ՙԼուսաւորչին. սա, որ՚ ուղիղ գործեր էր գործում, մաքուր եւ կենդանի վարդապետութիւն էր սովորեցնում, ամէնքին բարի նախանձով շարժեց եւ յառաջ բերեց վարդապետներ ու անթիւ նահատակներ, շատ ճգնաւորներ եւ անչափ կուսանաց դասեր։ Գոհութիւն եւ փառք քեզ, Փրկիչ, որ սուրբ Գրիգորի հօտի միջից ոչխարներին աւելի բանաւոր ստեղծեցիր քանթէ հովիւներին, եւ աշակերտներին ժողովրդի միջից աւելի գիտուն քանթէ վարդապետներին։ Ահա մենք էլ այժմ սիրտ առած քաջալերուանք մեր հոգեւոր զաւակների շնորհալի խօսքերից. հայրերը որդիներից, վարդապետներն աշակերտներից, քահանաները ժողովրդից։ Եւ ահա սոքա մեզ ուրախ սրտով ճանապարհ են ձգում դէպի քեզ, եւ իրենք մարմնի մէջ մնալով քեզ հետ են, քո մօտ են եւ քեզնով են քաջալերուում. պահէ՛ սոցա քու ամենազօր աջովդ, մխիթարէ սոցա քու ուրախարար խօսքովդ, քու խաղաղութիւնդ պարգեւէ՛ սոցա։”

Եւ այսպէս օրհնեցին երանելի կապեալներին եւ ասացին. “դուք միք տրտմիր, այլ ուրախ եղէք. Նա որ ասաց թէ ձեզ որբ չեմ թողնիր, արձակելու է ձեզ այդ կապանքից, ձեզ ասել կըտայ թէ “քու անուանդ համար մեռնելու ենք ամէն ժամանակ, ինչպէս մորթելու ոչխար համարել են մեզ ՝մարդիկ՚:„ Եւ ամէնքի Տէրն Աստուած թող խորտակէ սատանային ձեր ոտների տակ, ձեզ այս ամբարիշտ ազգի մէջ երեւելի ու պայծառ թող անէ, վերադարձնէ՛ ձեզ ձեր երկիրը, պահէ՛ թող ձեր տները, ժառանգել տայ ձեր զաւակներին ձեր հայրերի վիճակը:„ Եւ բոլոր նախարարները սիրտ առան ՝այս խօսքերից՚ եւ յոյսերն հաստատեցին երկնային Տիրոջ վերայ:

Այդ միջոցին եկան հասան ամբարակապետի ՝Դենշապուհի՚ կողմից շատ դահիճներ վառած ջահերով. հետները կային շատ դարբիններ բերելով իրենց արհեստի գործիքները՝ սալեր, կռաններ, մուրճեր եւ խարտոցներ, որ խարտեն ու կտրեն եւ հանեն երկաթները սրբերի ձեռքերից, ոտներից եւ վզերից, եւ ինչոր չկարողանան խարտոցներով կըտրել, կռաններով ջարդեն սալերի վերայ երկաթէ բեւեռը եւ դուրս քաշեն. որովհետեւ հաստ էին եւ աւելի ծանր քան բոլոր այն երկաթէ շղթաները, որոնցով ուրիշ մահապարտներին կապում էին. եւ այդ յատուկ նոցա համար էին շինել տուել մոգերն, ինչպէս վատ, աշխարհակորոյս եւ աստուածասպան մարդոց համար, մանաւանդ սուրբ Յովսէփ կաթուղիկոսի շղթաներն աւելի հաստ էին եւ անճոռնի:

Սուրբ քահանաները որ տեսան դարբինների

բազմութիւնը խառնվեցան առ հասարակ. որովհետեւ, երբոր մարդիկ ու կանայք, ոսկով, անգին քարերով եւ մարգարիտներով զարդարում կապում են իրենց ձեռքերը, ոտներն ու պարանոցները, եթէ թշնամիներից կամ բռնաւոր իշխաններից մէկն իբրեւ պատիժ կապէր ‘այն զարդերով’ նոցա եւ ստիպէր նոցանով մնալ եւ չհանել դուրս, կըսկսէին լալ եւ չէին կարողանար մի փոքր էլ է դիմանալ. բայց երբ իրենք իրենց են կապում, ծանրութիւն չեն համարում եւ չեն էլ զգում. սակայն այնպէս էլ գեղեցիկ ու փառաւոր եւ ամէն նայողի համար լաւ պիտի չերեւային, ինչպէս Գրիգոր Լուսաւորչի ‘այն’ հայրանման որդիքն երջանիկ ու հրեշտականման էին երեւում իրենց ցանկալի շղթաներով:

Գահիճները մօտեցան եւ երկար ժամանակ աշխատեցին չկարողացան կտրել այն հաստ բեւեռները. յետոյ դրին սալերի վերայ եւ կռաններով ջարդեցին, հազիւ դուրս հանեցին շղթաները սըրբերի մարմնից, ‘ի հարկէ’ սաստիկ վիրաւորելով նոցա մարմինները:

Եւ հրամայեցին Վեհդենշապուհ եւ նորա օգնականները, որ քաղաքի մարդիկներին եւ մոգերից երեւելիներին գիշերը ծածուկ կանչեն ‘իրենց մօտ’ եւ թագաւորի հրամանով ասաց նոցա ‘Դենշապուհ’. “միտք բերէք թագաւորների ահը, նոքա ‘գիտէք որ’ իրաւունք ունին աստուածների նման մարդուս մեռցնելու. եւ ապրեցնելու, պատուելու եւ անարգելու. այս օրուանից սկսած մինչեւ բոլոր արքունի կարաւանի հաւաքուելը եւ Վրկան հասնելը՝ չլինի՛ թէ մի հայ մարդու, որտեղից եւ լինի,

կամ քաղաքիս մէջ կապուած Հայ Նախարարների ծառաներից մէկին, կամ այս որ մենք այժմ դուրս ենք տանում կապեալ քահանաներին, սոցա սպասաւորներից մէկին եւ կամ բնաւ մի որեւիցէ Հայի, որ յանկարծ մէկտեղից եկած լինի այստեղ, թողնիք քաղաքիս դռնից դուրս. ‘եթէ ոչ’ ’տնով տեղով վնասի տակ կ'ընկնիք առանց թողութեան ‘յոյս ունենալու’ եւ դառն մահ կ'ընդունիք թագաւորից։

Եւ շտապեցին այնուհետեւ դուրս հանել սըրբերին։ Այս որ տեսան այն Հայ Նախարարները, որոնք դղեկի մէջ մնալու էին, աներկիւղ համարձակութեամբ բոլոր օտարների ներկայութեանը սուրբ քահանաների ոտներն ընկան, ուրախ սրտով խնդութեամբ համբուրեցին եւ ասացին. “յիշեցէք մեզ ձեր ուրախութեան մէջ, եւ մի՛ք մոռանար„. Նմանապէս սուրբ քահանաները զուարթ դէմքով առան նոցա բոլորին իրենց գրկերն եւ ասացին. “զօրութեանց Աստուածը թող օրհնէ՛ ձեզի եւ տայ ձեզի տեւողութիւն ‘համբերութիւն’ եւ զօրացնէ ձեզի այս հեթանոս ազգի առաջ եւ այդ տեսանելի կապանքներից ազատէ՛ ու հասցնէ ձեզի ձեր ծնընդեան աշխարհը։„

Հեթանոսները տեսնելով քահանաների եւ Նախարարների այնպէս ուրախութեամբ իրարից բաժանուիլը՝ կարծեցին թէ նոքա չգիտեն թագաւորի հրամանը։

Քահանաները ճանապարհ ընկան եւ գնում էին։ Շտապով պատրաստուան նաեւ նոցա սպասաւորները, որոնք ինքնիրենց գլխուն եկած էին Հայաստանից, որ ծառայեն նոցա բանտերում, մանաւանդ Խորէն երէցն Այրարատ գաւառի Որկով

գիւղից եւ Աբրահամ երէցը Տայոց գաւառի Ջենակս գիւղից: Վեհդենշապուհն հարցուց նոցա թէ "դուք ո՞ւր էք պատրաստուում",. եւ լսեց նոցանից թէ "ուր որ մեր տէրերին ու վարդապետներին 'ուսուցիչներին' էք տանում, դոցա հետ պատրաստ ենք գնալու՝ թէ ապրինք եւ թէ մեռնինք:,, 'Այնժամանակ' հրամայեց որ բռնեն նոցա եւ պահեն հէնց այնտեղ շահաստանի մէջ: Դուրս եկան այնուհետեւ Դենշապուհը Նիւշապուհ քաղաքից սուրբ քահանաների հետ միասին ցերեկուայ վեցերորդ ժամին այն ճանապարհով, որ դուրս է գալիս դէպի Վրկան:

---

# ԳԼՈՒԽ ԺԹ․

## *Խ ո ւ ժ ի կ ։*

Խուժիկ վաճառականը, որ ծածուկ քրիստոնեայ էր, ընկերանում է դահիճների հետ։ Սուրբ քահանաներին վերջին անգամ ստիպում են ուրանալ իրենց հաւատը. նոքա հրաժարում են, եւ նահատակւում։ Խուժիկը գողանում է սուրբ քահանաների մարմինները։

“Հաւասարեսցէ մահու մեր ընդ մահ քաջ նահատակացն։„

*ա) Մի վաճառական* մարդ, որ ազգով Խուժիկ՝ էր եւ հայերէն լեզուին լաւ տեղեակ էր ու ինքն էլ քրիստոսասէր ու հաւատացեալ ծնողաց որդի էր, երանելի քահանաներին ու Հայոց նախարարներին լաւ մօտիկ ճանաչում էր ու շատ ծառայութիւն ու ծախսեր էլ արած էր իւր ունեցածից, երբ նոքա Վրկանումն էին. լսելով Թագաւորի հրամանը ‘քահանաներին սպանելու մասին’ շուտով առաւ իւր եզների միջից տոկուն եւ ուժեղ եզներ եւ քարվանի մարդու նման՝ ճանապարհ ընկաւ Վեհդենշապուհի հետ. ճանապարհին ցոյց տուեց նորան ‘Խուժիկը’ շատ աչքաբացութիւն եւ դուր եկաւ Վեհդենշապուհին, ‘այնպէս որ’ սա շատ սիրեց նորան. հարցուց նորա գեղի ու ծնողաց մասին. Խուժիկն էլ պատասխանում էր նորան այլաբանօրէն։ Վեհդենշապուհը տեսնելով որ այդ մարդը շատ աչքաբաց է ամէն բանի մէջ, թոյլ չէր տալիս նորան մի ժամ անգամ իրենից հեռանալու, բացի այն՝ հաւատաց նորան Թագաւորի խորհուրդը։ Յետոյ՝ Խուժիկն այնպէս ձեւացնում էր* Ղազար.

* Եղիշէն ասում է. “Խուժիկ անունով մի մարդ արքունի զօրքի միջից, որ ծածուկ քրիստոնեայ էր եւ դահիճների խմբի մէջ օրապահներից մէկն էր։„

է. ձեր խրատովն է կատարուել այդ ամէնը. եւ
մեծ Թագաւորը ձեզի մեծ լաւութիւն արաւ, որ
հրամայեց մեզ եւ ասաց. "Թէոր յօժարին երկրպա֊
գութիւն տալ կրակին եւ արեգակին, կըներեմ նոցա
մահապարտութիւնը. Նախարարներին, որոնք բանտի
մէջն են, կ'արձակեմ Հայաստան 'գնալու', եւ ամէն֊
մէկի տանուտէրութիւնն էլ կըվերադարձնեմ։ Ու֊
րեմն միտք բերէք ձեր եւ այնքան կապեալների
անձերը՝ եւ շատերի կենդանութեանը պատճառ
եղէք, ապա թէ ոչ՝ կըմեռնիք եւ ձեր հոգիներից
կըպահանջուին բոլոր 'թափուած' արիւնները։ Դուք Եղիշէ.
ձեր աչքովը տեսաք այսօր, թէ մի ազնուական
մարդ, որովհետեւ դէնիմազդէզը 'մոգութեան օ֊
րէնքն' անարգեց եւ խաբուաւ ձեր տխմար գիտու֊
թիւնով, ահա ինչպէս մի անտէր 'վատ' գերի աք֊
սորուաւ։ Ուրեմն դուք էլ ուրիշ հնար չունիք
ապրելու, մինչեւ երկրպագութիւն չանէք արեգա֊
կին եւ չկատարէք Թագաւորի կամքը։"

Եւ հրամայեցին երանելի Սահակ եպիսկոպո֊ Ղազար.
սին, որ թարգմանէ 'իրենց ասածը' սուրբ Յովսէփի
եւ սուրբ Ղեւոնդի ու 'միւս' ընկերների համար.
ըստորում այդ սրբերի միջից ուրիշ մարդ չգիտէր
պարսկերէն 'բացի Սահակ'։ Պատասխան տուեց
Սահակ եպիսկոպոսը Դենշապուհին եւ ասում է.
Մի՞ք տար ինձ ասել դոցա այն խօսքերը. ըստորում
այն որ ինձ ատելի է երեւում, էլ ի՞նչ ասեմ նոցա.
դուք արէք ինչոր կամենաք։"

Դենշապուհն եւ ուրիշները բարկացան եւ
ասում են նորան. "Դու անպատճառ ասա դոցա,
թող իմանանք եւ դոցա ասածը։"

Սուրբ եպիսկոպոսը կարճառօտ խօսքերով ա֊

սաց ընկերներին եւ Նոքա բարձրաձայն խնդացին եւ ծաղր արին այն խօսքերի վերայ։

Սակայն պատասխանեց սուրբ Յովսէփ կաթուղիկոսն եւ ասում է. "Միեւնոյն հարցումն եղաւ եւ ատենի մէջ Արեաց հազարապետի առաջ, 'որն եւ' մեր խօսածն եւ ուզածը յայտնեց թագաւորին. 'այժմ էլ' միեւնոյնն է մեր բոլորիս կամքը եւ չենք փոխուում. անկարելի է՝ որ մենք ճշմարտութիւնն ուրանանք եւ սուտ աստուածներին ծառայենք. ու մեր ուրացութեամբ էլ թող հաւատացեալ կապեալներից մէկին ազատութիւն չլինի եւ յաւիտենական անլուծանելի կապանքը չընկնին։„

Հրամայեցին, 'որ Սահակն' երանելի Ղեւոնդին էլ ասէ՝ թէ "մենք լսած ենք, որ քրիստոնեաների օրէնքները ոչոք այնպէս չգիտէ ինչպէս դու. եւ քու խրատովդ աւելի վնասուաւ Հայաստանը. ուրեմն այժմ էլ խրատատու եղիր եւ թող ապրին դոքա եւ ուրիշ շատ անթիւ անձինք. եւ այնպիսի պատիւներ կըստանաս թագաւորից, որ Նոցանով անուանի կըլինիս քու երկրիդ եւ բոլոր ազգերի մէջ։„

Եւ սուրբ Սահակն համբերութեամբ թարգմանեց մի փոքր։ Սուրբ Ղեւոնդը խօսել սկսեց եւ ասում է. "Մենք դոցա այնքան պիտի պատասխան տանք, ինչքան որ տուեց Փրկիչը Պիղատոսի ատենի առաջ. ասամ դոցա թէ "դուք ասացիք." 'ձեր ասածը ճշմարիտ է. թէ ես մեր օրէնքին տեղեակ եմ եւ ժողովրդի բազմութեանը ուսուցիչ եմ եղած, այդ ցոյց է տալիս իմ հասակիս մօտենալն իւր կատարածին, 'այսինքն որ ես արդէն ծերացած եմ.' ուրեմն մարդուս աչից պատկառելով՝ իմ լաւ գիտութեանս գերազանցութիւնը մոռանամ եւ փոխեմ

ուրիշի հետ՝, քան լեցի. եւ յանդիմանուիմ այն
՝խօսքով թէ ինչոր շատերին խրատ էիր տալիս,
քեզ չսովորեցրիր։ ՝Ասա թէ՝ “Մի՛ք խօսիր մեզ Եղիշէ.
հետ ինչպէս երեխաների հետ. որովհետեւ հասա-
կով կատարեալ ենք եւ գիտութեանն էլ անտե-
ղեակ չենք։ Մեր օրէնքը սովորեցնում է մեզ պա-
տուել թագաւորներին եւ ամենայն զօրութեամբ
սիրել նոցա. ոչ թէ հպատակութեան ծառայու-
թիւնները միայն ցոյց տալով, այլեւ մահն ան-
գամ աչքերս առնել թագաւորի սիրու համար։
Եւ ինչպէսոր աշխարհքիս վերայ իրաւունք չունինք
փոխել նորան մի ուրիշ բանի հետ, նմանապէս էլ
երկնքում իրաւունք չունինք փոխել մեր ճշմարիտ
Աստծուն՝ ուրիշի հետ։ Ո՞ր խելօք վաճառականը կը-
յօժարի փոխել պատուական մարգարիտը անարգ
թրուշայի հետ, եթէ տգիտութեամբ յիմարացած
չլինի, ինչպէսոր ձեր մոլորութեան առաջնորդներն
են։ ՝Իսկ ինչոր այն փառքին ու պատուին է վե- Ղազար.
րաբերում, որ դուք խոստանում էք մեզ, անկա-
րելի է, որ մենք առնինք այնպիսի պատիւ, որը ցեցն
եւ ուտիճն է փչացնում եւ գողն ականներ բաց ա-
նում եւ տանում։ Մէկ բան է միայն պակասում
մեր այս փառաւորութիւնից ՝այն է՝ մահուան բա-
ժակը, որն ինչպէս սաստիկ ծարաւի մարդ շտապում
ենք խմելու. տուէ՛ք մեզ շուտով խմել եւ է՛լ մի՛ք
երկարացներ ձեր ցնորուած թագաւորի անմիտ ու
վնասակար խօսքերը ՝կրկնելով՝”։ Մուշէն, Արշէնը
եւ Քաջաջն աղաչեցին սուրբ Սահակ եպիսկոպոսին,
որ իրենց կողմիցն էլ ասէ անօրէն իշխանին՝ թէ
“ինչոր մեր սուրբ վարդապետներն ասացին, միեւ-
նոյնն էլ մեր ուզածն ու խնդրածն է։”

Այս որ լսեցին Վեհդենշապուհն եւ իւր գործակիցները, սաստիկ գրգռուած բարկութեամբ եւ ուզեցին ուրիշ պատրողական խօսքեր ասել, գուցէ կարելի լինէր բաժանել մէկին այն գնդի միջից. սկսեցին ստիպել սուրբ Սահակ եպիսկոպոսին, որ թարգմանէ նոցա համար ուրիշ ինչոր խօսել կ'ուզենան սրբերի հետ։

Եղիշէ. Պատասխան տուեց Սահակ եպիսկոպոսն եւ ասում է. “Եթէ մեր մեծերը հակառակեցան, մենք որ նոցանից ստոր ենք, ի՞նչպէս կարող ենք հաւանել քու խօսքերիդ։ — Միաբանէ՛ ջուրն ու կրակը, որ կարողանանք սովորել նոցանից խաղաղութիւն. կանչէ՛ արեգակին տանդ մէջ ինչպէս մի կրակ, որ նա չի՞ կարող գալ։ Ես քեզ մեղադրել չեմ կարող. նա, որ տեսած չէ մեծ թագաւորին, պատուաւոր մարդոցն է երկրպագութիւն անում. թէ կ'ուզես արեգակի մասին իմանալ, նա աշխարհքիս արարածներից մի մասն է միայն. Նա ինքն առանձին իստակ եւ սուրբ լուսով չէ, այլ օդի միջնորդութեամբ է տարածում իւր ճառագայթներն եւ հրային մասերով է տաքացնում բոլոր իւր ներքեւը գտնուող արարածներին։ Ինչպէսոր մի նաւ անգիտութեամբ անցնում է իւր ճանապարհը ջրերի վերայ՝ հմուտ եւ ճարտար նաւապետի միջնորդութեամբ, այնպէս էլ արեգակն իւր կառավարի ձեռքով կատարում է տարեւոր ժամանակի մէջ իւր շրջանի փոփոխմունքը։ Եւ ինչպէսոր աշխարհիս միւս մասերը մեր կենդանութեան համար են հաստատուած, նա ‘արեգակն’ էլ մեզ տրուած է իբրեւ մի մասն միւս այլ մասերի միջից, որ առաջնորդէ լուսով, ինչպէս լուսինն եւ աստղերն եւ մշտաշարժ հողմերն եւ

անձրեւաբեր ամպերը. Նմանապէս եւ երկրիս մա-
սերի միջից ծովը, գետերը, բոլոր աղբիւրներն եւ
ցամաքային ‘մասերը’։ Սոցանից ո՛չ մէկին էլ Աս-
տուած անուանել պէտք չէ։ Մէկ իշխանութիւնը
երկու թագաւորի ձեռք լինել չի կարող։„

“Ուրեմն եթէ ուզում ես ճշմարիտն իմանալ,
սրտիդ դառնութիւնը մի փոքր անուշացրո՛ւ, եւ
բա՛ց մտքիդ աչքերը։ Ամէնքիս Ստեղծողը մարմնաւոր
աչքերին չի երեւում, այլ մտքով է հասկացուում
նորա զօրութիւնը։ Նա ‘Ստեղծողը’ տեսնելով մեզի
մեծ տգիտութեան մէջ, որով մենք էլ ձեզ նման
մի ժամանակ այս տեսանելի բաներին ստեղծող էինք
կարծում, եկաւ մարմին առաւ մարդուց եւ ճանա-
չեցրեց մեզ իւր տեսանելի աստուածութիւնը, Խաչի
կախաղանի վերայ բարձրացնել տուեց իրեն, արե-
գակի վերայից հանեց նորա ճառագայթների լոյսը,
որպէսզի խաւարն սպասաւոր լինի իւր մարդկու-
թեանը։ Մենք էլ մեր Տիրոջ նման պատրաստ ենք
մեռնելու. ինչպէս կամենաս, կատարէ քու չար
կամքդ։„

Անօրէն Դենշապուհն հրամայեց եւ դահիճնե-
րը սրով կտրեցին Արշէն անունով քահանայի
գլուխն ու ձգեցին մարմինը մի ցամաք խորխորա-
տի մէջ։

Սկսեց Դենշապուհն եպիսկոպոսի հետ խօսել
եւ ասում է. “Մի տարի եւ վեց ամիս ման եմ եկել
ես Հայաստանում. միտքս չի գալիս, որ մէկից քու
մասիդ մի որեւիցէ տրտունջ լսած լինիմ. մանաւանդ
Յովսէփի մասին. որովհետեւ դա էր այն ժամանակ
բոլոր քրիստոնեաների իշխանն եւ արքունի գործերի
մէջն հաւատարիմ. եւ ես աչքովս տեսած եմ, որ

ամբողջ երկիրը նորան իբրեւ հաստատ հայր էր համարում, եւ նա էլ անաչառութեամբ սիրում էր մեծերին եւ փոքրերին։ Ուրեմն խնդրում եմ՝ խընայեցէ՛ք ձեր պատուական անձերին ու մի՛ք մատներ ձեզ չարչարանքի եւ մահի ինչպէս այն առաջինը, որ ահա՛ ձեր աչքովը տեսաք։ Ես որովհետեւ ձեր երկրի աղուհացը կերել եմ, գութ եւ սէր ունիմ ձեր երկրի վերայ։„

Ղեւոնդ երէցն ասում է. “Դու որ իշխանութիւն ունիս մեզ վերայ, դատէ՛ մեզ ինչպէս քու կամքդ է. մենք վախեցողը չենք այդ ահագին սարսափելի սպառնալիքներիցդ, մինչեւ անգամ ահ չենք քաշում այն դառն մահից, որ թափելու ես մեր վերայ։„

Այն ժամանակ ՙԴենշապուհն՚ մի փոքր իրարից հեռացուց երանելիներին, եւ միայն սուրբ եպիսկոպոսին ՙՍահակին՚ է ասում. “Միտդ եմ ձգում բոլոր այն վնասները, որ դու տուել ես. դո՛ւ քանդեցիր ատրուշանն Ռշտունիքում, կամ կրակը դո՛ւ սպանեցիր եւ մոգերին դո՛ւ չարչարեցիր։„

Եպիսկոպոսն ասում է. “Դու քու կեանքիդ օգուտը չես ուզում սովորել ինձանից, այլ իմ արիւնիս աչք ունիս. տունը, ճշմարիտ, ես քանդեցի եւ մոգերին էլ ես չարչարեցի ծեծով. եւ պղծութեան կահկարասին, որ տան մէջը կար, ես ձգեցի ծովը, բայց կրակն ո՞վ կարող է սպանել. Ստեղծօղը չորս տարերքի բնութիւնն անմահ է ստեղծել. մեռնում է այն բանը, որը շունչ է քաշում, շարժուն է, ման է գալիս, ուտում է եւ խմում. Երբ ես տեսել դու կրակին՝ որ մանգայ, կամ խօսի, կամ հասկանայ։„ Դենշապուհն ասում է. “Խոստովանիր, դո՛ւ մարեցիր կրակը թէ ո՛չ։„

Պատասխան տուեց երանելին. "Ես ինքս մտայ ձեր կրակատունն եւ տեսայ, որ ամբարշտութեան պաշտօնեաներն՝ այնտեղ՝ էին, եւ կրակարանը կրակով լիքը նոցա առաջ բորբոքուած վառւում էր. Հարցրի նոցա թէ "ձեր խելքով ի՞նչ բան է այս պաշտելու կրակը:,, Պատասխանեցին թէ "մենք ոչինչ չգիտենք, այսքանս միայն իմանում ենք, որ նախնեաց սովորութիւն է եւ թագաւորի սաստիկ հրամանը:,, Ասում եմ նոցա թէ "կրակիդ բնութիւնն ի՞նչ է ձեր գիտցածով, Արարի՞չ էք կարծում նորան թէ արարած:,, Բոլորը միաբերան ասացին թէ "մենք դորա արարիչ լինելը չգիտենք. մեր ձեռքերը կաշի են դառել կացին խփելով, մեր մէջքերը՝ կռնակները՝ քոս է կապել փայտ կրելով, մեր աչքերը ջուր են դառել ծխի կծութիւնից, եւ մեր երեսները մրոտել են ծխի խոնաւութիւնից. թէ շատ կերակուր տանք, շատ կ՚ուզէ. թէ բնաւ չտանք, կ՚անցնի. թէ մօտ գնանք երկրպագութիւն անենք, կըվառէ մեզի, թէ չերթանք բնաւ մօտիկ, մոխիր կըդառնայ: Ահա մենք այսպէս ենք հասկացել դորա բընութի̃ը: Մեր օրէնք դնողներն հոգւով կոյր են. մեր թագաւորը մարմնով միականի է, իսկ հոգին բնաւ աչք էլ չունի:,, Այս պատճառով ես էլ մի փոքր չարչարեցի նոցա ծեծելով, եւ նոցա ձեռքով կրակը թափել տուի ջրի մէջ. յետոյ մոգերին բաց թողի:,,

Բարկացան երեք իշխանները. ինքը Վեհդենշապուհը վեր կացաւ տեղից եւ սրով այնպէս խփեց սուրբ Սահակ եպիսկոպոսի ուսին, որ վէրքը մինչեւ մէջքին մօտեցաւ*: Եւ սուրբ ե- Ղազար.

* Ըստ Եղիշէի՝ "Եպիսկոպոսի աջ ուսին խփեց սրով եւ ձեռքը թիկունքի հետ վէր ձգեց, եւ նա ահեակ կողմի վերայ գետին ընկաւ:,,

պիսկոպոսը սաստիկ խփուելուց մի քարի դէմ առաւ եւ իբր բոլոր սրբերի բերանից սկսեց ասել այսպէս. “Գոհութիւն քեզ Քրիստոս, որ շատ անգամ դու անմահական գառդ անծախութեամբ բաշխուար մեր ձեռքով ‘ժողովրդին’. այժմ ընդունէ՛ ամէնիս, որ
Եղիշէ. արժանաւորապէս պատարագ ենք լինում:„ Սիրտ էր տալիս իւր ընկերներին եւ ասում. “Դէ՜հ քաջեր, հասել է ահա՛ մեր մահուան ժամը:„

Ղազար. Յետոյ հրամայեցին սուրբ Յովսէփ կաթողիկոսին գլխատել սրով. իսկ սուրբ Ղեւոնդի համար հրաման տուին մերկացնել եւ քաշ տալ խստութեամբ քարոտ խճոտ տեղերում. եւ այսպէս քաշքշեցին երկար ժամեր, մինչեւոր սրբի լանջերի ու թիկունքի բոլոր մսերը քերուան պոկուան մորթու հետ միասին:

Ուրիշներն էլ կտրեցին սրով Մուշէի, ‘Արշէնի’ եւ Քաջաջի գլուխները: Եւ յետոյ սուրբ Ղեւոնդին էլ նոյն տեղը բերին, ուր միւս սրբերը նահատակուան, եւ կտրեցին սրով սրբի գլուխը. սուրբ Սահակ եպիսկոպոսն էլ դեռ փոքր ինչ շունչ էր քաշում. նորա գլուխն էլ միւսների վախճանելուց յետոյ կտրեցին սրով:

Այսպէս Յազկերտի թագաւորութեան տասնեւվեցերորդ տարին Հրոտից ամսի քսանեւհինգին նահատակուան Ապար աշխարհում մոգերի Ռեւան[1] անունով գիւղի մօտ վեց սուրբ, որոնց անուններն
Եղիշէ. են՝ ՙՍահակ եպիսկոպոս Ռշտունիքից, սուրբ Յովսէփ Վայոց ձորի Հողոցմանց գեղից, Ղեւոնդ երէց Վանանդի Իջաւան գեղից, Մուշէ երէց Աղբակից, Արշէն երէց Բագրեւանդի Եղեգեկ գեղից, Քաջաջ սարկաւագն Ռշտունիքից:

Եւ ինչպէսոր Արշաւիր կամսարականն ստոյգը Ղազար.
հարցրել իմացել էր երանելի Խուժիկից եւ նորա-
նից լսածը պատմել է մեզ, գրեցինք տեղնուտեղն
‚ամէն ինչ՚։

---

ը) ‘Երբ այն երեք՝ իշխանը գնացին այնտեղից,
իննը զինուորուած մարդ թողին, որոնց մէջ ամենից
յառաջ երանելի Խուժիկին. եւ հրամայեցին, որ
տասն օր պահեն զգուշութեամբ այն դիակները,
մինչեւոր արքունի կարաւանը գայ անցնի։ Պահա-
պանները մնացին այն օրերն եւ Խուժիկը մտածում
էր թէ ի՞նչ հնարքով պիտի արժանանայ գողանալ
սրբերի նշխարները միւս պահապաններից. եւ երբ
նա այդ մտածութեան մէջ էր յանկարծ նոյն օրն*
երեկոյին գիշերուայ դէմ մի մեծ շարժ պատահեցաւ
այնտեղում. բոմբիւններ եւ ահագին ձայներ էին
գալիս անդունդից. ամպի գոռոցն եւ կայծակը սարեր
էին դողացնում եւ լուսեղէն սիւնը ծիածանի օրինա-
կով շրջափակում էր սրբերի մարմինները։ Պահա-
պանները գետին ընկած կիսամեռ մնացել էին ամբողջ
գիշերն եւ բոլոր ցերեկն ու երկրորդ գիշերն էլ
մինչեւ արեւի դուրս գալը։ Նոցա բոլորի վերայ մեծ Եղիշէ.
սարսափ էր ընկել. ահեղ ձայներ էին հասնում
ականջներին. գետինը նոցա ոտքի տակ դող էր ելած
եւ սրերի շողշողոցն ասես կայծակ էր սփռում նոցա
չորս բոլորը. եւ բոլորի դիակները կանդնած էին
երեւում նոցա աչքին. եւ ատենի մէջ խօսած բա-
ները սարսափելի կերպով կրկնում էին ասես նոցա
ականջներին։

* Ըստ Եղիշէի՝ երեք օրից յետոյ։

Դադար. Յետոյ անդունդի ձայներն եւ որոտմունքները դադարեցան. գետինն էլ շարժ գալուց դադարեցաւ. պահապանները մի փոքր շունչ առան, աչքերը դէսուդէն էին ձգում, որ փախչէին, բայց չէին կարողանում ոտքի կանգնել տեղերից։ Բայց երրորդ օրուայ իններորդ ժամին մօտ՝ վեր կացաւ Խուժիկն եւ որպէս թէ կամաւ կաղկաղ յետ նայելով փախչել սկսեց, որպէսզի միւսներին էլ սիրտ տայ տեղերիցն ելնելու եւ իրեն հետ հեռանալու այնտեղից։ Նոքա էլ որ այդ տեսան, ուշքի եկան եւ նորա յետեւից վազ տուին՝ չհամարձակելով բնաւ դառնալ եւ յետ նայել. գնացին Վեհդենշապուհի յետեւից. իսկ Խուժիկն ուրիշ ճանապարհով բաժանուաւ նոցանից։ Պահապաններն հասան վեցերորդ օրն եւ պատմեցին բոլոր այն պատահած փորձանքների մասին։

Դենշապուհն եւ ընկերներն երկար ժամանակ ապշած՝ չէին կարող հնարք գտնել. պահապաններին լռեցնել էին աշխատում եւ իրենք առանձին մի զարմացքով անզգայութեան մէջ ընկղմած ասում էին իրարու. “Այդ քրիստոնեաների գործերը թեթեւ կամ չնչին բաներ չեն. այլ նոցա օրէնքի եւ հաւատքի զօրութիւնը մեծ է եւ հաստատ. մենք էլ անգիտութեամբ վնասուում կորչում ենք ու չենք

Եղիշէ. էլ զգում։ Ի՞նչ կարող ենք անել այդ քրիստոնեաների անքննին աղանդի դէմ. քանիոր կենդանի էին՝ զարմանալի էր նոցա ապրուստը. ինչպէս անկարօտ մարդիկ ընչատեաց էին. ինչպէս անմարմին արարածներ սրբասէր էին. ինչպէս արդարադատ՝ անաչառ էին. ինչպէս անմահ՝ աներկիւղ էին։ Թէ լուռ մնանք, մեզ ու մեր անձերի համար մի կաս-

կած է. թէ թագաւորին յայտնենք, կարելի է մեր
օրէնքը (հաւատը) քանդուի։„

Խուժիկն երբ իմացաւ այն իշխանների տուած Ղազար.
պատասխանների մասին, առաւ իրեն հետ ուրիշ
տասն ընկեր, գրաստ եւ իւրաքանչիւր սրբի համար
միմի չորսկողանի սապատ, ու կամաց անխօս գնա-
ցին գիշերն իրենց գործին. երբոր մօտեցան այն
տեղերին, սխալուան իսկ տեղից, որովհետեւ գի-
շերը մութն էր. եւ երբ խռոված այս կողմ այն
կողմ էին ընկնում, ահա մի լուսաւոր արծիւ թռաւ
եկաւ երկնքից եւ նստաւ սուրբ Ղեւոնդի մարմնի
վերայ։ Նոքա էլ ուրախալից սրտով ձեռք տուին
գործին եւ ժողովեցին իւրաքանչիւրին միմի սա-
պատի մէջ. այնտեղ եօթն օր մնացին, որ ահը բո-
լորովին անցնի. յետոյ իստակեցին սրբերի ոսկոր-
ներն ու բերին քաղաք. անխօս սկսեցին բա-
ժանել քրիստոնեաներից միքանիսին, որ կարաւանի
մէջն էին եւ շտապով հասցնել էին տալիս զանա-
զան երկիրներ։ Այս ընծայի առաջին պտուղը տուին Եղիշէ.
կապեալ՝ Հայ Նախարարներին. եւ երանելի Խուժիկը,
որ արժանի եղաւ ծածուկ ծառայելու սրբերին,
ինչոր Նոցա մահուանից մինչեւ ցայժմ վճիռներ
տրուան, բոլորն երկրորդեց մեզ կարգով։ Սկսեց Ղազար.
այնուհետեւ միառմի պատմել Հայոց կապեալ Նա-
խարարներին երանելի Խուժիկն (որին այսուհետեւ
Խուժիկ անուանել դժուարանում եմ, իսկ այդ
զարմանալի մարդու անունը ոչով չկարողացաւ ի-
մանալ եւ ասել մեզ.) Աստծու մեծամեծ խնամքի
եւ օգնութեան մասին, որ ցոյց էր տուել Նո-
րան։ Միեւնոյն խօսակցութիւնն ու մխիթարու-
թիւնն էր միշտ Հայոց կապեալների մէջ թէ մըտ-

*նել ելնելու ժամանակ, թէ տանը նստած ժամանակ եւ թէ վերկենալու, թէ տօներին եւ թէ ամսագլուխներին։ Մանաւանդ Արշարունեաց [3] տէր կամսարական Արշաւիրը, որ ամէն ժամանակ սուրբ Ղեւոնդի վարդապետութիւնն եւ ամէնմէկի տուած պատասխանն սպանօղների հարցմունքին՝ պատմում էր միշտ առանց ձանձրանալու. մենք էլ շատ անգամ լսած լինելով ՙայն ամէնը՚ հրաշալի կամսարականից, դրեցինք յօժարութեամբ։*

---

# ԳԼՈՒԽ Ի.

## Խորէն եւ Աբրահամ:

*Խորէն եւ Աբրահամ քահանաները խնդրում են, որ իրենց էլ սպանեն: Ցազկերտի հրամանով նոցա խեղացնում են եւ աքսորում Ասորեստանի Շահուղ գաւառը: Ասորեստանի քրիստոնեաները սիրով ընդունում եւ շահում են նոցա: Խորէնը վախճանում է Ասորեստանում, իսկ Աբրահամը քրիստոնեաների թախանձանքով գալիս է Հայաստան եւ վախճանում է եպիսկոպոսութեան կարգի մէջ:*

«Չեմք ինչ մեք լաւ քան զառաջինսն:»

Երբոր ժամանակն հասաւ, Ցազկերտ մտաւ Վրկանի մայրաքաղաքը. այնուհետեւ Հայոց նախարարներին իրաւունք տուին իրենց սպասաւորներին կամ մէկ ուրիշի ուղարկել իրենց պիտոյքի համար ուր որ կամենան: Այս որ լսեցին Խորէն եւ Աբրահամ քահանաները, շուտով գնացին Վրկան եւ բացարձակ ընկան Դենշապուհի առաջն ու ասում են. «Թէոր մեր հոգեւոր տէրերին տարաք մի օտար երկիր, անդառնալի աքսորեցիք, շնորհ արէք, ասացէք մեզ, որ մենք էլ գնանք ու նոցա հետ միասին անդարձ լինինք: Իսկ թէ նոցա սպանեցիք, բարեհաճեցէք մեզ համար էլ նոյն հրամանը տալու:» Ղազար.

Վեհդենշապուհն ասաց երանելիներին, թէ «ձեր վարդապետների ճանապարհը ձեզ ոչ՚ք ցոյց տալու չէ. իսկ ձեր մասին պէտք է հարցնել մեծ թագաւորին:» Ներս մտաւ Դենշապուհ, պատմեց Ցազկերտին այն քահանաների ուզածը: Թագաւորն ասաց՝ թէ «նոցա վերայ ոչ՚ք մի յանցանք ցոյց տուած չէ. թէոր արեգակին երկրպագութիւն տան, մեծ պարգեւներ կ՚ընդունին եւ կըթողնիմ, որ իրենց երկիրն երթան. իսկ թէոր չեն համա-

ձայնիր, խեղութեամբ [1] պատժէ՛ Նոցա եւ թող երթան Ասորեստան մշակութիւն անեն արքունի մշակների հետ եւ հարկատու մնան մինչեւ իրենց մահը։„

Եղիշէ. Եկաւ նորից նոյն դահճապետը սուրբ սպանեալների աշակերտների մօտ եւ ասում է նոցա. "Երդուել եմ Միհր աստծու անունով. ձեզ ազատել անկարելի է մինչեւոր արեգակին երկրպագութիւն չտաք։„ Խորէնն ասում է. "Ինչո՞վ պակաս տեսար մեզ մեր հայրերից. մէկ լաւ նայէ քու չարութեանդ եւ մեր բարութեան վերայ, այն ժամանակ կ՚ամաչէ քու հայրդ սատանան։„ Երբոր լսեց դահճապետը, բարկացաւ եւ քաշ տալ տուեց նոցա առաջիններից աւելի խիստ. այնպէսոր շատերը կարծեցին թէ մեռան ՙնոքա՚։ Նորից սկսեցին խօսել այն երկուսն եւ ասացին. "Այն մեծ սիրու փոխարէն, որով մեռան մեր հոգեւոր հայրերը, այդ անարգանքները փոքր ենք համարում։ Աւրեմն մի՛ քաշուիր եւ մի՛ թոյլ թողներ, ինչոր նոցա ցոյց տուիր, այն էլ մեր գլխին կատարէ՛։„

Այն ժամանակ դահճապետը հրամայեց մահուան ծեծ [2] ուտեցնել նոցա. եւ երբ կիսամեռ ընկած էին գետին, հրամայեց երկուսի ականջները մօտիկ ՙկիպ՚ կտրել. ու ասաց. "Թէոր էլի ուշացնեմ ձեզ, կարծեմ, դուք ինձ էլ կըհամոզէք։ Այդքանն է հրամայած միայն ձեզ պատժելու համար, եւ այդ պատժից յետոյ դուք պիտի գնաք Ասորեստան եւ արքունի մշակների մէջ լինիք։„

Երբոր տարան ՙզինուորներն՚ եւ հասցրին նոցա Բաբելացւոց երկրի Շահուզ* անունով գաւառը.

* Ըստ Ղազարու՝ Շահրուլ։

*թէ՛ ծածուկ եւ թէ՛ յայտնի մեծ պատուով ըն-
դունուած այնտեղի բնակիչներից։*

*Ասորեստանի հաւատացեալներն ուրախու- Ղազար.
թեամբ դիմաւորեցին նոցա եւ պատուեցին. եւ ա-
մէն մարդ ինչ կարասի որ ունէր, բերում դնում էր
նոցա առաջը. եւ քահանաներն էլ հաւատացեալ-
ների այդ ընծաներից ինչքան պէտք էր ընդունում
էին մի մասն եւ նոցա ձեռքով ուղարկում էին
Ապար աշխարհը՝ կապեալ Հայ նախարարներին։
Աբրահամ երէցն Ասորեստանի հարաւային կողմերի
տուրքերը ժողովելով ՙտարէցտարի՚ տանում բա-
ժանում էր Հայոց կապեալ նահատակներին՝ իւ-
րաքանչիւրի կարիքին համեմատ՝ շատ տարիներ՝
մինչեւ Հայոց նախարարների ազատուիլը։ Խորէն
երէցը միքանի տարի ապրեցաւ եւ ՚սաստիկ շղթերից
վնասուելովՙ մեռաւ այնտեղ Ասորեստանում. իսկ
Աբրահամ երէցն այն կողմի հաւատացեալների ե-
րաշխաւորութեամբ, որոնք իրենց տներն ու գիւ-
ղերը նորա հարկերի տեղ մինչեւ նորա մեռնելը
թագաւորական գրեցին, արձակուաւ ՚պատժաւոր- Եղիշէ.
ների երկոտասաներորդ տարին ՙհանելուց յետոյ՚։
Ամէնքը միաբան աղաչում էին նորան, որ յօժարա-
նայ Հայաստան գնալու. որպէսզի նորա այնտեղ գա-
լովը, ճանաչեն նորանով այն քաջ նահատակնե-
րին, որոնք վախճանուած սրով. ճանաչեն նորանով
եւ չարչարանքի սուրբ կապանքները։ Եւ երբ մար-
տիրոսները, նահատակները եւ կապեալները նորա-
նով ճանաչուեին, նորանով եւ կ՚օրհնուի բոլոր եր-
կիրը, նորանով կ՚օրհնուին նորա ժողովրդի տղայքն՝
աճելու համար, նորանով կըզգաստանան նորա երի-
տասարդները սրբութեան մէջ, նորանով կըհամես-*

տանան նորա ծերերն իմաստութեան մէջ, նորանով կըսովորին նորա իշխանները մարդասիրութիւն, նորանով կըպարծենան եկեղեցիներն իբրեւ քաջ եւ կատարեալ զինուոր. երբ Խոստովանողի ‘Աբրահամի’ ամենավաստակ ոտները պատերազմի լայնատարած տեղերը կոխելու լինին, երբ կենդանի մարտիրոսն այն ‘դաշտի վերայ’ ման գայ, կենդանին կենդանիների մօտ գնալով՝ կրկնապատիկ կենդանութիւն կըլինի ‘այնտեղ’. երբ Հայաստանի միայնակեացները սորան տեսնելու լինին, սորանով մտքերը կըբերեն սուրբ քահանաներին, որոնք օտարութեան մէջ կոտորուան եւ թագաւորի բարկութիւնը նըստեցրին. սորանով միտք կըբերեն մեր կապանքներն եւ կըխնդրեն Աստծուց, որ դարձնէ մեզ մեր գերութիւնից դէպի մեր հայրենի երկիրը. որովհետեւ շատ փափագում ենք տեսնելու մեր սուրբ եկեղեցիներն եւ այն սրբասէր պաշտօնեաները, որոնց կարգել հաստատել ենք նոցա մէջ:„

Եւ որովհետեւ սովորութիւն չունէր նա երբէք լաւ բանին դէմ կայնելու, շտապեց շուտով կատարել միաբանուածների հրամանն եւ եկաւ Հայաստան:

Շտապեցին շուտով դէմ գնացին նորան մարդիկ եւ կանայք՝ թէ մեծ եւ թէ՛ փոքր եւ բոլոր ազատների ու շինականների բազմութիւնը. ընկնում փաթաթւում էին նորա ոտքերն ու ձեռքերն եւ ասում էին. “Օրհնեալ է Տէր Աստուածը, որ ահա՛ քու մէջդ կերպարանուած ենք տեսնում բոլոր հրաժարուածներին ‘բացականերին’. քու մէջդ ենք տեսնում մեր երկրի շինութիւնը. քեզնով պիտի ուրախանան ցնծան մեր եկեղեցիները.

օրհնէ՛ մեզ, հա՛յր սուրբ, դու ես հանգուցեալների բերանը. խօսի՛ր մեզ հետ յայտնի օրհնութիւններով, որ մեր հոգիներն առնին աներեւութապէս այն սրբերի օրհնութիւնները. դու ճանապարհ բացիր նոցա համար, որոնք փափագում են իրենց երկիրը գալու. բա՛ց 'ուրեմն' երկնքի առաջ մեր աղօթքի դռները, որ քանի դեռ այս ելանելի մարմիններիս մէջն ենք, ինչպէսոր քու երանելի սրբութիւնդ տեսանք, այնպէս էլ մեր անձկալի սիրելիներին տեսնել կարողանանք:„

Երանելի Խոստովանողը թէպէտ այսպիսի սիրով ընդունուաւ բոլոր երկրի մէջ, բայց չուզեց բնա՛ւ մօտենալ մէկին՝ մարմնաւոր պիտոյքի համար. այլ իրեն համար ժողովրդի բազմութիւնից ազատ մի տեղ ընտրեց եւ երեք առաքինի եղբայրներով 'ընկերներով' ճգնաւորական կեանք վարեց: Թէ նորա տքնութիւնն ասես, ինչպէս անշէջ կանթեղ մնում էր ամբողջ գիշեր. թէ սակաւապիտութիւնն ասես, համարէ թէ անկերակուր հրեշտակներին էր նման. թէ հեզութիւնն ասես, կենդանիներից ոչ մէկը նորա նման չէ. եւ եթէ անընչասիրութիւնն ասես, ինչպէսոր մեռելը ոչ մի բանով չի խաբուիր, նոյնն էլ իսկապէս այդ երանելու մասին իմացիր: Անհամացածների համար նա աղ եղաւ եւ բոլոր ծուլացածների համար ծակօղ խթան: Նորա համբաւը լսելով իմաստնացան տգէտները. նորա մօտիկութիւնը տեսնելով զգաստացան լկտիները. նա մարմնով բնակում էր մի նեղ խցի մէջ, իսկ նորա սրբութեան ահը տարածուած էր թէ՛ հեռաւորների եւ թէ՛ մերձաւորների մէջ: Ցոյներն երանի տուին նորա համար Հայաստանին, եւ շատ

քարբարոսներ շտապեցին տեսնելու նորան մարմնով։ Իւր առաքինութեան սկիզբն հէնց տղայ հասակից էր արել եւ նոյն առաքինութեամբ հասաւ մինչեւ իւր կեանքի վերջը. աշխարհիս սուրբ ամուսնութեան կարգի մէջ չխառնուաւ. եւ եթէ պէտք է պարզաբար ասել, ինչպէսոր մարմնու պիտոյքը փոխեց հոգեւոր պիտանացու բաների հետ, այնպէս էլ փոխադրուաւ երկրից երկինք։[3]

Ղազար. ‘Աբրահամ’ եկաւ Հայաստան եւ Բզնունեաց աշխարհի եպիսկոպոսութեան աստիճանն ընդունեց. այն երկրի մարդիկներին շատ բարեկարգութեան եւ ուղղութեան ուսուցիչ եղաւ եւ նոյն կարգի մէջ կնքեց իւր կեանքն ի խորին ծերութեան։

———

# ԳԼՈՒԽ ԻԱ.

## *Նախարարների վերադարձը:*

**Նախարարների կեանքը բանտում եւ նոցա կրած զրկողութիւնները տեսնելով Յազկերտ ուզում է օգուտ քաղել եւ կրկին ստիպում է ուրանալ իրենց հաւատը: Նախարարները չեն յօժարանում: Շղոմշապուհ իշխանի միջնորդութեամբ նախարարներն արձակւում են կապանքից եւ Պարսից զօրքի հետ պատերազմի են գնում: Յազկերտ նոցա սիրել է սկսում: Յազկերտը մեռնում է (456) եւ թագաւորում է Պերոզ (458): Նախարարները Պերոզի թագաւորութեան վեցերորդ տարին ներումն են գտնում եւ վերադառնում են Հայաստան. (463 թ.)**

“Չիք ումեք քաղցրագոյն քան զծնողս եւ ոչ քան զգաւառ իւր:”

Երեսուն եւ հինգ մարդ նախարարական ցեղից* եւ ուրիշ շատ մարդիկ էլ քաջ նահատակների նիզակակիցներից եւ մարտակիցներից՝ բոլորը միասին գնացին մտան փորձանքի տակ: Այն մարդիկը, որ ‘յառաջ’ ազատ էրէի նման ծաղկաբեր սարերի մէջ ման էին գալիս, ընկան ‘այժմ’ արեւելքի բոցակէզ երկիրները՝ կապած ոտներով եւ կապած ձեռքերով. հացերը շատ սուղ, ջրերը նուազ, ցերեկը խաւարի մէջ փակուած, գիշերն անլոյս, իրենք անվերարկու եւ անանկողին, գազանի պէս գետնի վերայ էին պառկում իննը տարի ու վեց ամիս. այնու ամենայնիւ մեծ ուրախութեամբ քաշում էին այդ նեղութիւնը. որովհետեւ մարդ չկայ, որ լսած լինի ամենեւին նոցա բերանից մի անբաւականութեան տրտունջ. ’Ես սարսափում եմ՝ նայելով նոցա կամաւոր տանջանքների վերայ, տեսնելով նոցա մեծ համբերութիւնն եւ դիմանալը, որ մեծութիւնն արհամարհեցին, իշխանութիւնը ոչինչ բան

Եղիշէ. / Ղազար. (margin)

* Տես գլ. ԺԳ. 5:

համարեցին, հեռացան հարստութիւններից եւ աներկիւղ տուին իրենց անձերը մահի ձեռքը. ‘իսկ’ նոցա երկար ժամանակ կապանքին համբերելը, փառքի տեղ անարգութիւն յանձնառնելը, սովածութիւնից տանջուելը, ծարաւութիւնից մաշուելը. . .: կապեալ նախարարներից (որին ականատես եղած ենք) միքանիսն արդարեւ երկրիս վերայ երկնաւորներին էին նման եւ մարմնի մէջ հրեշտակ էին երեւում: Իրենք իրենց անձերին գպրոց էին եղել եւ եկեղեցու կտակարանները սովորելով աներկիւղ սաղմոս էին քաղում եւ զօր ու գիշեր կարդում էին սուրբ գիրքը գումարտակի մէջ ‘պատերազմի դէպքերում’ այնպէս՝ ինչպէս տան մէջ երբեմն յայտնի եւ երբեմն՝ ժամանակին նայելով՝ ծածուկ: Նոքա որոնք ծերութեան կամ ծանրամտութեան պատճառով ուսանել չէին կարող, առհասարակ երկար աղօթքի մէջ յօժարութեամբ Եղիշէ. անքուն էին մնում:՝Այն երանելիների միջից աւելի մատաղահասները սովորեցին իրենց հայրենի երկրի դպրութիւնը, որով իրենց քաջալերում եւ ընկերներին էլ մխիթարում էին. եւ այնպէս զմայլեցան իրենց հոգու եւ մտքի մէջ, որ նոքա, որոնք աւելի ծեր էին, մատաղացան մանկացան. Թէպէտ կարդալու ժամանակներն անցել էր, բայց շատ սաղմոս անգիր արած երգում էին մանուկների հետ միասին. եւ այնպէս բարձրացնում էին սուրբ պաշտօնը, որ մինչեւ անգամ խիստ դահիճներից միքանիսն, ինչքանոր ձեռքերից գալիս էր՝ Թագաւորի հրամանից դուրս՝ դիւրութիւն էին ցոյց տալիս նոցա եւ շատ անգամ էլ նոցա մարմնաւոր պիտոյքը լրացնում էին:

Ցազկերտի մտքէն անցաւ թէ գուցէ Հայոց նախարարները՝ սաստիկ նեղութեան պատճառով ձանձրացած լինին իրենց դառն կեանքից. ղրկեց նոցա մօտ մեծ հազարապետին եւ ասում է. “Երկրպագութիւն տուէք արեգակին եւ կ՚արձակուիք այդ ծանր կապանքներից ու կըստանաք նորից ձեր հայրական կայքերը:„

Պատասխան տուին երանելիներն եւ ասում են. “փորձի համա՞ր ես եկել հարցնում մեզ. ո՛վոր միանգամ ճշմարտութեան աշակերտ է եղել, նա երբէ՛ք նորանից յետ չի մնար, այլ ինչոր է՝ նոյնն էլ կըմնայ. մի՞թէ յառաջ չիմանալո՞վ դէմ կեցանք եւ այսօր այս նեղութիւնը մեզ խելքի՞ բերեց. ուրեմն աղաչում ենք քեզ եւ քեզնով էլ թագաւորին, որ ձեր մտքում ինչոր դրած ունիք մեզ համար, կատարէ՛ք:„

Հազարապետը* շատ գովեց իւր մտքում նոցա հաստատամտութիւնը. եւ այնուհետեւ սկսեց սէր ձգել նոցա վերայ. շատ համոզական խօսքերով թագաւորին յօժարացնել էր ուզում, որ թողութիւն տայ նոցա: Թէպէտեւ նա ինքը հազարապետութեան գործից ելաւ եւ շատ բաների մէջ վնասակար գըտնուաւ, (որովհետեւ ինքն էր մեղաւորն Հայաստանի աւիրուելուն, այդ պատճառով էլ մեծ անպատուութեամբ ուղարկուաւ իւր տունը,) բայց կապեալների մասին բնաւ չարախօս չէր ուզում լինել մինչեւ իւր մեռնելու օրը: Նաեւ այն երկրի մեծ իշխանը, որի անունն Հարեւ Շղոմշապուհ էր եւ որին յանձնուած էին բոլոր պատժաւորները, շատ սէր էր ձգել բոլոր ‘նախարարների՝ վերայ. նոցանից ծերերին

* Միհրներսեհն է այս հազարապետը:

հօր տեղ էր ընդունում, մատաղահասներին սիրելի
որդու պէս էր զգում։ Շատ անգամ գրեց եւ
յայտնեց թագաւորին կապեալների քաշած նե-
ղութեան մասին. մեծամեծների առաջ ջանք էր դնում,
զանազան հնարներով աշխատում էր, մինչեւոր
շատ բարեխօսներով յօժարացրին թագաւորին։
Յազկերտ հրաման տուեց քանդել նոցա կապերը,
վերցնել նոցա վերայից պատուհասի սուգը[1] եւ
հագցնել նոցա նախարարական զգեստ. եւ ռոճիկ
նշանակեց նոցա. եւ սպառազինութեան պատրաս-
թիւնը հրամայեց թագաւորականից տալ. գրեց եւ
յանձնեց մեծ սպարապետին, որ արքունի զօրքերի
հետ պատերազմի գործերի մէջ մտնին։ Շատ տեղ
ուրոր հասան նոքա, քաջութեան մէջ լաւ դուրս
եկան. մինչեւ անգամ նոցա համար գովութեան
հրովարտակ էր հասնում Դուռը։ Յազկերտն
հրամայեց բոլորին էլ իւր առաջը բերել։ Եկան եւ
ներկայացան Յազկերտ մեծ արքային. տեսաւ նոցա
զուարթութեամբ. խօսաւ նոցա հետ խաղաղու-
թեամբ. եւ խոստացաւ տալ նոցա ամէնմէկի իշխա-
նութիւնը՝ հայրենի պատիւների կարգին նայելով, եւ
արձակել նոցա՝ քրիստոնէութեան օրէնքը շնորհե-
լով։ Եւ երբոր նոքա մեծ ուրախութեամբ տուն էին
գալիս բանակի մէջ, այն ժամանակն հասաւ թա-
գաւորի կեանքի վերջն իւր թագաւորութեան իննեւ-
456. տասներորդ տարին։ Եւ նորա երկու որդիքը
տէրութեան համար իրար հետ կռուում էին եր-
կու տարի. եւ երբ նոքա այդ խռովութեան մէջ էին,
ապստամբեցաւ Աղուանքի թագաւորը։ Յազկերտի
կրտսեր որդու դայեակը յարձակուաւ նորա մեծ
որդու վերայ եւ բռնեց ու հրամայեց սպանել. եւ

Թագաւոր նստեցուց իւր սան Պերոզին։ Աղուան֊ 458.
քի Թագաւորը չէր ուզում հպատակ լինել ‘Պար֊
սիկներին’, այլ միաբանեցուց տասնեւմէկ լեռ֊
նական Թագաւորներին, եւ հակառակում էր պա֊
տերազմով Պարսիկների զօրքին։ Երկու երեք
անգամ աղաչական հրովարտակներ ղրկեցին ‘Պար֊
սիկները’ եւ ոչ մի կերպով չկարողացան [2] համոզել
այն մարդուն ‘Աղուանից Թագաւորին’, որը Թէ՛
գրով, Թէ՛ պատգամներով նոցա երեսներին էր
տալիս Հայաստանի զուր աւերուելու մեղքը. “Այն֊
քան սէր ու ծառայութիւն ցոյց տալու համար՝
լաւութիւն անելու փոխարէն կեանքերը խլեցիք,
ասում էր նա. լաւ է, որ ես յանձս առնիմ նոցա
չարչարանքները քաշելու քանԹէ ուրանամ քրիս֊
տոնէութիւնը։„ Երբոր տեսան ‘Պարսիկները’ Թէ
բնաւ չեն կարող համաձայնեցնել նորան, շատ
գանձեր ղրկեցին Խայլնդուրների երկիրը, բացին
Ալանաց [3] Դռները եւ շատ գունդ հանեցին հոնաց
միջից, եւ մի տարի կռիւ արին Աղուանների հետ։
Եւ այնքան ժամանակուայ մէջ պաշարումը երկա֊
րելուց աւերուաւ ‘Աղուանքի’ երկրի մեծ մասը։

Այս բոլոր խռովութիւնները որ եղան մինչեւ
Պերոզի Թագաւորութեան հինգերորդ տարին,
պատճառ եղան Հայոց նախարարների չարձակուե֊
լուն։ Եւ նոյն տարին ‘Պերոզ’ նոցա շատերի կեանքը
‘կայանքը’ բաշխեց. եւ միւսներին էլ խոստացաւ
վեցերորդ տարին ազատել միանգամայն բոլոր կայքե֊
րովն ու պատուովը։

*Նախարարների ազատելու մասին Ղազար փարպեցին այսպէս է պատմում։*

Ղազար. Իւր թագաւոր դառնալու միեւնոյն տարին Պերոզն ուղարկեց իւր դայեկորդուն Ցղատվշնասպին եւ հրամայեց Հայոց նախարարներին կապանքից արձակել եւ ռոճիկ նշանակել նոցա Հրեւում. "Թող մնան, ասում է, այնտեղ այրուձիով միասին եւ կատարեն ինչոր կըդնէ նոցա վերայ Ցղատվշնասպի հայրն Աշտատ։"

Ցղատվշնասպը տեսնելով Հայ նախարարներին եւ հետզհետէ ծանօթանալով նոցա, սիրեց Արշաւիր Կամսարականին։

Տանելով նախարարներին Հրեւ՝ տուին նոցա Աշտատի ձեռքի տակ պատերազմի համար։ Եւ Հրեւի իշխանն՝ Հրեւ Շղոմշապուհ շատ սիրում էր Հայոց կապեալներին. եւ նոցա քաջութիւնը, լաւ բարքն ու ճարպիկութիւնը շատ անգամ գրով յայտնում էր դրան մեծամեծներին եւ իւր սիրելիներին, որոնք ‘արքունի’ հրապարակումն էին։

Ամենողորմ Աստուածը յիշեց բոլոր միաբանեալների նահատակութիւնն եւ պարգեւեց կապեալներին դառնալ Հայաստան Պերոզի թագաւո-
463. րութեան վեցերորդ տարին։

Եւ ապրեցաւ իւրաքանչիւրն ‘այնքան’ ինչքան որ Տէրը սահմանել էր. եւ վախճանեցան ու թաղուան իրենց հայրերի գերեզմաններում խաղաղութեամբ. եւ ամէնքն էլ առան սուրբ կաթուղիկոս Գիւտի օրհնութիւնը։

---

# ԳԼՈՒԽ ԻԲ․

## Կանայք:

**Կանանց դրութիւնն Հայաստանում առհասարակ թշուառ է երեւում։ Ազնիւ եւ կապեալ նախարարների կանայք զարմանալի համբերութեամբ տանում են շատ զրկողութիւններ։ Նոքա հոգս են տանում եւ իրենց զաւակների դաստիարակութեան մասին։**

> «Միով զօտեաւ ճշմարտութեան պնդեցին զմէջս արք եւ կանայք։»

Իսկ թէ բոլոր Հայաստանի մէջ ընդհանրապէս ՙորքան են՚ երանելի առաքինիների կանայքը՝ թէ՛ կապուածների եւ թէ՛ պատերազմում սպանուածների, ՙայդ՚ ես համարել չեմ կարող։ Մօտ հինգ հարիւրին անուանուն ճանչում եմ։ Թէ մեծ, թէ փոքր ամէնքն էլ առհասարակ միմիայն հաւատի առաքինութիւնն ունէին զգեցած. ՚եւ կանանց բնական տկարութիւնը զօրացնելով մարդիկներից աւելի քաջ եւ յաղթօղ գտնուան։ Եղիշէ. Ղազար.

Այն քնքոյշ կանայքն ՙառհասարակ՚ թէ նախարարների աղջիկներն եւ թէ մեծամեծների կանայքը՝ շարմղում հացի տեղ կորեկ էին ուտում. անարատ գինու տեղ՝ ջուրը չափով էին խմում. կերպասի եւ ոսկեկար հագուստի տեղ՝ հասարակ բրդէ հալաւ էին հագնում. եւ զանազան տեսակ անկողինների փոխարէն՝ չոր խոտի վերայ էին պառկում գտնի երեսին. եւ նոքա՝ որ յառաջ քնկոտ եւ քնասէր էին, հրեշտակների նման անքուն էին մնում։ Իւղով չօծեցին, սանտրով չկոկեցին իրենց գլխի մազերը։ Եւ ինչոր անկարելի է կանանց համար չկատարել, այն է՝ շատախօսութեանն եւ շուտ շուտ քօղի տակից այս կողմ այն կողմ աչք ձգելուն ՙնոյնպէս յաղթեցին՚. եւ իրենց լեզուներին կապ դրին աւելորդ խօսք չխօսելու համար։

Եղիշ. Թէպէտեւ ամէնքն էլ ձեռնասուն սպասաւորներ ունէին, բայց չէր երեւում նոցա մէջ թէ որն է տիկինն եւ որն աղախինը. ամէնքն էլ մէկ հագուստ ունէին եւ երկուսն էլ միակերպ չոր գետնի վերայ էին պառկում. մէկը միւսի համար տեղ չէր ձգում. չունէին նոքա ջոկ կերակուր եփողներ եւ ոչ առանձին հացթուխներ, ինչպէսոր իշխանների տներում կարգ էր. մէկը միւսի ձեռքին ջուր չէր ածում եւ ոչ էլ փոքրերը մեծերին երեսսրբիչ էին տալիս։ Այն քնքուշ կանանց ձեռքերին սապոն չդիպաւ եւ հանդէսի ժամանակ զուարթութեան համար իւղ չմօտեցաւ ‘նոցա’. առաջներն խտակ ամաններ չդրուան եւ ուրախութեան ‘համար’ բաժակակալներն յառաջ չեկան. Նոցա դռները մի խնդրակ էլ է չբացեց եւ պատուական մարգիկներից ոչոք չհրաւիրուաւ նոցա դահլիճները. Նոցա մոքից չանցաւ թէ մի ընտանի դայեակ կամ գոնէ մի հարազատ սիրելի ունին ‘աշխարհիս վերայ’։ Փոշի ու ծուխ նստաւ նորեկ հարսների սրահակների եւ լուացարանների վերայ. եւ սարդի ոստայններ ձգուան նոցա հարսնութեան սենեակներում. Նոցա սեղանի պարագաներն անշքացան, նոցա ապարանները քանդուան եւ կործանուան. եւ տակնուվրայ եղան նոցա ապահովութեան ամրոցները։ Չորացան սեւացան ծաղկալից բուրաստաններն եւ գետնի հետ հաւասար եղան գինեբեր այգիների տնկերը։ Նոքա ‘կանայք’ իրենց աչքերովը տեսան իրենց աշխատանքի յափշտակութիւնը եւ իրենց ականջներովը լսեցին իրենց սիրելիների չարչարանքը։ Նոցա գանձերն առան, թագաւորական արին. եւ չմնաց ամէնեւին մի զարդ անգամ նոցա երեսի վերայ։

Հայաստանի այն փափուկ մեծցած տիկինները*, որ պահուել մեծացել էին զանազան կակուղ ծածկոցների տակ եւ պատգարակների մէջ, միշտ բոբիկ եւ հետիոտս էին գնում ժամ՝ աղօթելու։ Նոքա, որ երեխայութիւնից հօրթի ըղուղով եւ որսի փափուկ մսով էին սնուել, վայրենիների նման խոտակեր կեանք էին վարում մեծ ուրախութեամբ։ Նոցա մարմինների կաշին սեւացաւ, ներկուաւ. որովհետեւ ցերեկն արեւից էին այրուում եւ բոլոր գիշերն էլ գետնի վերայ էին ընկած։ Նոցա բերանից միշտ եւ հանապազ սաղմոս էր լսուում. եւ նոցա գլխաւոր մխիթարանքը մարգարէների գրքեր կարդալն էր. կռիւ էին բացել եւ հակառակում էին կարեւոր մեղքերին. սիրով լուացին Նախանձի կապուտագոյն ներկուածը. ագահութեան արմատը կտրեցին եւ խոնարհութեամբ ոտնակոխ արին ամբարտաւանութիւնն ու հասան երկնաւոր բարձրութեան։

Այն այրի ‘կանայքը’, որ նոցա մէջն էին, նորից առաքինութեան հարսներ եղան. իսկ կապուած ‘Նախարարների’ կանայքը կամաւ կապեցին իրենց մարմնաւոր ցանկութիւններն եւ հաղորդակից եղան սուրբ կապեալների չարչարանքին։ Իրենց կեանքում՝ նմանեցան մահուամբ նահատակուած քաջերին, եւ հեռուից վարդապետ եւ մխիթարող եղան բանտարկուածներին։ Իրենց մատներով աշխատեցան ու կերակրուան, եւ թագաւորական նշանակած ռոճիկը տարէցտարի թոշակ էին անում եւ ուղարկում էին նոցա ‘մարդիկներին’ մխիթարելու։ Շատ ձմեռների ձիւներ հալան. գարուն եկաւ, նորեկ ծիծառներ հասան. կենցաղասէր մարդիկ տեսան

* Խանումները։

այդ եւ ուրախացան, բայց նոքա ՙկանայք՚ երբէ՛ք չկարողացան տեսնել իրենց անձկալիններին։ Գարնան ծաղիկները նոցա միտն էին ձգում իրենց հաւատարիմ ամուսիններին, բայց նոցա աչքերը կարօտ մնացին նոցա երեսի ցանկալի գեղեցկութիւնը տեսնելու։

Որսի բարակներն* անհետացան, որսորդների ճանապարհները փակուան ջնջուան։ Նոցա ՙմարդիկների՚ անունները բնագիրների մէջ յիշուան, եւ ո՛չմի տարեկան տօն չկարողացաւ բերել նոցա հեռու երկրից։ Նոցա ճաշակատեղերի վերայ նայեցին ՙկանայք՚ եւ լաց եղան. եւ ամենայն ատեանի մէջ յիշեցին նոցա անունները. շատ արձաններ դրած էին նոցա անուանը եւ նոցա վերայ նշանակուած կար իւրաքանչիւրի անունը։

Եւ երբ այսպէս ամէն կողմից նոցա մտքերն ալեկոծ էին լինում, նոքա ՙայնու ամենայնիւ՚ չթուլացան ամենեւին երկնաւոր առաքինութիւնից։ Է՛լ սովորութիւն չարին հարցնելու հեռուից եկած մէկին, թէ ե՞րբ կը լինի, որ տեսնինք մեր սիրելիներին. այլ այն էր նոցա փափագն եւ խնդրուածքն առ Աստուած՝ թէ ինչպէսոր սկսել են, այնպէս քաջ սրտով եւ լիքն երկնային սիրով գլուխ հանեն ՙիրենց սկսածը՚։

Ղազար. Եւ թէպէտ նահատակուած ու կապուած նախարարների կանայքը նեղութեան մէջ էին, սակայն իրենք սովորեցնում եւ մեծ հոգացողութեամբ սովորեցնել էին տալիս ու խրատում, ինչպէս քաջ մարդիկ ՙիրենց զաւակներին՚. եւ մանուկների ՙկրթութեան՚ առաջիկայ օգտաբեր խորհուրդները կատարում էին անդադար։

* Թազիները։

# ԳԼՈՒԽ ԻԳ.

## Գիւտ կաթողիկոս:

*Գիւտի կաթուղիկոսութեան ժամանակն՝ անարժան մարդիկ տանուտէրութիւն են գտնում: Բաբիկ Սիւնի, Առնակ Ամատունի եւ այլ բարեպաշտ նախարարք Գիւտի հետ խորհուրդ են անում ազատուել Պարսից ծառայութիւնից: Նոցա խորհուրդը յաջողութիւն չգտաւ: Գիւտը յայտնի կերպով յանդիմանում է ուրացեալներին: Մաղխազ Գադիշոն գանգատ է անում Պերոզին Գիւտի վերայ: Գիւտը կոչւում է Պարսից դուռը եւ զրկւում է կաթուղիկոսական պաշտօնից:*

*«Հովիւ քաջ զանձն իւր դնէ ի վերայ ոչխարաց:»*

Սուրբ Յովսէփ կաթուղիկոսի նահատակուե- Ղազար.
լուց յետոյ Հայոց կաթուղիկոսութիւնն անցաւ տէր Մելիտէին Մանազկերտեցեաց ցեղից. եւ նորանից յետոյ տէր Մովսէսին նոյն ցեղից. եւ յետոյ տէր Գիւտին, որ Տայոց գաւառի Արահեզայ գիւղից էր: Սա գիտուն մարդ էր. հայերէնից զատ գիտէր եւ յունարէն. պարզ սովորեցնում էր բոլոր ժողովրդին եւ 'կրթում էր' դէռեւս տղայութեան մէջ մնացած Մամիկոնեան, կամսարական եւ ուրիշ այլ ցեղերի մանուկներին: Ի Պերոզի Թագաւորու- Սեբէոս.
թեան տարիներում բարձուած էր մէջ տեղից ամէն տեսակ իշխանութիւն, բարեկարգութիւն եւ քրիստոնէական կարգ. եւ նեղութեան, հալածանքի ու անպատուութեան մնասներն էին թափւում իշխանների գլխին: Այնպէսոր մինչեւ անգամ ուրա- Ղազար.
ցութեամբ գնելով՝ Պարսիկներից տանուտէրութիւն՝ էին առնում անմիտ եւ մնասակար մարդիկ, 'որոնք' անպիտաններ 'էին' եւ ոչ քաջեր. միքանիսը սարերի աւազակների մէջ ուրացութեամբ թափառում էին. միքանիսը ծաղրի համար աստուածներ

էին գնում. մարդկութիւնից զուրկ էին եւ անարժան եւ ազնուականներին միանգամայն անծանօթ։

‘Այս պատճառով’ պէտք էր տեսնել ‘թէ ի՞նչպէս’ հեռացել էր Հայաստանի միջից լաւութիւնը. ‘ինչպէս’ կորել էր իմաստութիւնը, մեռել քաջութիւնը, ծածկուել պահ մտել քրիստոնէութիւնը։ Այն որ մի ժամանակ Հայոց զօրքն ուրիշ զօրքերի մէջ ամենից քաջանուն էր երեւում եւ զօրագլուխներն անուանի էին ու յաղթօղ, ‘այժմ’ ամէնքի համար ծաղրի ու կատակի բան էր դառել։ Մինչեւ անգամ ինքը Պերող թագաւորը յայտնի ասում էր թէ “անպիտան մարդ կամ յետնեալ զօրք թէոր իմ իշխանութեանս մէջ կայ, Ասորին է, բայց Ասորուց էլ անպիտանն ու յետնեալը Հայն է։„ Եւ այս լուրն արժանի է միայն լալու եւ ողբալու։

Լաւ մարդ թէպէտ կար այն ժամանակ, ինչպէս Բաբիկ Սիւնին եւ Առնակ Ամատունին եւ կամ սոցա նման մէկ ուրիշը, բայց ուրացեալ ամբարիշտ իշխանների կատաղութիւնից թագչում պահուում էին։ Աւելի կարեւոր էին համարում համբերութեամբ քրիստոնէութեան մէջ մեռնել՝ քանթէ փառք խնդրելու ձգտումներով ուրացութեան պատահել եւ կորչել։ Երբ տեսնում էին, որ ամբարշտութեան ‘ուրացութեան’ բոցը բորբոքուած է եւ մարդ չկայ, որ հանգցնէ, ժողովուում նստում էին Հայոց սուրբ քահանայապետի ‘Գիւտի’ մօտը, որ մի հնար գտնին օգնութիւն ստանալու եւ ապստամբելու։ Ծածուկ պատգամաւորներ ուղարկեցին մի երկու անգամ Ցունաց Լեւոն թագաւորի մօտ, բայց գործն երկարացաւ եւ խորհուրդները խափանուան ‘դարձեալ’։

Գիւտ կաթուղիկոսն սկսում էր այնուհետեւ յայտնի կերպով գրգռել ուրացողների դէմ եւ սիրել ու պատուել խեղճ հաւատացեալների կողմը. եւ գլխաւորապէս վատերի շարքն էր դրել ու արհամարում էր Գադիշոյ Մախազին, որ բոլոր ամբարիշտների զօրագլուխն ու քաջալերողն էր։ Սա չկարողանալով Գիւտի արհամարհանքներին դիմանալ՝ գնաց գանգատ արաւ Նորա վերայ Պերոզ թագաւորին եւ ասաց. "Այն մարդիկներին, որոնք ուզում են քու հաւատդ ընդունել եւ սիրել, Նա 'Գիւտը' կանչում է իւր մօտ եւ ոմանց բան տալով, ոմանց քաղցր խօսքերով խաբում ու յետ է կայնեցնում. Նաեւ մեզի, որ քեզ սիրում ենք եւ արեգակին ու կրակին երկրպագութիւն ենք անում, ատում է եւ անպատուում. ինքն էլ կայսեր հետ գործ ունի ու պատուական ընծաներով հպատակում է Նորան։

Պերոզը որ այս գանգատը լսեց Գադիշոյից, հրաման տուեց, որ կաթուղիկոսը Դուռը գայ։ Գիւտը յօժարութեամբ գնաց եւ Ներկայացաւ Դրան մեծամեծներին. ամէն մարդ տեսնում էր Նորա երեսն ինչպէս հրեշտակի երես. հեթանոսները պատկառում էին Նորանից, իսկ քրիստոնեաներն եւ Տիզբոնի, Խուժաստանի, Հրեւի եպիսկոպոսն ու բոլոր այն կողմերի քահանաներն եւ սարկաւագները վախում եւ դողում էին սրբի առաջ։ Պերոզը լսելով Գիւտի գալը՝ Յզատվշնասպին ղրկեց Նորա մօտ՝ Մախազի գանգատի բոլոր խօսքերը միառմի Նորան 'ասելու'։ Գիւտը պատասխան տուեց՝ թէ "Մախազի բոլոր ասածները ճշմարիտ չեն. որովհետեւ քրիստոնէութիւն եւ քրիստոնեայ մարդ սի-

րելս մէնակ այսօրուանից չեմ 'սկսել', այլ իմ ման-
կութիւնիցս. եւ բոլոր այն մարդիկներին, որոնք
ճշմարտութիւնը թողել են, ատում եմ. եւ ո՛վ որ
ճշմարտութիւնից հեռանալ է ուզեցել, թոյլ չէի
տալիս, որ այնպիսի մարդը կորչի։ Իսկ որ ասում են
թէ Յոյների հետ գնալ գալ ունիմ 'գործ ունիմ',
ինչպէս դա է կարծում, այդպէս չէ. որովհետեւ
գիտութիւնս եւ բանաւոր ուսումս Յունաց եր-
կրում եմ առել. այնտեղ շատ ծանօթներ եւ ու-
սումնակիցներ ունիմ. եւ այս ձեւի հագուստն էլ,
որ ունինք այնտեղից ենք գնում։ Իսկ ինչոր հնա-
զանդութեանը կըվերաբերի, այդ մեր օրէնքն էլ
հրամայում է տալ տէրերին ինչոր արժանն է եւ
պէտք։,,

Թագաւորն, իսկոյն հասկացաւ թէ ստոյգ եւ
մտացի է Նորա ասածը եւ Մախազը սուտ է խօսում
Նորա վերայ. բայց որ չլինի թէ իւր օրէնքի կար-
գերը թեթեւ երեւնան քրիստոնեաների աչքին,
ձայն չհանեց եւ մէկկողմ թողեց Մախազի խօսքե-
րը. եւ ղրկեց Գիւտին ասելու՝ թէ "մինչեւ հիմայ
քու իշխանութիւնդ առանց իմ հրամանիս ես ու-
նեցել եւ ծառայ մարդիկ են, որ քեզ այդպիսի
մեծ գործ են տուել. թէոր իմ կամքս կըկատարես
եւ արեգակին երկրպագութիւն կ'անես, այդ գործը
քեզ ու քու ցեղիդ՝ կամ ում որ դու կամենաս,
թուղթուգրով կըշնորհեմ մինչեւ յաւիտեան.
քեզ էլ պատուով կըթողնիմ երթաս Հայաստան.
իսկ եթէ չես յօժարանար, եպիսկոպոսութիւնդ
քեզանից կըխլեմ եւ այդ գործից կըհանեմ քեզի.
եւ անպատուութեամբ ու խայտառակուած կ'եր-
թաս դէպի քու տունդ եւ երկիրդ։,,

Գիւտ կաթուղիկոսը պատգամաւորին ասաց թէ “գնա՛ թագաւորին ասա՛ այս գործիս համար, որ ասում ես, թէ ինձանից կ՚առնիք, ուրախ եմ եւ ուզում եմ. բայց եպիսկոպոսական ձեռնադրութեանս համար, որ ասում ես թէ կ՚առնիմ, այդ ո՛չ թագաւորները կըհամարձակին եւ ո՛չ իշխաններից մի մարդ։ Իսկ հաւատքիդ համար որ հրամայում ես ինձ ընդունել եւ պատիւներ ես խոստանում, աշխարհիս վերայ ո՛չոքի պատիւն այնպէս մեծ չէ եւ իշխանութիւնն այնպէս հզօր ինչպէս այն, որ դու ունիս. բայց գարշելի հաւատքիդ պատճառով՝ դու որ թագաւոր ես եւ բոլորեքեան, որ այդ հաւատն ունին, իմ աչքիս մեռած էք ‘միանգամայն’. եւ քու պատիւդ ‘անգամ’ անպատուութիւն եմ համարում։„

Պատգամաւորը գնաց թագաւորի առաջն եւ ասաց. “չեմ համարձակում այն մարդու ասածները յանդգնաբար երկրորդել քու առաջդ, մինչեւ որ չհրամայես։„ Թագաւորն էլ հրամայեց համարձակութեամբ ասել ամէն բան. եւ լսելով Գիւտի բոլոր խօսածներին՝ ասաց. “Չեմ թողներ, որ համբուրեն քրիստոնեայք նորա կապանքներն եւ երկրպագութիւն անեն նորա ոսկորներին, ինչպէս որ նոցա սովորութիւնն է. միայն ասա՛ նորան թէ կա՛ց ուրոր ուզենաս, բայց կաթուղիկոսութեան գործից հեռացած ես եւ էլ քուկդ չէ։„

Այնուհետեւ իւր կամքով մնաց Գիւտ արքունի Դրանը ‘Տիզբոնում’. եւ շատ համարձակութեամբ պատուում էին նորան ոչմիայն քրիստոնեաները, այլ եւ հեթանոսները. միքանիսին եպիսկոպոս էր ձեռնադրում. ուրիշ շատերին քահանայութեան կարգ էր տալիս։ Եւ փառքով պատուով

Հեռացաւ գնաց Հայաստան եւ յառաջուանից աւելի շատ պատուով մնաց Հայաստանում. եւ վախճանեցաւ խորին ծերութեան մէջ ու 'թաղուաւ' իւր Հայրերի գերեզմանոցում Վանանդ[1] գաւառի Ողմու գիւղի մէջ. Ցփղոոս. կթգ. 'տասը* տարի Հայրապետութիւն անելուց յետոյ։

---

* Ըստ Վարդանայ "վեց տարի"

# ԳԼՈՒԽ ԻԴ.

## Վահան Մամիկոնեան:

*Վրաց Աշուշայ իշխանն ազատում է Համայեկի որդւոցը. (454 Թ.) Զուիկը կրթում է նոցա Վրաստանում: Ժամանակի իշխանները նախանձում են նոցա վիճակին: Նոցանից անդրանիկի՝ Վահան Մամիկոնեանի՝ յաջողումը: Ուրացեալ նախարարների բանսարկութիւնից ազատուելու համար Վահանն ուրանում է իւր հաւատը: Վրիւ Աստրին ամբաստանութիւն է անում Պերոզի առաջ Վահանի վերայ: Վահանը գնում է Պարսից Դուռը եւ վերադառնում է արդարացած:*

«Մեծ իսկ քան զամենայն՝ սէր ոսկւոյ յանձինս մարդոց գիտեմք:»

Յազկերտի թագաւորութեան եօթնեւտասն- Ղազար.
երորդ տարին Վրաց Աշուշայ իշխանն արքունի
Դրան մեծամեծներից իւրաքանչիւրին անհամար ըն-
ծաներ տալով՝ մանաւանդ Միհրներսէհին՝ խնդրեց
եւ ասել տուեց թագաւորին, որ նորան բաշխեն
Մամիկոնեան Համայեկի որդւոցը, որոնց առել էր
Վասակ դայեկների ձեռքից. եւ նոքա ՙդեռ՚ շատ
երեխայ էին: Մեծամեծներն էլ յօժարեցրին թա- 451.
գաւորին եւ նա կատարեց Աշուշայի խնդիրքը:

Մամիկոնեան Համայեկի կինն անուանի էր. եւ Հայաստանի կանանց մէջ ամենից բարձր էր ընտիր եւ խոհեմ կողմերով. նա մեծացրեց ՙՎրաստանում՚ եւ ուսում տուեց իւր այն որդւոցը, որոնց Աշուշան քեռի եւ պարգեւ խնդրեց Յազկերտից եւ բերեց իրենց մօր ՙԶուիկի մօտ.*՚ այնտեղ Վրաստանում մեծացան մանուկներն եւ ուսում առան ու ամէն բանի մէջ յառաջադէմ ու հռչակաւոր էին. ամէն հասկացող մարդու երեւում էին նոքա յաջողակ եւ

* Զուիկի քոյրն Աշուշայ բդեշխի կինն էր եւ անունն Անուշվռամ էր:

զարմանալի. առաջին 'որդու' անունն էր Վահան. երկրորդինը՝ Վասակ եւ երրորդինը՝ Արտաշէս. Նոքա մի ուրիշ եղբայր էլ ունէին Վարդ անունով, 'որ' մնացել էր Տայքում դայեակների մօտ։

Այն ժամանակուայ անպիտան իշխանները օրէց-օր տեսնում էին յառաջադիմութեան աճումը Մամիկոնեանների որդւոց մէջ. ըստորում նոքա 'որդիքը' խորհուրդի մէջ ականաւոր էին, խելացի եւ հնարագէտ. նետաձգութեան մէջ սիրուն եւ ինկ տեղին խփող. որսի մէջ թեթեւ շարժող եւ ամէնից յառաջ սպանող. երկու ձեռքից էլ յաջողակ էին. Նոցանով փայլում էին բոլոր Հայոց տանուտէրների ընթրիքները. Նոցանով զարդարւում էին ամէն տան մէջ օտարներն ու ընտանիները։ Նոքա 'որդիք' եւ հոգս էին քաշում Արշարունեաց տէր երանելի Արշաւիր Կամսարականի որդւոցը (որոնք Վարդանի դստեր ծնունդն են) խրատելու եւ ուղղութիւն տալու իրենց իմաստութեանն ու արուեստին համաձայն։ Եւ այսպիսի բարեմասնութիւններ անելուն աւելի արի էր Հմայեկի մեծ որդին Վահանը, որովհետեւ խելացի, առողջախորհուրդ եւ բարեսէր մարդ էր 'նա'։ Մինչեւ անգամ պարսիկ գործակալները, թէպէտ ակամայ, բայց սիրում եւ պատուում էին նորան եւ թագաւորի առաջը գովում էին այն մարդու լաւութիւնը. այնպէսոր թագաւորն ինքը կատարեալ ծանօթացաւ եւ լաւերի շարքն էր դընում նորան 'Վահանին' ու բոլորի առաջը գովում եւ պատուի արժանի էր համարում. բայց նորա նախահարց գործերը մտաբերելով քաշւում էր արժանաւոր պատիւը տալու նորան, մանաւանդ երբ վրայվրայ լսում էր այն նախանձորդների բանսար-

կութիւնը, որոնց սաստիկ վախեցնում էր Մամիկոնեան Վահանի յաջողութիւն ունենալը։

Մաղխազ Գադիշոն եւ ուրացողների խմբերը՝ երբ տեսնում էին Մամիկոնեան Վահանին լաւ կողմերով այնպէս երեւելի զարգացած, հնար էին փնտրում, թէ ինչպէս նորան ու նորա եղբայրներին կորցնել կարողանան. Պարսիկների միտն էին ձգում նորա նախահարց մասին՝ թէ նոցանից ո՞ր մէկը չէ խռովեցրել Պարսկաստանը. "ուրեմն, ասում էին, երբ եւ իցէ, սա էլ նոյն խռովութիւնները պիտի հանէ ձեր գլխին։,,

Վահանը որ իւր նախանձաւորների այսչափ գրգռութիւնը տեսաւ, գնաց Դուռը եւ հաւատը փոխեց. բայց այնու ամենայնիւ չկարողացաւ 'դորանով' կապել չարախօսների բերանը. որովհետեւ այն՝ որ մի ուղիղ խօսք խօսել 'անգամ' չգիտէր հրապարակի մէջ մի իշխանի առաջ, նորան 'Վահանին' ասում էր. "Նստում է, ասում էին, եւ ամէնքին քիթուպռունկ է շինում. ամէն բանի մէջ մտնում է եւ ո՛չըքի չի թողնում գործ կատարելու։ 'Վահանը' մի գործակից ունէր Վրիւ անունով՝ Ասորի մարդու որդի, որ չկարողանալով արքունի գործը կատարել, գանգատաւոր էր լինում Վահանի վերայ Պերոզի առաջ թէ "ոսկէհատի [1] գործին ինձ մօտիկ չի թողնում եւ ինքն է երկրի բոլոր ոսկին ժողովել ու մտածում է կայսեր մօտը կամ Հոնաց երկիրը գնալ եւ ոսկին նոցա տալով ուզում է զօրք խնդրել եւ գլուխ քաշել 'քեզանից։,, Վահանն էլ շուտով վեր առաւ բոլոր ոսկին ու գնաց Դուռն եւ ներկայացաւ թագաւորին։ Թագաւորն իմացաւ նորանից թէ ինչքան է ոսկին, որ

Նա բերել է իւր հետ, եւ շատ ուրախացաւ. յետոյ
Վահանի առաջը նորէն ասել տուեց Վրիւին այն
խօսքերը, որ յառաջ խօսել էր նորա վերայ։ Վա-
հանը պատասխանեց թագաւորին եւ ասում է. "Ես
այնքան կոյր՝ չեմ, որ Արեաց ոյժը տեսնել չկարո-
ղանամ. եւ որ՝ դորա ասելովն՝ ապստամբել եմ
ուզում, դա ինքն էլ լաւ գիտէ, որ մի ծառայ ան-
գամ չունիմ, որ ինձ համար խոհարարութիւն անէ
եւ երկու երեք պատանի անգամ ձեռքիս տակ չու-
նիմ, որ ինձ ծառայեն։ Իմ զօրքիս ոյժն այդքան է-
թէոր մի օտար երկիր փախչել ուզենայի, ինչո՞ւ
այսքան ոսկին այստեղ կըբերէի։" Եւ Վահանն ար-
դարացած դուրս եկաւ այն ատեանից եւ պատուով
ճանապարհ ընկաւ եկաւ Հայաստան։

# ԳԼՈՒԽ ԻԵ.

## Այստամբութիւն:

Վահան Մամիկոնեանը մտատանջութեան մէջ է ընկնում իւր ուրացութեան պատճառաւ։ Վրաց Վազգէն բդեշխի մահն եւ Վախթանգի ապստամբութիւնը. (482 թուին։) Հայոց նախարարները խորհուրդ են անում ապստամբելու։ Վահանը մերժում է նոցա խորհրդին։ Վարազշապուհ Ամատունին յայտնում է նախարարների գաղտնիքը Ատրվշնասպ մարզպանին։ Ատրվշնասպ եւ Վեհվեհնամ փախչում են Անի բերդը, եւ այնտեղից գնում ամրանում են Արտաշատու բերդում։ Ուխտապահները յափշտակում են Պարսից գրաստը. բռնում են Գադիշոյ Մաղխազին եւ պաշարում են Արտաշատու բերդը։ Ատրվշնասպն եւ Վեհվեհնամը գիշերով փախչում են Ատրպատական. եւ ուրացեալների թեւադրութեամբ գալիս են զօրքով ուխտապահների վերայ։

«Երկիւղ՝ թերահաւատութեան է նշանակ։»

Որովհետեւ նորա 'Վահանի' միտքն ուրացութեան վատ անուան պատճառով՝ խաղաղ չէր, ըստորում իւր հայրերի նման առերես էր կրում այդ անունը, ուստի յայտնեց ջերմ սիրողներին 'հաւատարիմներին' իւր այդ հոգսը եւ հնար էր փնտրում։ Եւ երբ այսպիսի վրդովմունքի մէջ շուարած մնացել էր, Վրաստանում Պերոզի թագաւորութեան քսանեւհինգերորդ տարին Վախթանգն սպաննեց Վազգէն բդեշխին։ Հայ քրիստոնեայ մարդիկ, որ այն տարին այնտեղ կռուի մէջ էին, երբ լսեցին Վրաց ապստամբութիւնը, վախեցան՝ չլինի թէ պարսիկ զօրագլուխները Հայոց գունդն առնին ու գումարեն 'Հոնաց դէմ'։ Բայց Քրիստոս այդպիսի կասկածանքից ազատեց նոցա եւ եկան Հայաստան՝ Շիրակ գաւառի այն դաշտը, ուր բնակւում էր Ատրվշնասպ Յոզմանդեան՝ Հայոց մարզպանն եւ նորա հետ էլ Հայոց հազարապետ Վեհվեհնամը։ Ղազար.

Այնտեղ միքանի հայ նախարարներ, որոնք գիտէին Վահանի տրտմիլն ու տարակուսիլը մոգութեան անուան համար, խորհուրդ արին իրենց մէջ եւ ասացին, թէ "շատ յարմար ժամանակ է, որ մենք էլ Պարսիկներին նեղութեան մէջ ձգենք:," Եւ մի գիշեր իրենց խորհուրդը յայտնեցին Մամիկոնեան Վահանին, որը լսելով 'նոցա միտքը' ասաց ամէնքին. "Թէպէտեւ ոչ ամէնքը՝ բայց միքանի մարդ, որ այս խորհրդի մէջ են, գիտեն թէ ինչպէս ամենայն ժամ նեղանում, հոգս եմ անում այս սուտ անուան վերայ, որն ատելութեամբ եմ կրում իմ մէջս. եւ կ'ուզենայի հնարք գտնել ազատելու ինձ այս խղճահարութիւնից, որն ինձ տանջում է. բայց այն՝ ինչոր դուք էք մտածում, դորա մասին ասել թէ "լաւ է, կատարեցէք" չեմ կարող. որովհետեւ Պարսիկների զօրութիւնն ես լաւ գիտեմ. միայն ամէնից աւելի դուք ինքերդ ձեզանից վախեցէք. որովհետեւ խաբեբայ ու վախկոտ մարդիկ էք. Թէ ինձ էք հարցնում, 'լաւ է' ձեր դատարկ եւ անպէտք խորհուրդների համար ինձ նեղութիւն չտաք:,,

Պատասխանեցին 'նախարարները' եւ ասում են. "Այդ ինչոր ասացիր, ինչպէսոր քու իմաստութեանդ վայելուչ է, ճշմարիտ եւ ուղիղ ասացիր. բայց մենք մեր յոյսը յառաջ Աստծու վերայ ենք դրել եւ յետոյ մեր մեռնելու վերայ 'մեր գլուխը դնելու վերայ'. ընտրում լաւ ենք համարում մի ժամ մեռնել քանթէ ամէն օր տեսնել եկեղեցու եւ քրիստոնեաների անպատուութիւնն ու քանդուիլը:," Մեռնելու անունը որ լսեցին Մամիկոնեան Վահանն եւ նորա եղբայրը Վասակ՝ սիրտ առան զօրացան: Խօսել սկսեց Վահանն եւ

տասում է.« Գիտէք որ իմ Վարդ եղբայրս Դուռն է, եւ թէոր Պարսիկների ականջին հասնի մեր խորհուրդը, նորան կըկապեն եւ կըչարչարեն. բայց ես էլ յօժար եմ մեռնել քան թէ ապրել այսպիսի ուրացութեան մէջ. եւ Ամենագէտը տեսնելով իմ զղջումս, թող մի բարի նշան ցոյց տայ եւ վերադարձնէ ողջամբ դէպի ինձ իմ Վարդ եղբօրս եւ արժանացնէ ինձ աչքովս տեսնել նորան եւ ուրախանալ:» Այս որ ասաց՝ ամէնքը միասին ոտքի ելան թէ ուրացեալներն եւ թէ՛ քրիստոնեաներն եւ աղօթք արին եւ ուղեցին սուրբ Աւետարան. եւ սուրբ Աթիկ քահանան, որ նոցա հետ բանակումն էր, Երեւելի Բջնի [1] գիւղից, բերեց սուրբ Աւետարանն եւ ամէն մէկը դրեց իւր ձեռքը նորա վերայ, երդում կերաւ. եւ հաստատուան ‘նորից’ Քրիստոսի հաւատի մէջ. ‘յետոյ’ ամէնն իւր օթեւանը գնաց հանգչելու: Ամատունեաց տոհմից մի Հայ նախարար Վարազշապուհ անունով՝ այն խորհուրդից դուրս գալով՝ Ցուգայի նման նոյն իսկ գիշերը գնաց եւ պատմեց մարզպանին եւ միւսներին բոլոր Հայոց նախարարների միաբանութեան խորհրդի, Աւետարանով երդուելու եւ ‘ուրիշ’ խօսուածների մասին: Արվշնասպն եւ ուրացող Հայերի խմբերն երբ լսեցին, սրտերը կոտրուան եւ չկարողացան քնել. առաւօտը փախան այնտեղից եւ գնացին բանակ դրին Անի [2] բերդի պարսպի մօտ եւ կասկածի մէջ մնացին այն ամբողջ ցերեկն այնտեղ. եւ գիշերը մարզպանն ու հազարապետը՝ եւ ովոր նոցա հետ միաբան էին, ամէնքը փախան. եւ որովհետեւ տեղեակ առաջնորդների հետ էին փախչում, ‘ուստի’ ազատուան հասան Արտաշատի բերդը: Հայոց նախարար-

ները հասան բռնեցին Պարսիկների բոլոր գրաստը ճանապարհի վերայ. եւ Գադիշոյ Մաղխազին էլ բռնեցին. եւ հասնելով Դուին[3], եկան պաշարեցին Արտաշատի բերդը. իսկ մարզպանն ու հազարապետը գիշերը գողտուկ բերդից դուրս եկան, փախան գնացին Ատրպատականի կողմերը։

Ստեփ. Եպիսկ. Թէպէտեւ Սիւնեաց իշխանութեան[4] երեւելի իշխանները հին խաբօղից խաբուելով աշխարհական, առօրեայ եւապականնելի փառք վայելեցին, բայց նոցանից միքանիսը, որ մարմնով եղբայրներ էին նոցա եւ արենակից, երկնային իմաստութեամբ իմաստնացան. նոցա անուննն է Բաբգէն, Բակուր եւ Ցաղդ. սոքա Սիւնեաց գնդից դուրս եկան եւ այն ուխտապահներին հետեւեցան, որոնց գլխաւորն էր քաջ Վահան Մամիկոնեանը. միայնթէ Գդիհոն անունով անհեդեդ հսկան, որը Սիւնեաց տէր էր եւ շատ ուժով մարդ էր, պատերազմ էր անում միւս Հայերի հետ, ՝այսինքն թէ հակառակ էր ուխտապահներին՚։

Ղազար. Ուրծայ[5] իշխանի Կողթեկի որդին Վարազներսէհը, որ Հայոց նախարարների հետ միասին երդում էր տուել, յետ կացնաւ սուրբ ուխտից եւ աւերեց Բռնավլիժի քաղաքն. ու քաղաքի բոլոր կարասին առաւ գնաց եւ ամրացաւ իւր իշխանութեան մէջ ՝գտնուօղ՚ Սագրայ բերդում։ Իսկ ամբարիշտ ՝ուրացեալ՚ հայ նախարարներից միքանիսը խրատ տուին Հայոց մարզպան Ատրվշնասպին եւ ասացին՝ թէ "դեռ նոքա ՝ուխտապահները՚ լաւ պատրաստուած չեն. թէ որ դու հիմայ շուտով գնաս նոցա վերայ, հեշտութեամբ կարող ես մի շատ մեծ գործ գլուխ հանել։" Մարզպանն հաւանեցաւ այդ խորհուրդին եւ շուտով զօրք առաւ եկաւ Հայաստան՝ Երասխ գետի ափը։

## ԳԼՈՒԽ ԻԶ.

### Ակոռու կռիւը։

*Ուխտապահները հաստատւում են Դուինի քաղաքում։ Սահակ ապետը Հայոց մարզպան է ընտրւում եւ Վահան Մամիկոնեանն Հայոց սպարապետ (482 թուին)։ Հայոց գունդը մի քանի նախարարների առաջնորդութեամբ դուրս է գալիս Ատրվշնասպի զօրքի դէմ։ Ակոռի գիւղի մօտ պատերազմ է լինում եւ Պարսիկներն յաղթւում են։ Պատերազմի ժամանակ Գարջոյլ Մաղխազն անցնում է Պարսից կողմը. Ատրվշնասպ սպանւում է։ Ուխտապահները վերադառնում են Դուին յաղթութեան տօն կատարելու եւ ձմեռն հանգստանալու։*

«Դիւրին է Աստուծոյ սակաւուք զբազմամբ իւր գործել։»

Ղազար.

Սահակ ապետը մարզպանութիւնն ընդունեց Հայերից եւ Վահանն էլ սպարապետութիւնը. այս երկուսին եւ հաղորդեցին թէ Պարսիկները գալիս են. եւ միտք արին թէ պէտք է շուտով նոցա ՙՊարսիկների՚ դէմը դուրս գալ. այս էլ մտածեցին, որ Սահակ մարզպանը, Վահան սպարապետը եւ մի քանի ուրիշ նախարարներ մնան նոյն իսկ ոստանում ՙԴուինում՚, որ կարողանան քաջալերել եւ բարի յոյս լինել գնացողների համար եւ ահ ու սրտաբեկութիւն պատճառել անօրէնների կողմին։ Եւ պատրաստուան այնուհետեւ պատերազմի համար Բաբգէն Սիւնին, ՙՎահան սպարապետի եղբայր՚ Վասակ Մամիկոնեանը, Գարջոյլ Մաղխազը, երանելի Արշաւիր Կամսարականի երկու որդիքը՝ Շիրակայ տէր Ներսէհը եւ ՙնորա եղբայր՚ Հրահատը, նաեւ Գնունեաց իշխան Ատոմը եւ նորա եղբայր Առաստամը եւ նոցա հետ էլ զօրք՝ մինչեւ չորս հարիւր մարդ։ ՙՅառաջ՚ մտան եկեղեցի, երկրպագութիւն տուին բոլորիս Ստեղծողին. երկրպագեցին եւ Յոհան կա-

Թուղիկոսին.[1] յետոյ մնասբարով ասին Սահակ ասպետին, Վահան զօրավարին եւ միւս ընկերակիցներին ‘ու գնացին’։ Վարազկերտ գիւղը որ եկան, լսեցին թէ Պարսից գունդը գետն անցել եւ թուով եօթն հազար է։ Վասակ քաջ սեպուհը, որովհետեւ այն օրն առաջապահ էր, յառաջ գնաց դէպի Կուռուակք գիւղը, որ Պարսից զօրքի հանգամանքներն իմանայ. Կուռուակքի մէջ գիշերը մնալու էր եկել Ատրվշնասպ. եւ առաւօտուն յանկարծ լսեց թէ Վասակ Մամիկոնեանն այնտեղ է։ Վասակն էլ նոցա մասին իմանալով՝ ազատուելու հնար մտածեց, որ իւր գունդն ապրեցնէ. այն միջոցին հրաման տուեց, որ երկ'երկու կամ երեք եւ աւելի մարդիկ անյայտ տեղերով եւ փողոցների միջով դուրս գան գիւղից եւ իրարուց ջոկջոկ շտապին Վարազկերտ գնալու, որտեղ Հայոց նախարարներն ու այրուձին էր։ Ինքը Վասակն էլ սուտասուտ բաներով խելքից հանում էր Ատրվշնասպին ‘եւ ասում’ թէ “ես քեզի պատգամ եմ բերել։„ Ատրվշնասպն այս լսելով թէեւ իւր մտքումն ուրախանում էր, բայց ‘մարդ’ ղրկեց խստութեամբ ասելու թէ “մի ապստամբ երկիր ինձի ի՞նչ պատգամ ունի ուղարկելու։„ Վասակն երբ իմացաւ, որ իւր այրուձին անվտանգ ազատուել է, Ատրվշնասպից եկած ‘մարդիկներին’ ասաց թէ “մենք արքունի գործերին ոչմի վնաս չենք տուել, դու հրամա՛ն տուր, որ մեր պատգամն ասենք, յետոյ տեսէ՛ք ինչոր արժանն է։„ Եւ պատգամաւորներին արձակելուց յետոյ ինքը ձին նստաւ եւ ասաց միւս Պարսիկներին թէ “ես ոչոքի կողմից ձեզի պատգամ բերած չեմ։„ Երբոր Հայոց զօրքի մօտն եկաւ, պատմեց նոցա թէ ‘Պարսիկների’

զօրքը մեծ է, բայց նոցա մէջ մեծ մասը անպիտաններ են։ Հայոց զօրքի մարդիկը խորհուրդ արին իրար մէջ եւ ասացին, թէ պէտք է դաշտից դէպի սարի կողմն անցնել, որ դիմադէմ կռուել կարողանանք․ եւ եթէ մի ուրիշ բան պատահի, մեզ համար սարի ամրութիւնները կարող են պահուելու տեղ լինել։ Եւ գնացին բանակ դրին Մասիսի տակ Ակոռի[2] գիւղի մօտ։

Միւս օրը, ինչպէս սովոր էին, գիշերուայ ժամը կանուխ կատարեցին. եւ պատրաստուած պատերազմի՝ զօրքը չորս մաս բաժանելով. միջին բաժնին զօրագլուխ դրին Սիւնեաց Բաբգէն իշխանին եւ Վասակ քաջ սեպուհին. ձախ կողմը տուին Գարջոյլ Մաղխազին. եւ աջ կողմը Գնունեաց Ատոմ իշխանին եւ նորա եղբօրն Առաստոմին. եւ այդ երկու մասի մէջ նշանակեցին Շիրակայ իշխան Ներսէհ Կամսարականին եւ նորա եղբօրը Հրահատին՝ պատրաստ գտնուելու, որ եթէ մի կողմը տկարանայ, նոքա օգնութիւն հասնին. ըստորում ամէնքն էլ վստահ էին այդ մարդոց ‘Կամսարականների’ վերայ՝ իբրեւ արդար եւ խօսք պահօղ մարդոց։ Այսպէս դասաւորելով չորս հարիւր մարդը՝ ամէնքը միաբերան աղաղակում էին. “Օգնէ՛ մեզ, ով փրկիչ Աստուած, երբէ՛ք թող չասեն հեթանոսները թէ ո՞ւր է նոցա Աստուածը։„

Հայերի սակաւութիւնը որ տեսան Պարսիկները, էլ ուրիշ բան չկարծեցին, այլ թէ՝ կամաւ խելքերը կորցրել են եւ եկել մահ գտնելու. երբոր յարձակուան Հայերի զօրքի վերայ, լաւ ձիաւորներն անցան յառաջ դէպի պատերազմի տեղը. ‘այս ժամանակ Գարջոյլն առաւ իւր հարիւր ‘մարդը’ եւ

*դրժելով Աւետարանի ուխտը՝ Պարսից զօրքի կողմն, անցաւ. եւ մնացին երեք հարիւր զօրք Հայոց մէջ, որոնք յառաջ քշելով՝ պատերազմի ընտիր մարդիկներին հէնց այնտեղ տեղնուտեղը գետին էին կործանում դիակթաւալ. եւ Պարսից զօրքի մնացած բազմութիւնն էլ ձորերի եւ քարուտ տեղերի մէջ քշեցին ցիրուցան արին։ Այնտեղ Վասակի եւ Բագրատի կողմում ընկան մեռան Արտաշնասպ մարզպանն եւ ուրիշ մարդիկ ուրացող Հայերից եւ շատ Պարսիկներ։ Նոյնպէս Ատոմի եւ Առաստոմի կողմում շատ քաջ մարդիկ մեռան։ Բայց ամէնից յառաջ Պարսից գնդից վրայ քշող մարդուն Նիզակով տուող սպանողն էր Հրահատը։ Եւ երբ նոքա այսպէս քաջալերուած էին, Գարջոյն առաւ կատիշների գունդն ուրիշ հայ մարդիկների եւ այն գնդի հետ, որ իւր մօտն էր, աներեւոյթ ձորերի խոր տեղերումն հասաւ Հայոց ուխտապահ զօրքի յետեւից եւ ուզում էր թիկունքի կողմից ընկնել նոցա վերայ։ Այնչափ բազմութեան վերայ յարձակուան երկու եղբարքը քիչ մարդիկներով. այնտեղ եւ Ներսէհ կամսարականը Նիզակով խփեց եւ մեռուց կատիշների զօրագլխին, որը հզօր եւ քաջ կռուող մարդ էր, եւ բոլոր գունդն էլ ջարդեց։*

*Եւ այն օրը Նշանաւոր ուրախութեան օր էր Քրիստոսին հաւատացողների համար եւ ամօթի օր Քրիստոսին ուրացողների համար։*

*Վարդգոշը Գնթունեաց տոհմից եւ Վասակը Սահառունեաց տոհմից լուսը բացուելու ժամանակ եկան գոյժ բերին Յոհան Հայրապետին եւ Հայոց աւագ իշխաններին ու ասացին՝ թէ «Պարսիկների կողմը զօրացաւ եւ Հայոց զօրքը յաղթուաւ. ու մե-*

ռան քաջ Վասակ Մամիկոնեանն եւ Բաբգէն Սիւնին եւ Ներսէհ Շիրակայ տէրն իւր Հրահատ եղբօրով եւ Ատոմ ու Առաստոմը. եւ Հայոց մնացած զօրքը բոլորն էլ Ակոռու ստորոտներում ընկան գէշ դարձան եւ միայն մենք մնացինք։„

Դեռ այս համբաւը չէր տարածուել Դուինի մէջ, իսկոյն եկաւ հասաւ մի աւետաբեր Գնունեաց տոհմից գալով՝ թէ “սուրբ Խաչի զօրութիւնը յաղթեց եւ միշտ յաղթելու է։„

Այս որ լսեցին Յոհան հայրապետն եւ աւագ իշխաններն ու բոլոր Հայ Նախարարներն եւ ռամիկները, միաբանութեամբ գնացին Աստծու տունն եւ գոհութիւն մատուցին։ Եւ ուրախութեան տօն կատարեցին. Նախ՝ աղքատներին կշտացնելու հոգս քաշեցին եւ ապա՝ իրենք էլ ուրախութիւն արին։ Եկաւ հասաւ պատերազմից եւ Հայոց զօրքն. եւ համբուրում էին իրարու։

Ձմեռը հանգստանալ սկսեցին. եւ հոգս էին անում՝ գարնան համար պատերազմի պատրաստութիւն տեսնելու։

---

# ԳԼՈՒԽ ԻԵ.

## *Ներսեհապատի կռիւը:*

Ուխտապահները Վրաց Թագաւորից օգնութիւն են խնդրում եւ չեն գտնում: Վահան Մամիկոնեանը մարդիկ է ուղարկում Հայոց նախարարներին օգնութեան կանչելու: Միհրանի նախարարներ ընդունում են Վահանի հրաւէրը: Պարսից զօրքը գալիս է Հեր եւ Զարեւանդ: Ուխտապահներն հանդիպում են նոցա Արտազ գաւառում եւ Ներսեհապատ գիւղի մօտ լինում է պատերազմ. (483:) Պարսիկները յաղթւում են եւ ուխտապահները մեծ աւարով վերադառնում են Դուին: Վարդ Մամիկոնեանն ազատւում է Պարսից կապանքից:

«Կեանք խորհեանց ի մահ համարեալ էին
եւ մահ խորհեանց անշուշտ կեանք:»

Ղազար. *Իբր շուտով դեսպան ուղարկեցին Վրաց Վախթանկ Թագաւորի մօտ, որ նոցա հօն տայ իւր խոստումին համաձայն. նա էլ դատարկ պատճառներով երկարացնում էր գործը. եւ յետոյ մի տեղից երեք հարիւր հօն ժողովեց եւ ուղարկեց Հայաստան. մի ամիս չանցած՝ դեռ ձմեռուայ միջին՝ նորէն շտապաւ յետ կանչեց ՙդատարկ՚ պատճառներ բերելով:*

*Եւ էլ մարդ չկար՝ որ Հայաստանին օգնել ուզենար: Վահան զօրավարը մարդ ղրկեց Արծրունեաց երեւելի ազգին եւ Անձեւացեաց ու Մոկաց գաւառի ցեղերին եւ Ռշտունեաց իշխաններին. իմաց տուեց նոցա, թէ ինչպէս յառաջ օգնեց Աստուած իւր վերայ յոյս դնօղներին. եւ ասում էր՝ "Ով որ փափաքում է անմահ կեանքը ժառանգել, թող դայ եկեղեցու անպատուութեան վրէժը խնդրելու. ՙայն անպատուութեան՚, որ նա երկար ժամանակ եւ տարիներ կրել է արհամարհօղ ուրացեալների երեսից: "Այս պատգամը որ լսեցին*

այն չորս գաւառի նախարարները, կէսը վրայ պրծան ուրախութեամբ ոչխարների հօտին հասնելու, միւսներն էլ այծերի խմբերի մէջ մտնելով դէպի արտաքին խաւարը գնացին անդարձութեամբ։ Անձեւացի նախարարներից մի Սեպուհ Յոհան անունով եւ մէկ ուրիշն էլ Ներսէհ Երուանդունի անունով՝ միաբանեցան այն բարի առաջարկութեանը եւ գնացին Մամիկոնեան զօրավարի գնդի հետ խառնուելու. Ճանապարհին՝ զատկի շաբաթ օրը մօտեցան Առեստ գիւղաքաղաքին. եւ յանկարծակի անակնունելի կերպով առաւօտեան կանուխ հասան նոցա վերայ Անձեւացեաց Սեւուկ իշխանն եւ Մոկաց Յոհան իշխանը շատ պրուձիով միասին։ Եւ իրար դէմ կռիւ բացին աներկիւղութեամբ. յառաջ Ներսէհ Երուանդունին յարձակուաւ Մոկաց Յոհան իշխանի վերայ եւ խփեց նորան նիզակով. նորան օգնում էր եւ Անձեւացեաց սեպուհ Յոհանը, եւ ձգեցին նորան 'Մոկաց Յոհանին' գետին։ Այս որ տեսան զօրքերն սկսեցին փախչել։

Այնուհետեւ եկան հասան 'Դուխն' Անձեւացեաց Յոհանն եւ Ներսէհ Երուանդունին. եւ երբ տեսան նոքա Յոհան կաթուղիկոսին՝ ուրախութեան տօն եւ Աստծուն ընդունելի պատարագներ մատուցին։* Եւ ձմեռուայ օրերն անցնելով հասան գարնան ժամանակին։ Լսեցին թէ Պարսկաստանից շատ զօրք է եկել Հեր եւ Զարեւանդ գաւառի սահմաններն եւ այդ զօրքի հրամանատարն ու գլխաւորն էլ սաղար փուշտիպանն է։

Եւ Հայոց զօրավար Վահանը Հայոց զօրքը գումարեց եւ շտապեցաւ դուրս գալ հէնց նոյն

* Մատաղ արին եւ պատարագ առան։

տեղերումը կռուելու, որ չլինի թէ Պարսիկների բազմութիւնը կարողանայ մտնել Հայաստանի միջին երկիրները. եկան հասան Արտազ գաւառն եւ մօտենալով Պարսից զօրքին՝ բանակ դրին մի գիւղում, որի անունն է Ներսէհապատ: Սուրբ Յոհան կաթուղիկոսը հրաման տուեց Հայոց բոլոր գնդին, որ ամբողջ գիշերն աղօթքի լինին. եւ գիշերային սովորական ժամերգութիւնը կատարեցին. եւ երբ լոյսը բացուաւ սուրբ կաթուղիկոսն օրհնեց ամէնքին:

Հայոց զօրավարն սկսեց այնուհետեւ ինչպէս պէտքն է ճակատի ամէնմի կողմը պատրաստել. միջին կողմը շատ զօրքով տուեց Սահակ մարզպանի ձեռքը. աջ թեւի կողմը տուեց Վահեւունի Բաշղին, Սիւնեաց Բաբգէնին, Գնունի Ատոմին եւ Պալունի Փափակին իրենց զօրքերով եւ էլի ուրիշ աւելորդով. ձախ կողմից՝ ուխտասէր Կամսարականների՝ Վահանի, Ներսէհի եւ Հրահատի աջ կողմից նոցա ամէնմէկի զօրքի հետ միասին պատրաստեց իրեն. պատրաստեց ուրիշ ընտիր մեծամեծ մարդիկ էլ զօրքով ու վրեն Վանանդեցու ձեռքի տակ. նոցա մօտ ղրկեց Արտակունեաց Պապին, որ ոստանիկ մարդ էր եւ Բաբոցի որդուն, որ ամէնմէկ մեծաւորին ասէ թէ “աւելի զօրեղ Պարսիկների, կատիշների եւ Սիւնեաց գնդի նշաններից երեւում է, որ մեր կողմն են գալիս. ուրեմն՝ դուք կամաց գնացէք, ուշադրութեամբ նայեցէք դէպի մեզ. թող յառաջ մենք վրայ պրծնինք. եւ եթէ մենք մեր կողմը շարժելու փախցնելու լինինք, յետոյ միւս կողմերը ‘թող յարձակուին’. մեր ու ձեր առաջը ‘նոքա’ չեն կարող կայնել:„

Թէպէտ ուզում էին զօրավարի հրամանին հա-

մաձայն կատարել, բայց Պարսից զօրքը շուարով հասաւ ուրաքանչիւր կողմի թեւի վրայ եւ չտուեց պարապ ժամանակ, այլ շարժեց աջ կողմը, որտեղ Վահեւունի Բաչղն էր, եւ փախուց. եւ Սահակ ասպետը նիզակով յարձակուաւ փուշտիպանների սաղարի վերայ. երկուսն էլ սխալ զարկին նիզակները. եւ ձիերն իրար մօտեցած լինելով նոքա՝ Սահակն եւ սաղարը՝ իրարու մազերից բռնեցին եւ կռուում էին. Վահանն էլ որ տեսաւ թէ Հայոց զօրքն իրար անցաւ եւ թոյլ գտնուաւ, ձէն տուեց Վրէն Վանանդացուն. "յառաջ քշէ՛, ասաց, թշնամիների վերայ եւ սկսէ՛ պատերազմել." Նա էլ վախեցած՝ ասաց թէ "ես չեմ կարող, ինձ վերայ հէչ յոյս մի՛ դներ: "Վահանն էլ սիրտ առաւ, երեսը խաչ հանեց եւ երկու կամսարականների հետ միասին յարձակուաւ նոցա մօտն հասած թշնամիների վերայ, եւ սաստիկ կերպով շարժեցին իրենց կողմն ու փախուցին. եւ շատ քաջ մարդիկների էլ գետին թափեցին: Եւ Հայոց գունդը բարի անունով ու շատ մեծ աւարով վերադարձաւ Յոհան կաթուղիկոսի մօտ, որն ուրախալից սրտով դուրս եկաւ յաղթող գնդի առաջ եւ օրհնեց նոցա: Այն ժամանակ երբ նոքա վերադառնում էին կռուի տեղից, յանկարծ մի ուրախութեան լուր տարածուաւ եւ խօսուում էր Հայոց բոլոր բանակի մէջ, 'թէ' եկաւ 'Վահան զօրավարի եղբայր' Վարդը մայրաքաղաքի 'Տիզբոնի' ամուր տեղերից, բարձր պարիսպներից եւ պահապանների ապարափակ բազմութիւնից ողջ առողջ ազատուելով՝ ոչ միայն ինքն անձամբ այլ եւ իւր ծառաների հետ միասին:

## ԳԼՈՒԽ ԻԸ.

### Վախթանգի խարդախութիւնը:

**Պարսից զօրքը մտնում է Վրաստան: Հայոց ուխտապահները գնում են Վրաց օգնութեան: Վախթանգը խաբեբելով նեղացնում է Հայերին: Կուր գետի մօտ լինում է պատերազմ եւ Հայերը յաղթւում ու ցիրուցան են լինում (483): Վահան Մամիկոնեանը փախչում է Տայք, իսկ Սահակ մարզպանն եւ Վասակ Մամիկոնեանն ընկնում են պատերազմում: Միհրան Պարսից զօրավարը գնում է Վահանի յետեւից եւ հաշտութիւն է առաջարկում: Միհրանը կոչւում է Պարսկաստան եւ Վահանը գալիս է Դուին (484): Սուտ լուր է գալիս Սահակ մարզպանի կենդանութեան մասին եւ Մուշեղ Մամիկոնեանը գնում է Վրաստան:**

«Բարի է յուսալ ի Տէր քան յուսալ ի մարդիկ:»

ՍԱՂՄՈՍ.

Ղազար. Այնուհետեւ եկան Ծաղկէոտն՝ կամենալով մի փոքր հանգստանալ Վարշակ ասուած ջերմուկի մօտ: Վրաց Վախթանգ թագաւորից դեսպան եկաւ ՙայդ միջոց՚, թէ "շատ մեծ զօրք է եկել Վրաստան, եւ ես տեսայ, որ չեմ կարող նոցա դէմը կայնել, փախայ ընկայ Հայոց սարերը Վրաց սահմանին մօտ եւ սպասում եմ ձեզ:„ Վախթանգը խաբէութեամբ նամակ էր գրել թէ "Հոնաց զօրքին էլ հրաման տուի գալու եւ դեռ չեն հասել, բայց մինչեւ ձեր գալը, նոքա կըգան կըհասնին:„

Որովհետեւ Վախթանգի հետ խաչով Աւետարանով երդում ունէին արած Հայոց զօրքը, վասնորոյ վերկացան առանց ուշանալու եկան Վրաց թագաւորի մօտ եւ մի փոքր միջոց մնացին Կանգարաց[1] գաւառում: Այնտեղ Վախթանգը խաբեբայական խօսքերով ժամանակ էր կորցնել տալիս Վահանին եւ ուրիշ հայ տանուտէրներին. ՙնա ա-

սում էր՝ թէ "Միհրանը որ ձեր գալը լսեց՝ վախիցը փախաւ Վրաստանի սահմաններից եւ Աղուանք գնաց.„ թէ "երկու օր էլ 'որ սպասէք', Հոնաց գունդը կըգայ կըհասնի„: Յետոյ երրորդ եւ չորրորդ օրն էր ձգում բանը. եւ յետոյ էլի վեց եօթն օր 'էր ասում': Նաեւ լրտեսներ էր ուղարկել տալիս Վրաց եւ Հայոց զօրքի միջից դէպի դաշտային տեղերը, շատ կրակների լոյսեր էր երեւեցնել տալիս եւ ծառերի կոճերը մարդու նման զինուորուած էր 'երեւցնել տալիս', Աղէքսանդր Մակեդոնացու խաբէութեան օրինակին 'հետեւելով': Նաեւ ասում էր՝ թէ "Հոնաց զօրքը մեզ մօտ այս սարերը չի գար, այլ ասում են թէ բե՛ր Հայերին ցոյց տուր մեզ այս դաշտիս վերայ, եթէ ոչ՝ մենք չենք հաւատում, որ Հայերը քեզ հետ միաբանուած լինին. ուրեմն եթէ դուք դաշտ չգաք, Հոնաց զօրքը տեղից շարժ չի գար. եւ Միհրանը կըվերադառնայ եւ Վրաստանը կ՚աւերէ. ինձ ձեր գալն էլ ի՞նչ օգուտ կըլինի:„

Հայոց գունդն էլ Աւետարանի երկիւղից աշխատում էր ամէն բան կատարել. ըստորում թէպէտեւ շատ շոք ժամանակ էր, այնու ամենայնիւ ստիպուան իջնել դէպի Ճարմանայնի դաշտը. հայ իշխաններից միքանիսը յաջող բան չէին համարում զօրքի իջնելը դէպի Վրաստան: Երեք չորս օր չանցած՝ Միհրանն էլ եկաւ հասաւ եւ իւր բանակը դրեց Հայոց բանակի դէմուդէմը Կուր գետի միւս կողմը: Հայոց բանակը Պարսից բանակից աւելի հեռու մի ուրիշ տեղ փոխուաւ. եւ այնտեղ ընտրեցին իրենց բնակութեան տեղ. եւ շատերը Հայոց գնդի միջից այն գիշերն Աւետարանի սարսափելի

երգումը մոռանալով՝ ծածուկ պատգամներ տալով առնելով Պարսից զօրքի մէջ գտնուող սիրելիների հետ, ՛ասում էին՚ թէ “մենք Հայոց զօրավար Վահանի բռնութիւնից, այլ ոչ թէ յօժարութեամբ մտել ենք այս գործի մէջ. մեր խելքն ու միտքը ձեզ հետ է. թէոր մեզի թողութիւն տաք, դուք եղէք մեր իշխանը:„

Վահան Մամիկոնեանը Վրաց թագաւորի սուտ եւ անպիտան խօսքերի վերայ բարկացած լինելով՝ երեք կամսարական եղբարց հետ դուրս եկաւ իւր կողմի թշնամու դէմ եւ փախուց. այնպէսոր շատերին տարան անցուցին Կուր գետի միւս կողմը եւ Պարսից զօրքից շատերին կոտորեցին քաջութեամբ: Եւ երբ այսպէս կռւում էր ՛Վահան՚, յանկարծակի սկսեցին փախչել առհասարակ բոլոր գնդերը թէ՛ Հայերի եւ թէ՛ Վրացւոց. Նենգաւորների մեծ մասն իրարու գոռում էին անհանգստութեամբ՝ թէ “Հայերը փախան, գլուխներդ ազատեցէ՛ք.„ եւ դարձնելով այնուհետեւ ձիերի երասանակները նոքա էլ գնում էին փախստական Հայերի յետեւից: Եւ Վահանն եկաւ պատահեցաւ Սիւնեաց Բաբգէնին, որ Պարսիկների ձեռքից վիրաւորուած ընկած մնացել էր. նստեցուց նորան իւր ձիու վերայ եւ ազատեց նորա կեանքը պատերազմի միջից: Բայց նոքա, որոնք արժանի եղան ընտրութեանը Սահակ ասպետի եւ Վասակ Մամիկոնեանի հետ՝ նոյն օրը մեռան. իսկ Հայոց զօրքը, որոնց հետ եւ Վրացւոց անպիտան զօրքն իրենց Վախթանգ թագաւորի հետ միասին՝ փախան ցիրուցան եղան: Նոցա յետեւից ընկած Պարսից զօրքը շատերին կոտորեց. եւ շատերն էլ զանազան տեղեր ըն-

կած ազատութեան. բայց Հրահատ կամսարականին ձին տարել էր եւ վար ձգել. ՙայնպէս որ՚ երբ նա դեռ ոտքով էր գնում՝ Պարսիկները վերայ հասան եւ բռնեցին բերին Միհրանի մօտ. ՚յետոյ յետեւից Ստեփ. եպիսկ.
ընկան եւ բռնեցին Ցազդ անունով գովելի սեպուհին: ՚Միհրանը տեսաւ եւ շատ ուրախացաւ. եւ Ղազար.
կապեց ու զգուշութեամբ պահել տուեց, եւ Հայաստանում ուրոր գնում էր՝ հետը ման էր ածում. ՚եւ ամէն օր յառաջ էր բերել տալիս կա- Ստեփ. եպիսկ.
պանքներով եւ դառն տանջանքներով չարչարում, անպատուում էր նոցա եւ հնարք էր փնտրում իրենց հաւատին դարձնել. ՚իսկ Վահանը մի ժամա- Ղազար.
նակ գնաց Տայքի ամուր տեղերը, որտեղ եւ ժողովուան նորա մօտ անպիտան հայ փախստականները, բայց երկու կամսարականները միշտ նորա հետ էին:

Միհրանն իւր գնդով նորա յետեւից եկաւ եւ աշխատում էր համոզել եւ նուաճել ՙՎահանին՚. եւ Պարսից զօրքի բանակը Դուռ[2] գիւղումն էր Պարսից եւ Յունաց հողերի սահմանի վերայ: Եւ Հայոց զօրավարը նորան մօտիկ համարեա երկու հրասախ հեռու մի գիւղի մէջ էր Մկնառիճ[3] անունով, մօտ հարիւր մարդ հետը. եւ այնտեղն էլ Պարսից իշխանութեան մէջն էր: Այնքան զօրաւոր մարդիկների բազմութեան մէջ գողն ու սարսափը պատել էր Միհրանին եւ չէր վստահանում վերայ գնալ, այլ աղաչական խօսքերով պատգամներ էր ղրկում նորան ՙՎահանի՚ թէ "մի՛ փախստուիր եւ մեծ թագաւորի հպատակութիւնից դուրս մի՛ գար եւ Հայաստանը կորուստների մէջ մի՛ ձգեր, եկ հնազանդիր թագաւորին եւ ես կ'աղաչեմ թագաւորին եւ

կըհաշտեցնեմ քեզ հետ, եւ ինչոր արժանն է քեզի տալու՝ կ՚աշխատիմ որ տայ։»

Վահանն էլ պատասխան տուեց եւ ասում է Միհրանին. «Մի թագաւոր մարդ, որ արդար աչքով չնայէ իւր հպատակների վերայ եւ արդար լսողութեամբ ականջ չդնէ մէկի խօսքին եւ ինչպէսոր արժանն է իրաւասէր հոգւով քննութիւն չանէ, մանաւանդ՝ որ ամենից վատն է, միշտ կամենայ ուրիշի աչքով տեսնել եւ ուրիշի ականջով լսել, այնպիսի թագաւորին ծառայելը ծանր է եւ անախորժ եւ երկիւղալի. որովհետեւ ինչ տէր որ իւր ծառաների միջից լաւն ու վատը ջոկել չգիտէ, նա դժուարութեամբ կարող է լաւ ծառայի տէր լինել։ Տես Հայաստանն ինչպէս մեծ եւ պիտանի երկիր է. ցոյց տուր ինձ այդպիսի երկրի մէջ մի մարդու, որ արժանաւորութեամբ հասած լինէր տանուտէրութեան. աւազակ, անպիտան, հացկատակ եւ վատ տոհմի մարդիկ գալիս այնպիսի մեծ թագաւորութիւնը խաբում են եւ կրակի համար փառք ու տէրութիւն են գնում ՚ձեզանից՚. եւ յետոյ ձեզանից հեռու գնալով վաճառքի ու վաճառականի վերայ միակերպ ծաղր են անում. իսկ լաւութիւն եւ քաջութիւն եւ միտք եւ գիտութիւն, որոնցով երկիր է շինուում եւ պահպանուում, պահանջող չկայ եւ արհամարհուած է։ Ես ահա երկու կռիւ արել եմ ձեզ, Պարսիկներիդ հետ, եւ երրորդն էլ այս է, որ քեզ հետ արինք. երկու կռիւն այնպիսի քաջ ու երեւելի մարդիկների հետ արինք, որ թագաւորն ինքը եւ բոլոր Պարսիկները ճանաչում էին թէ ինչպէս մարդիկ էին. մէկ օտար մարդ անգամ մեզ օգնած չէր, բայց միայն այս Հայերն էին այնպիսի մեծ գործ

կատարօղը, ոչ թէ շատ պյրուձիով՝ այլ հարիւր կամ աւելի պակաս մարդով հազար երկու հազար մարդ փախուցինք։ Այս կռուի մէջն էլ՝ չլինի՝ մըտքերիցդ անցնէք. եւ պարծենաք թէ աւելի քաջութեամբ յաղթեցիք մեզի, այլ մեր երկպառակութիւնից եւ նենգութիւններից եղաւ այդ վնասը։ Այն մարդիկը, որոնց դուք վատ տոհմերից ու անպիտանների միջից Հայաստանի վերայ իշխան էք դրել, նոքա իրենց յետնութեամբը կորուցին Հայաստանի միջից քաջութիւնն ու բարի անունն եւ լաւութիւնը. ըստորում ինչ գնդի զօրավարը որ վատ է, այն գնդին լաւ լինելու հնար չկայ. եւ ինչ աշխարհի իշխանները որ յետին են, այն աշխարհը յառաջադէմ ու անուանի լինել չի կարող։ Իսկ իմ մասին՝ դուք ամէնքդ էլ գիտէք, որ ես երեխայ ժամանակս եմ վրկուել հօրիցս եւ մեծերիցս. ոչ նոցա ծառայութիւնները, որ Արեաց երկրին ցոյց են տուել, գիտեմ, եւ ոչ էլ նոցա սխալմունքներին մասնակից եմ եղել. բայց երբ ես հասակս առայ եւ ձեր Արեաց տիրոջը ծառայելուն արժանի եղայ, միտքս դրի արդար հոգւով տիրոջս եւ ձեզ ծառայութիւն անեմ. ինչքան ես լաւի մասին էի հոգս քաշում եւ լաւ գործերի մէջ յառաջ էի գնում, այդ անարժան վատ Հայ իշխաններն ինչ տեսակ բանսարկութիւն ասես անում էին եւ դուք ինքերդ ուշադրութեամբ ականջ էիք դնում եւ ինձ վերայ ծուռն էիք նայում. եւ երբ ոչ մի հնար չգտայ՝ մի չար խորհուրդ անցուցի մտքիցս եւ ճշմարտութիւնն ուրացայ ու սուտութեանն եւ մոլորութեանն երկրպագութիւն արի, որն այսօր ձեր եւ բոլոր աշխարհիս առաջ խոստովանում եմ թէ

տութիւն է եւ պիղծ խաբէութիւն. եւ այն կործանումիցս յետոյ վախիցս ամենայն օր մաշուում էի՝ չլինի թէ այս մեղքովս մեռնիմ. ՙուստի՚ հեռաքշեցի թագաւորների երկիւղը. ուրացութեան խիղճը ոտքիս տակ առայ եւ աչքերս բացուան. այսուհետեւ ուրախ եմ ես. եւ պատրաստ եմ հալածանքի, աղքատութեան, ցաւերի եւ մահուան առաջ. բստորում ինչ բանի որ հանդիպելու լինիմ քրիստոնէութեամբ, ուրախ եմ եւ առանց ահի։ Բայց դու ինչոր ասացիր, արդարեւ կարող ես կատարել եւ թագաւորը յօժար կըլինի մեզ նուաճելու։ ՙՄիայն թէ՚ ամենից յառաջ թող նա քրիստոնէութիւնը շնորհէ Հայաստանին. եւ այդ աղանդի վաճառքը* կտրէ վերցնէ մեր երկրից. եւ լաւ մարդն ու անպիտանը ջոկեցէ՛ք. եւ ամենմէկից գործ պահանջեցէ՛ք, այլ ո՛չ կատակաբանութիւն ՙքեօչակութիւն՚. եւ գործին նայելով օգուտին համաձայն տուէք վարձ, այլ ո՛չ խաբէբայական լկտէբանութեանը ՙնայելով՚։ Եւ կարող էք գրով կնքով վեկայել թէ “մեր բռնութիւնից եղաւ ձեր յանցումը եւ ո՛չ թէ ձեր անհնազանդութիւնից եւ յանդըգնութիւնից։,, Եւ տոհմաւոր մարդուն տոհմաւորի պէս պատուեցէք, վատ տոհմաւորին էլ ինչպէս անտոհմակ. եւ եթէ այդպէսնուաճելու լինիք մեզ, մեր բնիկ տէրերն էք եւ կըհպատակինք ձեզի։ Իսկ թէոր յետնեալ մարդիկներին լաւերի տեղն ընդունէք եւ լաւերին յետ տանիք եւ այս երկրի իշխանութիւնները, ինչպէսոր իրաւունքն է, արժանաւոր ու պիտանի մարդիկներին չտաք, մենք, որ ապստամբել ենք, ո՛չ թէ գիտէինք որ Պարսիկնե-

* Հաւատափոխութիւնը։

րին դէմ կենալ կարող ենք, այլ միայն մեռնելն ենք աչքերս առել եւ նոյն բանին էլ պատրաստ ենք եւ աւելի ուրախ. որովհետեւ անուանի ու ընտիր մահով կըմեռնինք քրիստոնէութեան մէջ քան թէ ‘կըկամենանք’ ուրացութեամբ անցաւոր փառքեր գնել:,,

Եւ երբոր Միհրանն եւ Հայոց զօրավարն այսպէս խօսում էին իրար հետ, յանկարծ դեսպան եկաւ Դունից եւ Միհրանին Դուռն էր կանչում շտապով: Նա էլ բոլոր բազմութեամբ գնաց շտապով դէպի Դուռը. իւր հետ առաւ կապուած Հրահատին եւ ուրիշ կապեալներին: Նորա ‘Հրահատի’ եղբայրը՝ Շիրակայ տէր Ներսէհը՝ Հրահատի բռնուելու օրից դեռ լացը չէր կտրել եւ անկողնի վերայ չէր հանգստացել եւ առանց արտասուքի բերանը հացի կտոր չէր դրել. եւ գնաց Պարսից գնդի յետեւից՝ միտք անելով թէ ով գիտէ, կարելի է մի տեղ լրտեսել կարողանայ եւ ազատէ նորան. եւ երբ մօտեցան մի օթեւան հեռու՝ Գրիգոր Նահատակի տան սուրբ տեղին, բարձր ձայնով եւ արտասուքով լցուած կանչեց այն սրբի անունն ասելով. “Տէր Գրիգոր, դու որ մեր մեղքերի ամբարշտութեան սաստիկ մէգը փարատեցիր քշեցիր Հայաստանից, փարատէ՛ սրտիս միջից եւ իմ տըրտմութեանս սաստիկ մէգը եւ արժանի արա ինձ տեսնել իմ փափագելի եղբօրս առողջ մարմնով ինձ մօտ:,, Նա էլ լսեց եւ շուտով ազատեց կապուած Հրահատին պահապանների ձեռքից, ‘եւ բերեց’ խաղաղութեամբ իւր սիրելի եղբօր մօտ եւ իւր հայրենիքը:

Պարսից զօրագլուխ Միհրանը տեսնելով Հրա-

հատ կամնարականի աներկիւղ եւ քաջասիրտ դուրս գալ փախչիլը՝ հրաման տուեց բերել․ Սիւնեաց երանելի սեպուհ Ցաղգին, եւ նոյն իսկ օրն իւր առաջը սրով կտրել տուեց երանելու գլուխը սուրբ Գրիգորի մատուռի տեղին մօտ՝ Թագրեւանդ գաւառի Թագաւան գիւղումը՝ Նպատ սարի ստորոտը՝ Հոռի ամսու ԺԶ․ին. եւ նորա նշխարներն ամփոփեցին այնտեղ հէնց սուրբ Գրիգորի մատուռի մէջ։

Եւ Վահան զօրավարն ելաւ եկաւ Այրարատ գաւառը. եւ Վաղարշապատ քաղաքում ուխտապահ նախարարների հետ միասին իւր ուխտացած մատաղներն անելուց յետոյ՝ նախ աղքատներին կերակրեցին եւ ապա իրենք ուրախութիւն արին։ Եւ այնտեղից եկան Հայոց իսկական մայրաքաղաքը Դուին ձմեռուայ ժամանակն հանգստանալու։

‘Այդ միջոցին՝ յանկարծ Վրաստանի կողմից միքանի դիւոտած խեղագարուած մարդիկ եկան եւ ասում են ամէնքին՝ թէ "Սահակ ասպետն եւ Վասակ սեպուհը կենդանի եւ ողջ են. եւ մեզ ուղարկեցին ձեզ մօտ ‘ասելու’ թէ "դուք որ Վրացւոց պատերազմիցը փախաք, մենք մնացել էինք կռուի տեղումը սաստիկ վիրաւորուած ընկած. եւ Աստուա Նախախնամութեամբ մի քահանայ կամենալով մեզի ապրեցնել՝ բերեց մեզ իւր վանքը եւ պահեց ծածկութեամբ շատ օրեր իւր մօտ եւ բժշկեց մեզ. այժմ լաւացել ենք. եւ կամենում են մեզ բռնել. եւ այս սուրբ վանականը ծածուկ մնան է ածում մեզ շատ անապատ տեղերով եւ խոր ձորերի ու քարանձաւների միջով, բայց ձեզ մօտ այդ կողմը բերել վախենում է։ Ուրեմն՝ շտապեցէք այդ տեղից մեծ զօրք ղրկեցէք եւ մի հաւատարիմ զօրա-

գլուխ, որ մեզ բերէ ձեզ մօտ, որպէսզի ձեզ մօտ գալով միանանք ու ճշմարիտ հաւատի համար վրէժխնդիր լինինք։„

Այդ անմիտ մարդոց այսպիսի սատանայական խօսուածքը որ լսեց Հայոց զօրավարն ասաց. “Այդ խօսքերը վատախորհուրդ եւ անիմաստ մարդու խօսքեր են. բայց որ ուրիշներն ինձ բարենախանձ չհամարեն, ահա զօրքն ու նախարարները ձեր առաջն են. ո՛վոր գնալ կամենայ՝ ես արգելելու չեմ. միայն չմոռանա՛ք եւ լա՛ւ գիտցէք թէ ինչքան վնաս կը լինի Հայաստանին այդ ձեր անօգուտ ճանապարհորդութիւնից։„

Այնժամանակ անխորհուրդ եւ թեթեւամիտ մարդիկ, մանաւանդ այն նահատակեալների կանայքն ու ընտանիքն եւ դայեակները՝ յօժարեցուցին Մամիկոնեան սեպուհ Մուշեղին, եւ շատ պրուձիով ուղարկեցին այն խաբեբայ մարդիկների հետ անօգուտ գործի համար եւ այնպիսի մի տեղ, որ իրենք էլ չգիտէին. եւ ման էին ածում Մուշեղին ու նորա զօրքին մինչեւ ձմեռուայ վերջը։

---

## ԳԼՈՒԽ ԻԹ.

### Պերոզի մահը:

**Զաւմհեր Հազարաւուխտը զօրքով մտնում է Հայաստան եւ բանակ դնում Դուինի քաղաքի մօտ. (484 Թուին։) Հայերը դուրս եկան պատերազմ, բայց չկարողացան վերջացնել. Վահան Մամիկոնեանն իւր գնդովը հեռացաւ Խաղտեաց ամուր տեղերը։ Զաւմհեր Վահանի յետեւն է ընկնում, բայց չի կարողանում բռնել։ Կամսարական Հրահատի եւ Ներսեհի կանայք գերի են ընկնում նորա ձեռքը։ Զաւմհերը գնում է Վրաստան. նորա տեղը մնում է Շապուհ Միհրանեան։ Վահանը զանազան քաջութիւններով անհանգիստ է անում Շապուհին։ Պարսից գունդը մեծ կորուստների մէջ է ընկնում. Գդիհոն Սիւնին ազատուում է ուխտադրուժների ձեռքից։ Պարսիկներն աշխատում են Դուին հանել եւ ազատել Վահանի ձեռքից։ Պերոզի մահը (484 Թուին)։ Շապուհ վերադառնում է Պարսկաստան եւ Կամսարականների կանանցը թողնում է Բագրեւանդում։ Վահան Մամիկոնեանը վերադառնում է Դուին։**

> «Թագաւոր ոչ միայն զիւրն տայէ ըղ-պարտիս, այլ եւ որոց եղեւ պատճառք ի կորուստ։»

Ղազար. Գարնան ժամանակը որ եկաւ՝ յանկարծակի մեծ զօրքով մեր երկիրը մտաւ Զաւմիհր Հազարաւուխտ. շուտով Երասխ գետի կամուրջն անցաւ ու բնակութիւն դրեց Արտաշատ գիւղաքաղաքում։

Որովհետեւ Հայոց ուխտանենգ մարդիկը իմաց էին տուել նորան թէ գնդի կէսը Վրաստան է գնացել, միւս օրը դիմեց Հայոց զօրավարի վրայ. Դուին քաղաքի մօտ ճակատի 'կռուի' տեղը որոշեց՝ Խաւրովակերտի անտառի մէջտեղից անցնելով դէպի դաստակերտը մինչեւ սարի այն կողմը, որ Ջրվէժ են ասում։

Վահանը որ Պարսից զօրքի այսչափ բազմութիւնը տեսաւ, թէեւ գիտէր որ իրենք այնպէս քիչ են, որ դէմ կենալ չեն կարողանար, այնու ամենայ-

նիւ այնքան էլ չվախեցաւ, այլ իւրեանց ունեցած զօրքը տուին մի մի կամ երկու երկու նախարարների ձեռք եւ յարձակուան. ու քաջութեամբ առնելով Պարսից գնդից մի մասը՝ շատ ընտիր մարդոց գերին Թափեցին. եւ իրենք իրենց ձիերի երասանակները դարձնելով քաջութեամբ հեռացան այնտեղից. բայց այնտեղ նահատակուան հայ նախարարներից երկուսը՝ Դիմաքսեան տոհմից երանելի Որդին եւ Սահառունեաց տոհմից երանելի Քաջաջը. սուրբ Յովհան հայրապետին էլ ձիուցը վար ձգեցին եւ Թողին կիսամահ:

Նոյն օրն եկաւ հասաւ իւր զօրքով Մուշեղ սեպուհը եւ չկարողանալով վրայ հասնել պատերազմի գործին՝ յետ գնաց:

Այսպէս՝ Հայոց զօրքն այս ու այն կողմ ցրուելով ամէնն իւր տեղը գնաց. Հայոց զօրավարն ինքն եւ նախարարներն էլ գնացին մի ժամանակ հանգստանալու Խաղտեաց սահմանների ամուր տեղերում:

Հազարաւուխտը քշեց բոլոր զօրքը, շատ Հայոց ամուր տեղեր առաւ, քանդեց, աւերեց եւ անցաւ. շատերին էլ կոտորելով արեան ճապաղիներ հանեց. հնարք էր փնտրում, որ կամ բռնէ քաջ Վահան Մամիկոնեանին, կամ սպանէ նորան պատերազմի մէջ ու միամտի՞ Եւ գնաց Յոքաղ [1] ու բանակ դրեց Գիւղիկ եւ Վարգաշէն գիւղերի մօտ. միւս օրը լսեց թէ Վահանը նորանից մօտիկ է Վարայրվարդյնում մէկ Ուռումի տանը Շաղագոմ [2] գաւառի մէջ: Տեղեակ առաջնորդների օգնութեամբ բարի լուսին հասաւ եւ գտաւ այնտեղ ուրիշ մարդիկների խումբ, որի մէջ Ներսէհ ու Հրահատ կամսարականների կանայքն էլ կային: Հայ ռամիկ

մարդիկներից շատերին սպանեցին եւ Կամսարականների կանանց էլ բռնեցին տարան Պարսից բանակը. բայց Հայոց զօրավարին չպատահեցան եւ յետ դարձան։ Կամսարականների կանանց մասին ստոյգ տեղեկանալով, որ իրաւի նոցա կանայքն են, ուրախացաւ 'Հազարաւուխտ' մտածելով թէ «ահա նոցանով անպատճառ կըկարողանամ որսալ եւ բըռնել Վահանին։ Հրամայեց, որ կանանցը քրիստոնեաների օրէնքին համաձայն պահպանեն սրբութեամբ եւ մեծ զգուշութեամբ. եւ ինքը Ցղքաղից իջաւ գնաց Բասեն գաւառը եւ բանակ դրեց Դուգիւղի մօտ այն աղբերակների դաշտում, որ Արծաթաղբիւր[3] են կոչում։ Այնտեղ մի օր Տալուց յետոյ Դունից դեսպան եկաւ նորա մօտ եւ իմաց տուեց, որ ինքը 'Թագաւորը' Հեփթաղի վերայ է գնում եւ հրամայում էր, որ նա էլ 'Հազարաւուխտ' Վրաստան գնայ եւ Վրացւոց Վախթանգ թագաւորին բռնէ կամ սպանէ կամ այն երկրից փախցնէ։ Շապուհին էլ Միհրանեան տոհմից՝ Հայաստանում թողնի մարզպան զօրքի հետ միասին։

Հազարաւուխտը գնաց, այնտեղ 'Վրաստանում' ժողովեց իւր մօտ ուխտանենգ մարդիկներին. մէկին թագաւորութիւն խոստացաւ, միւսին՝ գահ, պատիւ ու շատ պարգեւներ եւ ուրիշ շատերին էլ՝ ամէնին ինչոր պէտք էր։ Եւ միաբանեցնելով շատերին, Վրաստանի միջից մի գունդ պատրաստեց։ Այս որ տեսաւ Վախթանգը, փախաւ Վրաստանից եւ Եգեր ասուած երկրի կողմերն ընկաւ։

Իսկ Շապուհ Կամսարականների կանանցը Բասենու Բողբերդ ասուած ամուր բերդը տարաւ ու այնտեղ թողեց եւ բերդակալ Ցղատվշնասպին

յանձնեց ու պատուիրեց նորան մեծ զգուշութեամբ պահել նոցա քրիստոնեաների սովորութիւններով. որովհետեւ կամսարականների կանայք իրեն միեւնոյն բանն էին ասում համարձակ՝ թէ "Դուք որ մեր ամուսիններին նուաճել էք ուզում, այս միայն իմաց տուէք նոցա՝ թէ մենք հանգիստ ենք. այն ժամանակ՝ ինչոր հրամայելու լինիք նոցա՝ կըլսեն ու կըկատարեն. իսկ թէ մեր վերայ մի ուրիշ-բան լսելու լինին, ամօթից ու նախատանքից ստիպուած՝ աւելի շուտ իրենց գլուխն կըզոհեն 'մեզ համար':„ Ինքը Շապուհն ստէպ հասցնում՝ էր կամսարականների ականջը՝ թէ "մի՛ք կորչիր, այլ եկէ՛ք մտէ՛ք մեր ձեռքի տակ եւ ձեր կանանցն առէ՛ք. եւ ես կըմիջնորդեմ, որ մեծ թագաւորը, ձեր մեղքը թողնի եւ քրիստոնէութիւնը, որ դուք սիրում էք, թոյլ տայ ձեզ. եւ եթէ կարողանաք մի լաւ ծառայութիւն էլ ցոյց տալ մեծ թագաւորին՝ հնար գտնէք Վահանին սպանելու, թագաւորից այնպիսի պարգեւներ ու պատիւներ կըգտնիք, որ ոչոք տեսած չէ:„

Ներսէհն ու Հրահատն էլ պատասխանում էին թէ "մեր գործն ու աշխատութիւնը երկրաւոր վայելքների համար չէ եւ ոչ էլ կնոջ ու որդւոց համար. մեր հաւատքի խորհուրդը մեծ է եւ պատուական. մենք այսպիսի ահաւոր խորհրդի համար աշխարհիս բոլոր վայելչութիւնները փոքր ենք համարում եւ դատարկ:„

Եւ Շապուհն աշխատում էր Հազարաւուխտի հրամանը կատարել եւ պտըտցնում էր Վահան Մամիկոնեանին գտնելու: Բայց Վահանն իւր զօրքերով չէր թողնում, որ Պարսիկները հանգստութիւն

առնէին բանակի մէջ. եւ գնաց բանակ դրեց մի մօտիկ գիւղում՝ Մամիկոնեանց իշխանութեան մէջ՝ ՝որի անունը Ծաղիկ էր, ՝եւ՚ ուզում էր Հաշտենքի սահմանակցութեան կողմն անցնել, որ այնտեղ օգնութիւն գտնի։

Շապուհին իմաց տուին, թէ Վահանը մի գիւղում բանակ է դրել եւ նորա հետի մարդիկն էլ թուով շատ սակաւ են։ Եւ Պարսից զօրագլուխը յանկարծակի բոլոր բազմութեամբ ելաւ Հայոց գնդի վերայ. բայց ուրիշների մասին բնաւ հոգս չէին անում. Հայոց զօրավար Վահանի յետեւն ընկան. ըստորում ասում էին "Թէոր նորան ՝բռնելու՚ հնար գտնինք, բաներս պրծած է ՝միանգամայն՚։

Եւ Հայոց զօրավարը Կարնու ծովի արեւելեան կողմից էր գնում եւ Պարսիկ քաջերի գունդն էլ նորա յետեւից։ Եւ Մամիկոնեան տոհմից Մուշեղն եւ կամսարական Ներսէհը ծովի հիւսիսային կողմից էին գնում դէպի Կարնու գիւղերից մէկը, որի անունն Արծաթի էր, ուզենալով մի փոքր հանգչել ՝այնտեղ՚. արտ քաղողներն այն տեղերում աշխատում էին. եւ Պարսիկներն ուզեցան այն տեղի մշակներին վնաս տալ ասելով թէ "ինչո՞ւ մեծ թագաւորի ծառաներին այսպէս թողնում էք ձեր երկրումը ման գալու։" Եւ Խուրսը, որ Արշարունեաց գաւառի Շիրմաց գիւղից էր եւ Շիրակայ տիրոջ դայեկորդին՝ տեսաւ, որ Պարսիկ զօրքից մէկ մարդ ուզում է սպանել կարնեցի մշակներից մէկին. եւ մշակը շուռ գալով մտաւ մի բարդի յետեւ եւ փախաւ սպանողի ձեռքից. եւ Խուրսը յարձակուաւ նիզակով Պարսիկի վերայ եւ հէնց այնտեղ սատկեցուց

նորան ու ազատեց կարնեցուն սպանողի ձեռքից. Մուշեղն ու Ներսէհն էլ Խուրսի գործը տեսնելով եւ նկատելով իրենց յետեւից եկողներին էլ, որ այնքան շատ չեն, քիչ մարդով յարձակուան նոցա վերայ եւ շատ արեան լճեր հանեցին այնտեղում ու մնացածներին էլ յետ փախուցին ամօթով. եւ մեռնողների թիւն այնտեղ եօթանասուն եւ երկու մարդ էր։ Երբոր այսպիսի յաջող գործի մասին լսեց Հայոց զօրավարը, Աստծուն փառք տուեց եւ ինքը գնաց Հաշտենքի սահմանները. եւ հասաւ Արշարունեաց գաւառն ու բանակ դրեց Երէզ գիւղում. եւ գոնէ այն գիշերը հանգիստ քունն առաւ. ‘միւս օրը’ Երէզ գիւղի մարդիկներին իւր զօրքի հետ միասին առաւ ու կէս գիշերին եկաւ ‘Պարսից’ բանակի վերայ. եւ երիզացիներով պատեց կռուի տեղը. եւ իրենք նետեր արձակելով՝ ահուդող ձգեցին Պարսից մէջ. նոքա իրար անցնելով իրենք իրենց խփում կոտորում էին. ու լացի յուսահատ ձայներով լցուաւ անօրէնների բանակը. իսկ Հայոց գնդից միայն Գաբաղ Գաբեղեան սեպուհը մեծ քաջութիւն ցոյց տալուց յետոյ արժանացաւ կատարելութեան պըսակին։ Եւ Վահանը թշնամիների կոտորածից վերադառնալով՝ գիշերուայ մնացած մասն էլ հանգստացաւ Ոտէ գեղի քամակում այնտեղի գոմերի մէջ. եւ լուսը բացուելուց յետոյ գնաց բնակեցաւ Ոտէ գիւղում։ Եւ երբ ուզում էր մի փոքր հանգստանալ գիշերուայ աշխատութեան ծանրութիւնից՝ աչքը բարձրացուց տեսաւ, որ ահա՛ հասել է նոցա վերայ Պարսից զօրագլուխ Շապուհը։ Վահանը որ զօրագլխի յանկարծակի քշելը տեսաւ՝ հրաման տուեց, շուտով պատրաստուան ինչ ‘մարդիկ’

որ կային այնտեղ. առիւծի նմանգոռաց՝ թէ «մի մարդ, որ երկու բանից մէկին է հաւատում, անհնար է, որ սխալուի. բայց երկու բանի մէջ, որն աւելի մեծ է, այն եւ աւելի բարձր է ու փափագելի. թող ոչոք չվախենայ եւ չզարհուրի՝ թերահաւատութեամբ. Տէր Աստուածն իւր սիրելիների ձեռքով կարող է՝ մէկով հազարին հալածել եւ երկուսով բիւրերին շարժել:» Եւ երբ նա պատրաստւումէր յարձակուելու՝ նայեց տեսաւ, որ բոլոր Հայերի գունդը Աւետարանի երդումից եւ զօրավարի խրատից երեսները դարձնելով՝ փախան գնացին ամէնքն էլ. եւ մնաց ինքն ու Մուշեղը եւ երեք կամսարականներն իրենց դայեակների հետ միասին, եւ ուրիշ մարդիկ էլ թուով քառասուն կամ պակաս: Մէկ մարդ ասաց զօրավարին. «Զգո՛յշ եղիր տէր, զգո՛յշ. այսինքն՝ թէոր հնար կայ իսկոյն փախիր եւ անձդ պահպանէ:» Բայց Վահանն երեսը խաչ հանեց ու ասաց բարձր ձայնով՝ թէ «էլ ինձ հիմայ "Զգոյշ" մի՛ք ասեր. որովհետեւ ես էլ մարդու վերայ յոյս դնելու չեմ. քա՛ւ լիցի. այլ իմ յոյսս միայն Տիրոջս Խաչի վերայ է:» Եւ քաջութեամբ իւր ուխտապահ փոքրաթիւ մարդիկների հետ միասին պատառեց Պարսիկների բոլոր գունդը. եւ բոլորի միջիցն անցաւ դուրս եկաւ միւս կողմը. եւ ինքը 'Վահան' շատ հզօր պատերազմող մարդիկ սպանեց Պարսից զօրքի միջից. զարկին սաստիկ վիրաւորեցին Սիւնեաց հպարտ իշխանի Գդիհոնի թեւի տակը. այն մարդու, որ պարծենում էր թէ ես Վահանի ու բոլոր այդ Հայերի հետ ոչթէ նետով կռիւ կ՚անեմ, այլ նետիս կոթովը բոլորին կըքշեմ կըցրուեմ:»

Բայց Վահան զօրավարն իւր գործակիցների
հետ միասին այն քաջութեան գործը կատարելուց
յետոյ անհոգս ման էր գալիս. եւ զօրավարի
ահն ու երկիւղն այնպէս ընկել էր Պարսից զօրքի
վերայ, որ կարծում էին՝ թէ մէկ էլ այդ Մա-
միկոնեանի եւ նորա հետ գտնուող մարդիկների
երեսը տեսնելու լինին, առանց վնասի պրծնելու չեն։
Իսկ Սիւնեաց զօրքն իրենց ‘Գդիհոն’ իշխանի
փորոտին՝ սաստիկ վատ հոտած լինելու պատճառով՝
թափեցին. եւ ‘մարմինը’ եղեգով պատեցին առան
տարան Սիւնեաց երկիրը. երբոր այս տեսաւ Սիւ-
նեաց պյրուձին, բոլորը քանդուաւ եւ զանազան
ճանապարհներով ամէնն իւր տեղը գնաց։
Եւ Պարսից զօրքի գլխաւորը Շապուհ, երբոր
Սիւնեաց զօրքի քանդուիլն եւ իւր հակառակորդ
Վահան Մամիկոնեանի ահաւոր զօրութիւնը տեսաւ,
սկսեց սրտմտիլ եւ զայրհուրիլ. ի՞նչ կարող էր
անել արդեօք՝ ինքն էլ չգիտէր, որովհետեւ ասում
էր՝ “Թէոր լոկ երեսուն մարդով չորս հազարի վրայ
ընկաւ եւ բոլորիս սիրտը կոտրեց, այժմ ինչպիսի՞
վստահութեամբ պիտի կարողանանք այնպէս քաջ
մարդիկների դէմն ելնել այսքան պակասած թուով։
Չլինի թէ Վահանն այս մօտիկ սահմանակից տեղերից
օգնականններ առնի եւ չկարողանանք մինչեւ ան-
գամ մեր գլուխն ազատել այնուհետեւ։ Եկէ՛ք
շտապով գնանք Հայոց մայրաքաղաքի ‘Դուինի’
կողմերը. եւ շուտով դեսպան ղրկենք մեծ թա-
գաւորին իմաց տալու։„ Այսպէս մտածելով հե-
տեւեալ օրը գնաց Բասեն գաւառը. Անվար ա-
սուած գիւղը որ հասաւ, դեռ Հայոց զօրավարի
ահիցը շուարած մնացել էին, որ Պարսկաստանից մի

դեսպան եկաւ՝ շատ վատ լուր եւ անողջոյն նամակներ բերելով այն Պարսիկների կողմից, որոնք Հեփթաղի անթիւ կոտորածից ազատուել էին։ Երբ Արեաց աշխարհի յաղթուելու մասին տեղեկացաւ գրերից, մեծ տրտմութեան մէջ ընկած վախեցաւ Շապուհ. եւ կանչեց այն մարդուն եւ առանձին հարցուց թէ ի՞նչպէս եղաւ, որ այնպիսի վախճան եւ կոտորած հասաւ Արեաց գլխին։ Դեսպանն էլ պատասխանեց թէ "քու հարցնելդ յարմար է եւ հարկաւոր, բայց ինձ համար շատ ծանր է այդպիսի վատ բանը պատմել. մանաւանդ այն բանը որի մէջ ուրիշ մարդ չէ այնչափ վնասի եւ կորստեան պատճառ, այլ միայն Արեաց տէր Պերոզը։ Առաջինը որ՝ երբ դեռ Վրկանում զօրք էր հաւաքում եւ ուզում էր Հեփթաղի դէմ գնալ, ո՛չ մի մարդու չհարցուց թէ արժա՞ն է գնալ թէ ո՛չ։ Ամէն բերան աղաղակում էր՝ թէ "՛լաւ է՛ թո՛ղ ինքը Պերոզն այստեղ իսկ սուրն առնի եւ հրամայէ մեզ կոտորել քանթէ տանի Հեփթաղի սրովը կորցնել տայ։ Եւ այնչափ բազմութիւնը թէ՛ Արիք եւ թէ՛ Անարիք ինչպէս մէկ մահապարտ դէպի մահն էին գնում, այլ ո՛չ ինչպէս պատերազմողներ դէպի կռուի ՛դաշտը՛։ Երբոր մօտեցան ՛Թըշնամուն՛, Հեփթաղը ՛մարդ՛ ղրկեց մօտն ՛եւ ասաց՛ "Դու ինձ հետ գրով կնքով երդում ունիս արած, թէ "քեզ հետ կռուելու չեմ,, եւ սահմաններ որոշեցինք, որոնցից անցնելու համարձակութիւն պիտի չունենայինք՝ Թշնամութեամբ իրարու դէմ. այժմ միտդ բեր այն խոստումդ եւ յետ դարձիր խաղաղութեամբ ու մի՛ մեռնիր. որովհետեւ ես եւ ուխտապահութեան արդարութիւնը մէկտեղ ենք

կռուում, իսկ դու եւ ուխտազանցութեան ստութիւնն էլ մէկ. ուրեմն դու ինձ ի՞նչպէս կարող ես յաղթել։,,

Պերոզն էլ սաստիկ զայրացած հպարտութեամբ պատասխան տուեց Հեփթաղին եւ ասաց, թէ “այս գնդի բազմութիւնը որ դուք տեսնում էք, սորա կիսով ձեզ հետ պիտի կռուիմ եւ ձեզ կորցնեմ, կիսովն էլ այդ տեղերի հողը, ուրոր դու ես, պիտի կրել տամ, ո՛րը ծովը թափել, ո՛րն էլ այն փոսը որ փորել են։,, Եւ անզգայ սիրտ ունենալուցն էլ չգիտէր նա թէ իւր ծառաների դիակներով պիտի լցնէ այն փոսը, որն իւր անձի եւ բոլոր Արեաց աշխարհի կորստեան համար փորեց։ Եւ իրար գալուց ու կռուելուց յետոյ կորաւ ինքն իւր բոլոր որդիքների եւ ժողովրդի հետ։,,

Այս որ լսեց դեսպանից՝ հրաման արաւ ՙՇապուհ՚ իւր զօրքին եւ եկան հասան Պարսկաստան. բայց Կամսարականների կանանցը թողեց Շապուհ այնտեղ Բողբերդում, եւ յանձնեց բերդակալին պատուիրելով մեծ զգուշութեամբ պահելու քրիստոնեաների օրէնքին յարմար։

Եւ Հայոց զօրավար Վահանն եկաւ այնուհետեւ Վաղարշապատ քաղաքը հաւատարիմ եւ ողջախորհուրդ ուխտապահ Հայ նախարարների հետ միասին. եւ կատարեց սովորական ուխտերն ու պատարագները Կաթողիկէ սուրբ եկեղեցու մէջ. նա նորոգեց մեծ շքեղութեամբ այդ իւր նախնեաց հնացեալ գործը. այստեղից եկան մտան Դուին մայրաքաղաքը եւ միքանի օր մնացին այնտեղ ու սպասում էին տեսնին թէ Աստուած ինչ կ՚առաջնորդէ։

---

# ԳԼՈՒԽ Լ․

## Հ ա շ տ ո ւ թ ի ւ ն:

Վաղարշը թագաւոր է լինում Պարսից (484 թ)։ Նիխորը գալիս է Հայաստան ուխտապահներին խաղաղութեամբ նուաճելու. Նուարսակի դաշնադրութեամբ Վահանի երեք գլխաւոր պայմաններն ընդունում է Նիխոր (485)։ Նիխորը վերադառնում է Դուռը դաշնադրութիւնն հաստատել տալու։ Վահան եւս կարճ ժամանակից յետոյ գնում է Դուռը։

“Բախեցէք եւ բացցի ձեզ. խնդրեցէք եւ տացի։„

Ղազար. Հազարաւուխտը լսելով Վրաստանում թէ Պերոզն սպանուել է, շուարած մնացել էր. եւ երբ եկաւ հասաւ Դուռը, նորա մօտ հաւաքուան Պարսից մեծամեծների մնացորդները. խորհուրդ արին իրենց մէջ թէ ում կարող են թագաւորութեանն արժանաւոր ճանաչել. եւ միաբանութեամբ հաստատեցին ընտրութիւնը Վաղարշի* վերայ, որը Պերոզ թագաւորի եղբայրն էր. եւ վկայութիւններ տալով բազմեցուցին նորան Պարսից թագաւորութեան գահի վերայ։

Այնուհետեւ խորհուրդ արաւ Հազարաւուխտը ՙմիւս՚ մեծամեծների հետ եւ Վաղարշի թագաւորութեան երկրորդ օրը՝ խօսեցաւ թագաւորի առաջն ՙայսպէս՚. “Ամենից յառաջ ասում է, թէ ինչպէս Հայաստանի նման մեծ երկիրը հնազանդութիւնից հրաժարուել է. եւ այն մարդը, որ Պերոզի պիտանաւորութիւն չճանաչելուց՝ Արեաց ծառայութիւնից հեռացուց այնպիսի մի երկիրը, ինչքան վնաս էր տալիս, այդ ամենին յայտնի է. ՙգիտէ՚ եւ Շապուհ Միհրանը. Թէոր ուզում էք լսել, նա ինքը ձեզ կ՚ասէ։„

* Սեբէոսն ասում է “Կաւատ, որդի Պերոզի։„

Հարցուց Միհրան Շապուհին Հայոց գործերի մասին. եւ տեղովը լսեց ՙՎաղարշ՚ Միհրանի, Հաւղարաւուխտի եւ ուրիշ բոլոր պարսիկ մեծամեծների բերանից ՙինչ որ պէտք էր՚. եւ շուտով Նիխոր Վշնասպդատին, որ հեզ խելացի եւ աշխարհաշէն մարդ էր, շատ երեւելի մարդիկների հետ ուղարկեցին Հայաստան. ինքը Թագաւորը պատուիրեց նորան թէ "գնա Հայաստան եւ ի՛նչ կերպ որ կարելի է, շատ քաղցրութեամբ եւ սիրով՝ Վահանի ու նորա ընկերների ուզածին համաձայն՝ նուաճէ այն մարդիկներին եւ Արեացը հնազանդեցուր։„

Նիխորն եկաւ Հայաստան եւ չվստահացաւ Հայոց տեղերը մտնել, այլ դադար առաւ Հեր գաւառի Նըւարսակ գիւղում. Վահանի մօտ պատգամաւոր ուղարկեց Խորհրդեան դպիր Շապուհին եւ Ճուարշացի Միհրվշնասպին, որոնց ձեռքով իմաց տուեց նոցա թէ "Վաղարշ Թագաւորից հրովարտակ ունիմ ձեր վերայ ձեզի խաղաղութեամբ նուաճելու։ Ուրեմն վերկացէ՛ք, եկէ՛ք եւ լսեցէ՛ք. եւ ինչպէսոր ձեր սրտի ուզածն է եւ կըցանկաք, ընտրեցէ՛ք ինչոր բարին է։„

Վահանը որ այս բոլոր բաները լսեց՝ հաւաքեց իւր մօտ բոլոր հաւատարիմ ուխտապահների գունդը. եւ հրամայեց Նիխորի կողմից եկածներին, որ բոլորի առաջն ասեն Վաղարշ Թագաւորի պատգամը. եւ ասաց պատգամաւորներին թէ վաղը նոցա պատասխան կուտայ։ Միւս օրը նախապէս իրար հետ խորհուրդ արին եւ Մամիկոնեանն սկսեց խօսել եւ պատասխան տալ Նիխորի խօսքերին ՙթէ՚ "մեր ապստամբութեան բաները շատ են եւ կարեւոր. եւ մեզ հնար չկայ գրով կամ պատգամով ամէն բան

հասկացնել. բայց երեք բան ունիմ ձեզ ասելու, թէ այս երեք բանիս այնպէս պատասխան կուտաք, ինչպէս ես եմ կամենում եւ կարող էք տալ մեզ Թագաւորի գրովն ու կնքովը, ամէն բան ինչոր ասելու լինիք, ինչպէս պէտքն է կըկատարենք եւ ձեր խօսքերին կըլսենք, ինչպէսոր մեր նախնիներն էլ լսած են. եթէ չհամաձայնիք յանձն առնել եւ խստութիւն ցոյց տաք, դուրս կ'երթանք այս երկրից եւ կըկորինք. եւ 'աւելի' ուրախութեամբ կըմեռնինք, քանթէ պարսիկ մարդու առաջը կըխոնարհեցնենք մեր գլուխը։»

«Առաջինը՝ թէոր մեր հայրենի բուն հաւատը թոյլ կըտաք մեզի 'պաշտելու'. եւ հայ մարդուն մոգ չէք դարձներ. եւ մէկին գահ ու պատիւ չէք տար մոգութեան համար. եւ կրակարանը դուրս կըտանիք մեր երկրից. եւ չէք թողնիր, որ այսուհետեւ էլ կեղտոտ ու անպիտան մարդիկ թշնամանեն մեր եկեղեցին, ինչպէսոր մինչեւ հիմայ լինում էր։»

«Երկրորդ՝ եթէ բռնակալի նման չվարուիք մարդուս հետ. այլ արդարութեամբ կարողանաք ջոկել լաւին ու վատին. ընտրել պիտանուն եւ անպիտանին. իմանալ ազնուականին եւ ռամկին. լաւերի շարքն ընդունել քաջ, պատուական եւ օգտակար մարդուն. սիրել օգուտ տուողին եւ ատել անօգուտին. հասկացող մարդիկներին մօտիկ պահել եւ խորհուրդ անել նոցա հետ. եւ անմիտներին չմօտեցնել, բացի այն՝ հրապարակի 'դիւանի' միջից էլ դուրս քշել։»

«Եւ երրորդ՝ ովոր Արեաց տէրն ու երկրի թագաւորն է, ուզում ենք, որ նա իւր աչքերով տեսնի եւ իւր ականջներով լսէ եւ անձամբ ճանաչէ

լաւին ու վատին։ Այն Թագաւորը, որ իւր առողջ աչքերովն է նայում եւ աննախանձ լսողութեամբ է ականջ դնում եւ արդար բերանով է խօսում, նորա ծառաներն օրէցօր կեանք առած կ'աշխատին բարին աճեցնելու, որով երկիրն էլ շէն կը լինի եւ տէրն էլ կը պայծառանայ։„

“Ուրեմն եթէ այս ամէնն այսպէս խոստանալ կարող էք, խոստումներդ էլ գրով ու կնքով հաստատած կուտաք մեզի, այն ժամանակ կանչէ՛ մեզ, կուգանք յօժարութեամբ եւ կը լսենք ձեր խօսքերին եւ Թագաւորի հրամանն էլ, ինչոր ասելու լինի, կ'ընդունենք։„

Այս ամէնը խօսեցաւ 'Վահան' խորհրդեան դպիր Ղապուհի եւ ճուարշացի Միհրվշնասպի հետ եւ ճամբու դրեց նոցա. ուղարկեց եւ իւր ուխտակիցների միջից Յաշկուր Արծրունուն եւ Սահակ Կամսարականին՝ երանելի Արշաւրի որդուն, եւ Վասաւուրտ Կարքայինին եւ Առաւան Աղբիւրկացուն եւ Պաճոկին մարդպետական գնդից։

Նիխորն երբոր տեսաւ այն Հայերին, որոնք Վահանի կողմից գնացին նոցա մօտ, ուրախ եղաւ. եւ հրամայեց ընթրիքին 'հրաւիրելու'. եւ մեծ շնորհակալութեամբ ու սիրով ընդունեց նոցա՝ իւրաքանչիւր բաժակի ժամանակ միշտ յիշելով քաջ Մամիկոնեան Վահանին։ Եւ առաւօտը Պարսիկների ամբողջ ատեանը ժողովուաւ Նիխորի առաջը՝ թէ՛ աստուածուրաց մարդիկ, թէ՛ Նիխորի պատգամաւորները եւ թէ՛ հայ նախարարները. բոլոր ժողովի առաջ հրապարակաւ լսեց Նիխոր Վահանի պատգամը եւ ուրախացած մի նամակ գրեց Վահանին այս օրինակով։ “Լսեցի, ասում է, պատգա-

մաւորների բերանից բոլոր քու խօսածներդ. վեր կաց, առանց քաշուելու եկ ինձ մօտ. Արեաց տէրն եւ բոլոր Արեաց մեծամեծները խօսք են տուել, որ բոլոր քու ուզածներդ եւ ուրիշ ինչ էլ որ ասելու լինիս՝ լիովին տան քեզ եւ կատարեն:„

Եւ այն նախարարներին, որ Վահանի կողմից եկել էին, պատիւ արաւ ու արձակեց իւր պատգամաւորների հետ միասին: Եւ պատգամաւորները տուին Վահանին Նիխորի նամակը եւ շուտով յօժարացուցին նորան գնալու:

Ճանապարհ ընկան այնուհետեւ Հայոց զօրավար Վահանն եւ բոլոր ուխտապահները եւ շատ մարդիկ ‘նոցա հետ’. եւ եկան Արտազ գաւառի Եղինդ գիւղը. այնտեղ դադար առաւ ինքը ‘Վահան’ իւր հետի մարդոց հետ եւ մարդ ղրկեց Նիխորի մօտ եւ իմաց տուեց իւր գալու մասին. եւ ‘պատգամ ղրկեց’ Նիխորին եւ ասում է. “Թէ որ դու հարկաւոր կըհամարես, որ ես գամ քեզ տեսնելու, ղրկէ՛ ինձ մօտ միքանի մեծամեծ մարդիկ ցեղով երեւելի պարսիկներից, որ գան մնան այստեղ իմ մարդիկներիս մօտ, մինչեւոր ես գամ տեսնիմ քեզ եւ խօսելով իրար հետ իմանանք թէ ինչ կայ անելու:„

Նիխորը լսելով Վահանի գալու մասին եւ իմանալով նորա կամքը՝ շուտով ուղարկեց Շիրակայ տէր Ներսէհ Կամսարականի մօտ Ատրպայական Շահպապ Բաղէին եւ Հայոց հազարապետ Վեհվեհնամին եւ Միհրանի եղբայր Ներշապուհին եւ էլի ուրիշ հինգ մեծամեծ պարսիկների:

Վահանը որ տեսաւ ‘այն’ մեծամեծներին, ուրախ սրտով ընդունեց նոցա. եւ այն օրը միասին

ուրախութիւն արին. եւ միւս օրը թողեց այն ութը մարդին իւր հաւատարիմների մօտ ու ինքը ճանապարհ ընկաւ իւր գնդովն ու պատրաստութեամբ գնաց Նիխորին: Երբ մօտեցան այն գիւղին, ուր Նիխորն էր, հրամայեց զօրքին դրօշակները բանալ ինչպէսոր պատերազմի պատրաստուելիս սովոր էին անել. եւ հրաման տուեց պատերազմական փողերը փչելու, որից Նիխորի զօրքի մարդիկը վախեցան եւ կարծում էին թէ Վահանը նոցա վնասելու է եկել խաբէութեամբ: Եւ Նիխորը մեծամեծ մարդիկներ ղրկեց նորան դիմաւորելու եւ ասելու Մամիկոնեանին՝ թէ "դու Պարսիկների սովորութեամբ չես անում այդ բանը, այլ մի նոր բան ես երեւում ՛մեր աչքին՛. որովհետեւ ճանապարհ գնալիս միմիայն Արեաց սպարապետը կարող է Արեաց բանակը մտնել փողեր փչելով. եւ ուրիշ մարդ Պարսիկների մէջ իրաւունք չունի այդպիսի համարձակութիւն անելու: Վահանն էլ պատասխան տուեց եւ ասաց. "Դեռ մէկ յառաջ ինձ Արեաց թագաւորին հպատակ չինէ, յետոյ առանց քու ասելուդ՝ կարծեօք ես ինքս էլ լաւ գիտեմ՝ Արեաց երկրի կարգն ու վայելուչը:,,

Յետոյ ինքն անձամբ եկաւ տեսութիւն արաւ Նիխորին դեռ Ատենի ժամանակ. (որովհետեւ արեւի ծագելու ժամանակն եկաւ Մամիկոնեանը Նիխորի մօտ): Եւ Նիխորը Վահան Մամիկոնեանին եւ նորա ուխտակիցներին տեսնելով՝ տուեց նոցա Պարսից թագաւոր Վաղարշի եւ բոլոր մեծամեծների ողջոյնը: Եւ Վահանը Պարսից թագաւորի եւ Դրան մեծամեծների ողջոյնը որ լսեց, շնորհակալութեամբ ընդունեց: Նիխորն հրամայեց Վահանի զօրքի բոլոր

մարդիկներին ներս թողնել. նմանապէս հրամայեց պարսիկ մեծամեծներին եւս ներսը մնալ Ատենի ժամանակ. եւ սկսեց խօսել Վահանի հետ ու ասաց. “Պատերազմի գործը քաջութեամբ եւ մանաւանդ խելքով ու իմաստութեամբ միայն կարող է գլուխ գալ. դու այդ երկու բանն էլ քու անձիդ մէջ լրիւ ցոյց տուիր բոլոր Արեաց աշխարհի առաջ եւ ճանաչեցուցիր. որովհետեւ սակաւաթիւ մարդիկներով շատերի հետ կռուելով քաջութիւնդ ցոյց տուիր. եւ կռիւ անելու կամ չանելու ժամանակը գիտենալով քու իմաստութիւնդ երեւեցուցիր: Արդարեւ թէոր այդ երկու բանը քու մէջդ եղած չլինէին, ի՞նչպէս հնար կըլինէր այդքան փոքրաթիւ մարդիկներով այնքան անթիւ պատերազմող մարդիկների բազմութեան դէմն ելնել ու երբեմն յաղթել սաստիկ եւ երբեմն փախեցնել ու նեղը ձգել: Այս պատճառով՝ ես քու այդպիսի գործդ ու խելքդ միտք բերելով՝ շատ լաւ իմանում եմ այն բոլոր պատասխանները, որ դու տալու ես մեր ամէնմէկ խօսքին, ինչոր լսելու ես մեզանից: Որովհետեւ՝ թէոր քու ապստամբելուդ մասին հարցնելու լինինք թէ ի՞նչպէս համարձակեցար մտքէդ անցնել՝ թողթէ եւ անել, դու պատասխան պիտի տաս եւ ասես թէ՝ Պերոզի չճանաչողութիւնն էր որ ստիպեց ինձ մահն աչքս առնել: Եւ Պարսիկների միջից ոչմէկը չի կարող քեզի մեղադրել: Այժմու Արեաց տէրը եւ բոլոր մեծամեծները միշտ այդ բանն են խօսում միայն՝ միտք բերելով Պերոզի անհաւան եւ անբարհաւաճ բարքը: Դու թէոր յօժարութեամբ կընուաճուիս եւ քու նախնեացդ բնիկ տիրոջը ծառայութիւն կ՛անես

*եւ կըմոռանաս ինչոր մեր եւ ձեր միջից վատ բաներ եղան, ու մէկդի կըթողնիս այդ ‘ամէնը’, այստեղ Հայաստանում կաց, մինչեւոր Թագաւորն ինքը ‘հաստատէ’ եւ ուղարկէ քեզ ‘այդ դաշինքը’. եւ երբ բարձով Արեաց տիրոջ մօտը գալու լինիս, ամէն բան ինչոր բարին եւ արժանն է՝ քեզ կամ ումոր դու կամենաս, տայ սիրով եւ յօժարութեամբ կատարէ։,,*

*Եւ Վահանն այս լսելուց յետոյ պատասխան տուեց ու ասաց. “երբոր բարին սիրող, լաւը ճանաչող ու աշխարհքը շէնացնող իշխաններ է տալիս Աստուած, տկարամիտ մարդս պիտի հասկանայ, որ աստուածային այցելութիւնն հասել է։ Մենք տեսնում ենք քեզ, որ յօժարութեամբ սիրող ես բարին. իսկ ինչոր Պերոզի համար ասացիր թէ առանց ընտրողութիւն անելու ընդունում էր իւր հպատակներին, ‘դորա համար’ բաւական համարուին թող քու տիրոջդ խօսքերը. եւ ես շնորհակալ եմ Աստծուց, որ ինձ ներողութիւն չէք տալիս հարցմունքներիդ համեմատ պատասխաններ ‘տալու’։ Իմ բոլոր տրտունջս Պերոզի վերայ էր, թէ ինչպէս միշտ խաբում էին նորան այնպիսի մարդիկ, որոնք բոլոր սրբասէր մարդիկներին ատելի էին եւ իրենց աղտեղի գործերի պատճառով՝ երկրից փախած, սարերը թափառող, աւազակապետ, արիւնապարտ, հացկատակ, բանսարկու, խաբեբայ, դատարկախօս, անհաշտ եւ ռամիկ մարդիկ. եւ գալիս ընկնում էին մոլորի վերայ եւ դուք էլ նոցա ուզածը տալիս էիք եւ ճանապարհ էիք ձգում՝ գահ, պատիւ, տուն տեղ ու մեծութիւններ բաշխելով նոցա. եւ այնպիսի խաբեբայ մարդիկ տեսնելով որ խելքն ու քաջութիւ-*

նը չէ, որ մարդուս կեանք ու մեծութիւն է տալիս, այլ սուտ վաճառականութիւնը մոլորով, հոգս էին քաշում միեւնոյն բանը սովորեցնելու եւ իրենց որդւոցը. այս պատճառով Հայաստանից պակասել էր եւ կորել միանգամայն աշխատանքի եւ մտածութեան հոգին, քաջութիւնը, ազնուականութիւնը, արդարութիւնը: Դուք Արիքդ էլ այդ ամէնը նկատելով եւ չհասկանալով թէ “նոքա ոչինչ ուսած չեն, չեն հասկանում, մեղադրելի չեն, բոլոր վատ եւ յետնեալ մարդիկների համար Հայերին էիք օրինակ բերում, նախ Ասորիներին ‘էիք նմանեցնում’, յետոյ՝ վհատածներին, յետոյ քանդուածներին եւ յետոյ անդամալոյծներին: Բայց սոցա նման մարդ հէնց ձեր գարշելի հացկատակների ջոկն էր, որ մինչեւանգամ չէր էլ ամաչում ու գետին մտնում. նոցա համար այդպիսի լուրը մինչեւանգամ խնդութիւն էր համարւում: Այլ նա որ մարդ էր եւ երեսին ամօթ ունէր ու այնպիսի խօսքեր էր լսում Արեւաց տիրոջից, չէթէ մէկ կամ երկու անգամ միայն, այլ տասն անգամ էլ որ պատահելու լինէր եւ միշտ նոյն բանը լսէր, տասն անգամին էլ արժան կըհամարէր մեռնել: Այս պատճառով մենք էլ երբոր համարձակութիւն առանք այս բանը մտքերիցս անցնելու, թէպէտ մտածեցինք երկրից դուրս գնալ գլուխներս առնել կորչել, լա՛ւ գիտենալով, որ մենք այնքան զօրքի բազմութեանը դէմ կենալ չենք կարող. բայց յետոյ այս էլ մտաբերեցինք, որ եթէ միանգամայն թագուն վերկենանք փախեցածի պէս գնանք՝ աւելի հաստատ կերպով կըժառանգենք այն վատութեան անունը, որ մեզ վերայ կար ‘եւ կ՚ասէիք’ թէ մար-

դիկն յիրաւի այնպէս յետին եւ անպիտան էին, որ կորան եւ անհետ եղան ու ոչ մի տեղ չեն երեւում. ուստի մենք որոշեցինք՝ յառաջ մեզ ճանաչեցնել եւ յետոյ կամ մեռնել կամ կորչել։ Այս Թո՛ղ ապացոյց լինի ձեզ. փորձեցէ՛ք այն մարդիկներին էլ, որոնց Պերոզն իւր Թագաւորութեան միջոցին մի ժամանակ մոգութեամբ տանուտերութիւն է տուել եւ հիմայ գահ ու պատիւ ունին եւ ամէնմէկը մի գաւառի իշխան է եւ ձիու, զէնքի ու զօրքի տէր. հրամա՛ն տուէք, որ միասին ժողովուին ամէնքն իրենց զօրքով եւ մենք էլ այս փոքրաթիւ մարդիկներով, որոնց դուք լաւ ճանաչում էք, որ ո՛չ տուն ունին, ո՛չ ծառայ, ո՛չ զօրք եւ ո՛չ տանուտիրութիւն. եւ դուք Արիքդ առժամանակ մի՛ք օգներ եւ Հայաստանը մեզի ու նորանց Թողէ՛ք եւ ովոր կարողանայ միւսի ձեռքից հանել, նորա՛ն տուէք ‘երկիրը’ եւ Թո՛ղ ձեզ հպատակի։,,

“Բայց՝ լուռ մնալ եւ բազմութեան օգուտը չխօսել անհնար է. եւ որովհետեւ մի մեծ երկրի մասին է խօսքս, որ մեր գլխից անցանք եւ Արեաց տիրոջից բաժանուանք, այդ երեք բանը պատգամաւորների ձեռքով ուղեցի քեզանից. մեզ միայն այդ խնդիրքն է պէտք, Թո՛ղ շնորհուի մեզ Թագաւորի գրո՛ն ու կնքո՛վը, այնժամանակ դուք մեր բնիկ տէրն էք եւ մենք էլ ձեր բնիկ ծառան. եւ այն յանցանքին էլ, որ ձեր բռնութիւնից մենք ստիպուանք գործել, Թողութի՛ւն տո՛ւ էք։,,

Նիխորը լսելով Վահանից այսպիսի մի բացատրութիւն Ատենի առաջն ասաց Թէ “Վահանի խօսածը արդար է եւ իրաւացի, եւ այս նուաճման աւետիքը ինձ մխիթարեց եւ ուրախացուց։,,

Եւ այն օրն հրաման արաւ, որ Վահանը բոլոր ուխտակիցների հետ իւր մօտ ուրախութիւն անեն եւ ուխտանենգներին եւ ուրացողներին ամօթալից դուրս հանեն ընթրիքից։

Միւս օրը բոլոր մարդիկ ժողովուան Հրապարակ։ Նիխորն հրամայեց քանի դեռ ինքն առանձին էր՝ որ Մամիկոնեան Վահանին ներս տանին սենեակը. եւ խօսելով նորա հետ մենակ երկար ժամեր երկրի կարեւոր պիտոյքների վերայ՝ երկուսը միասին եկան Ատենի տունը։ Նիխորն հրամայեց բոլոր Վահանի հետ եկածներին՝ նախարարներին եւ ռամիկներին եւ Պարսից մեծամեծ մարդիկներին՝ գալ նոցա մօտ Ատեանը. բայց այն մարդիկներին, որոնք Պարսիկներին էին հաւատարիմ, հրամայեց, որ նուիրակները չթողնին մինչեւանգամ դռանը մօտենալու։ Եւ այնտեղ պէտք էր տեսնել մոխրապաշտների երեսի վերայ հէնց նոյն մոխրի կերպարանքն իջած եւ ամօթով լցուած. եւ նոցա բոլորի գոյներն արդարեւ թռել էին ՝եւ երեւում էին նոքա՝ մաշուած ու խայտառակուած. մեծ գնով գնել էին ցանկանում ապստամբութեան անունը, թէօր հնար լինէր, բայց այդ ոչոք չէր տալիս նոցա. որովհետեւ այնպիսի անծանօթներից ովոր ուզում էր Ատեանը մտնել՝ ասում էր նուիրակներին թէ ապստամբների գնդից եմ։

Եւ Ատենի մէջ նոյն խօսքերը կրկնելով Վահան Մամիկոնեանն սկսեց միւս անգամ խօսել Նիխորի հետ եւ ասաց. "Ինչոր թէ պատգամաւորներով, թէ գրերով երէկ ու այսօր դիմադէմ խօսեցանք քեզ հետ, դու թագաւորի հրամանովը խօսք տուիր ՝այն ամէնը՝ մեզ տալու. առանց այդ՝

մեզ անկարելի է ապրել եւ ծառայել ձեզի։ Քրիստոնէական հաւատի հաստատութիւնը, մոգութեան եւ կրակատունների վերցուիլը Հայաստանի միջից, եկեղեցու պայծառութիւնն ու կարգերը՝ մեր ուզածի պէս Թագաւորի կնքովն հաստատէ՛. ուրիշ ինչ էլ որ գրած է նամակի մէջ՝ "նորա մասին՝ երկարել պէտք չէ քու առաջդ. գահի, պատուի եւ շքեղութեան համար էլ ամէնմէկիս ծառայութեանը նայելով տուէ՛ք անտրտունջ եւ մեք զլխեր։,,

Այս ամէնն ախորժութեամբ յանձն առաւ Նիխոր. Հայոց բնիկ պրուձին ուզեց Վահանից. "Պատրաստէ՛, ասաց, շուտով եւ ուղարկէ՛ Դուռը. որովհետեւ Պերոզի որդին Զարեհը Արեաց վճռին դէմ է կանգնել եւ գունդը դեռ պատրաստուում է նորան կորցնելու համար։,,

Եւ բաժանուան իրարուց եւ ճանապարհ ընկան խաղաղութեամբ. Նիխորը ‘գնաց’ Թագաւորի Դուռը, Հայոց զօրավարն էլ Դուին։

Վահանն Հայոց պրուձին պատրաստեց եւ ուղարկեց Դուռը Վրեն Վանանդացու ձեռքով. ուղարկեց եւ իւր եղբօր տղին՝ Վասակ Նահատակի որդուն Գրիգորին։ Նոքա վրայ հանելով պատերազմին եւ երկու գունդն իրար դէմ դուրս գալով, Զարեհի գունդը փախստական եղաւ։ Այնտեղ Գրիգոր սեպուհ Մամիկոնեանը մեծ քաջութիւն ցոյց տուեց եւ յայտնի եղաւ զօրավարի եւ բոլոր զօրքի առաջ։

‘Իսկ’ ‘Վահանն եւ ուխտակիցները’, գետի ափին որ հասան, տեսան որ Արտաշատի կամուրջը քանդուած է. եւ անցնելու տեղ չգտան. բայց Վահան քաջ զօրավարը մօտենալով գետի ափին մի տեղի

երեսը խաչ հանեց մտաւ գետը եւ ինչպէս մի շատ ծանծաղ տեղից՝ խաղաղութեամբ անցաւ ջրի այն կողմը. եւ այնտեղը բոլոր գնդի համար ապահով անցնելու ճանապարհ եղաւ։ Յետոյ մտան Դուին մայրաքաղաքը, շնորհակալութեան պատարագն անել տուին. յառաջ աղքատներին, ինչպէս սովոր էին, տուրքեր բաժանեցին. յետոյ իրենք ուրախութիւն արին։ Միքանի օրից յետոյ ՙՎահանն՚ Հայոց այրուձին ժողովեց եւ գնաց Վաղարշ թագաւորի մօտ։

# ԳԼՈՒԽ ԼԱ․

## *Վահանի մարզպանութիւնը:*

**Վաղարշը հրապարակաւ գովում է ուխտապահների քաջութիւնը․ ներում է ապստամբութեան վնասը․ Վահանին Մամիկոնեան տանուտէրութիւնն ու Հայոց սպարապետութիւնն է շնորհում եւ պատուով արձակում է Հայաստան․ (485։) Վահանի միջնորդութեամբ Կամսարականներին էլ շնորհում է տանուտէրութիւն։ Անդեկանը գալիս է Հայաստան Մարզպանութեան եւ կարճ ժամանակից յետոյ վերադառնում է։ Անդեկանի յորդորմամբ Վաղարշը մարզպան է նշանակում Վահանին․ (486 թուին։) Յովհան Մանդակունի կաթուղիկոսը Դուին քաղաքի Մայր եկեղեցու մէջ մաղթանք է կատարում եւ ճառ ասում այս առթիւ։**

> “Բազում ինչ է որբութիւն սատար լինել անօրութեան, որպէս աղօթք՝ գիտութեան եւ սէր սուրբ՝ միաբան օգտից։„

Թագաւորն եւ Պարսից մեծամեծները Վահանի Ղազար.
գալը որ լսեցին․ շուտով ժամ նշանակեցին, եւ ‘Վահանը’ ներկայացաւ Թագաւորին։

Վաղարշը Մամիկոնեան Վահանի առողջութիւնն հարցուց․ եւ ուրիշ աւելի բան չհարցուց այն օրը․ միւս օրը մեծ Ատեան ‘ժողով’ եղաւ շատ մարդիկներով լիքը։ Վաղարշ խօսել սկսեց Վահանի հետ․ “Լսեցինք, ասում է, բոլոր քու խօսածներդ Նիխորի հետ թէ պատգամաւորների բերանով, թէ գրով եւ թէ անձամբ։ Պերոզի ամբարտաւանութիւնը թէոր միայն քեզ կորուցած լինէր Արեաց ձեռքից՝ էլի թեթեւ կը լինէր այդ վնասը․ դու մէկ ծառայ էիր, թէոր կորչէիր քու տեղդ գուցէ ուրիշը գտնուէր։ Բայց նա ‘Պերոզ’ անթիւ լաւ մարդիկ կորուց, որոնց տեղն այսօր ուրիշ մարդ չկայ։ Թէպէտ դու այսօր արժանի էիր հարցափորձի եւ պատժի եւ չարաչար մահուան, բայց որովհե-

այդ բոլոր գործերի պատճառը, որ դու գործեցիր, ուրիշ բան է, ուստի մեր օրէնքը թոյլ չէ տալիս քեզ պատժելու։ Որովհետեւ այդ գործը, որ դու գործել կարողացար Պերոզի արհամարհոտ եւ կամակոր բարքի երեսից՝ Պարսիկների մէջ շատերը մտածում էին գործել, բայց ձեռքերը չհասաւ, որովհետեւ չկարողացան այդպէս աներկիւղ իրենց անձերը մահին տալ, ինչպէսոր դուք տուիք։„

“Դուք միանգամայն ոչինչ համարելով այս աշխարհը՝ մեռնողները մեռան եւ ապրողներդ էլ՝ եւս առաւել քաջութեամբ կեանք վաստկեցիք։ Երանի՜ թէ այն մարդիկը, որոնց Պերոզը կորուց, կարողացած լինէին այդպիսի քաջասրտութիւն ցոյց տալ. գուցէ այսօր նոքա էլ ձեզ նման կենդանի լինէին եւ մեր ձեռքը մնացած։„

Պատասխան տուեց Վահան բոլոր բազմութեան առաջ եւ ասում է. “Աստծու եւ ձեր թագաւորների առաջը երկար խօսելն անվայել է. որովհետեւ ես մեր բոլոր խօսածը, ուզածը եւ գործի պատճառները Նիխորի ձեռքով ցոյց տուի գրով ու կնքով։ Դուք մեզ հոգեւոր կողմից էիք վնաս տալիս, որին ոչ մեր նախնիքը եւ ոչ մենք դիմանալ չկարողացանք. եւ միշտ բողոքում ենք՝ թէ ձեր հաւատը սուտ է երեւում մեր աչքին, մի՛ք ստիպեր մեզի թշնամանել այն բանը, որ մենք կամաւ գիտութեամբ պատուել չենք կարող. որովհետեւ մեր հաւատը սրբութիւն է պահանջում եւ ամէն աղտեղութիւն, որով մարդուս հոգին կորչում է, մեր հաւատը չի ընդունում եւ չի էլ կամենում։ Բացի այն՝ նա մեզ չի արգելում տէրերին ծառայելու եւ հնազանդելու, ինչպէս Աստծուն։ Ա՜պա ցոյց

տուէ՛ք մի մարդ, որն իւր պիտոյութեան կամ կռուի մէջ գործ ու քաջութիւն ցոյց տալու համար պատիւ ստացած լինի. Նոցա կեղտոտ գործերը եւ մնհապարտութիւնը յայտնի ճանաչում են նոցա գաւառակիցները եւ Հայաստանի այլ մարդիկ. Հայաստանի հասարակ գիւղականներն անգամ խորշում էին նոցա հետ հաց ուտելու կամ գոնէ նոցա մօտիկ գնալու. գալիս էին խաբէութեամբ հաւատներդ ընդունում էին եւ կրակը կամաւ պղծում ու ձեզ էլ յիմարի տեղ դնում։„

"Այս պատճառով համարձակ ասում եմ այսօր ձեր առաջը, "Վերուցէ՛ք այդ խաբէական առեւտուրը Հայաստանի միջից։ Դուք մեզանից ինչպէս ծառաներից ձեր տիրական պատիւը պահանջեցէ՛ք եւ գործ, արդիւնք ու հպատակութիւն ‘ուզեցէ՛ք’. եւ Աստծու նման ամէնմէկի ծառայութեանն արժանի հատուցում տուէ՛ք։ Եւ այս մեր խնդիրը, ինչպէս թագաւորներին վայել է, գրով ու կնքով մեր վերայ հաստատեցէ՛ք եւ մեզանից ինչպէս ծառայօղ մարդուց գործ ու հպատակութիւն ուզեցէք։„

Վաղարշը պատասխան տուեց եւ ասում է. "Ամէն բան ինչոր Վահանը խօսած է՝ թող շնորհուի մեր գրովն ու կնքովը մինչեւ յաւիտեան։ Եւ այդ ապստամբութեան գործը, որ Պերոզի բռնութիւնից այլ ո՛չ ձեր կամքովը գործեցիք, թո՛ղ ներուի ձեզ այսօր։„

Եւ արձակեցին Ատեանը։ Միւս օրն ուզելով Վահանին Մամիկոնեան տէրութիւնն ու Հայոց սպարապետութիւնը տալ՝ բազմեցուցին նորան Մամիկոնեան տէրութեան գահի վերայ, տալով նորան ինչպէսոր իւր նախնիքներն էլ ունէին, Հայաստանի

սպարապետութիւնն եւս։ Հայոց միւս ՚ուխտապահ նախարարներին էլ իւրաքանչիւր անձի արժանաւորութեան համեմատ շնորհեցին ինչոր պատշաճն էր։

Եւ երբ մնաս բարով էին ասում Արեաց Թագաւորին եւ բոլոր Դրան մեծերին՝ հարցուց Վաղարշն եւ ասում է. "Վահա՛ն սպարապետ Հայոց, գո՞հ ես մեզանից. թէ ուրիշ էլ բան պէտք է, ասա՛։"

Վահանն էլ պատասխան տուեց ու ասաց. "Ինչ բարերարութիւն որ մեզ արիր, այն Աստուածը, որ բոլորիս ստեղծողն է, նա միայն կարող էր եւ նորան էր վայելուչ անելու. որովհետեւ մեր յանցանքը ներեցիք. գահ ու պատիւ տալով մեծարեցիք. մի գլորած կորած երկիր գտաք ոտքի կանգնեցուցիք. բայց այժմ որովհետեւ հարցուցիք, ինչպէսոր իմ մեռելութեանս կենդանացնող եղաք, կըկամենայի, որ բովանդակ անձս յարութիւն առնէր, այլ ոչ թէ կէսս. որովհետեւ իմ մէկ կէսս տակաւին մեռած եմ տեսնում։" Վաղարշն էլ հարցուց ու ասաց թէ "ասա՛ մեզ այդ ուզածդ բանը, որ իմանանք։" Եւ Վահանն ասաց որ "եթէ հնար լինէր Կամսարականին իւր տանուտէրութիւնը շնորհել, ապա միանգամայն տեսած կըլինէի բոլոր անդամներիս մեռելութիւնը դէպի կեանք դարձած։" Վաղարշը պատասխան տուեց. "Քեզ շատ չտրտմեցնելու համար, ասաց, այս անգամին, որովհետեւ ամէնից յառաջ այդ պարգեւը խնդրեցիր մեզանից, քու սիրուդ համար թող Կամսարականին տրուի տէրութիւնը։ Բայց դու այս անգամուայ մեր պարգեւից գոհ եղիր եւ աշխատիր ամենայն ուժով այսուհետեւ տիրասէր, արդարամիտ եւ աշխարհաշէն լի-

նելու։ Եւ բարով երթաս քու ընտանիքդ եւ քու երկիրդ ‘տեսնիս’. եւ ինչ հրաման որ մեզանից հասնի քեզ, պատրաստ գտնուիր ‘կատարելու’։„

Եւ Վահան Մամիկոնէից տէրն եկաւ Հայաստան բոլոր ուխտապահ նախարարների հետ միասին. եւ դէմ եկաւ սուրբ Յովհան կաթուղիկոսը պատուական խաչի նշանով եւ ճգնազգեաց Գրիգոր նահատակի սուրբ մասունքով. եւ ողջունեց նոցա օրհնութեան համբուրով եւ ասաց ուրախալից սրտով. “Թող ուրախանայ իմ անձս այն Տիրոջ շնորհիւ, որ իւր եկեղեցու վերայ նեղութիւն քաշող որդւոց քրտինքը սրբեց, նոցա նեղութիւնը հանգստացուց, իստակեց զէնքերի կեղտը, լուաց հաւատարիմների հոգին ուխտապահութեան ջրով եւ բոլորին հագուց փրկութեան հագուստը եւ ուրախութեան պատմուճանը։„

Եւ բոլորին օրհնելուց յետոյ՝ եկան Վաղարշապատ, որ այժմ Նոր քաղաք է կոչւում. եւ իրենց սովորութեամբ Վահան սպարապետն եւ ուխտակից նախարարներն իրենց ուխտերն եւ նուէրները կատարեցին՝ յառաջ սուրբ Կաթուղիկէ եկեղեցու մէջ եւ յետոյ՝ նահատակեալ կոյսերի տեղերում, հոգալով գլխաւորապէս աղքատների կարօտութիւնը։ Նախարարներն ամէնքն ուրախութեամբ եկան սուրբ եկեղեցու հոգեւոր վարդապետների հետ միասին ճառերով եւ սաղմոսներ երգելով։ Եւ մնացին այնտեղ մի քանի օր. յետոյ Վահանն եկաւ բոլոր բազմութեամբ մտաւ Հայոց բուն մայրաքաղաքը Դուին։

Այն ժամանակներն Հայաստան եկաւ Անդեկան մարզպանը. ‘սա’ մի խելացի, մտադիր եւ հասկացող

մարդ էր եւ կարող էր ճանաչել եւ ջոկել իմաստունն յիմարից, լաւը վատից. Նա հետզհետէ նըկատելով Վահանի խելօքութիւնն ու հեռատեսութիւնը, արդարախոհութիւնն, երկրի վերայ հոգս քաշելն եւ սրտի քաջութիւնը՝ յայտնեց Վաղարշ թագաւորին լիով ամէն բան։

Անդեկանը Հայաստանից եկաւ անձամբ թագաւորի մօտ եւ ասում է. “Համարձակութիւն եմ առնում յայտնի ասել ձեր առաջը թէ անյարմար է ուրիշ մարզպանի նշանակել. որովհետեւ ուրիշ մարզպանը, որ Հայաստան է գնում, երկու երեք տարի հազիւ կարող է ճանաչել նախ՝ այն երկրի հեշտն ու դժուարը եւ ապա նորա մարդիկների լաւն ու վատը։„

“Եւ Վահանի պէս մարդու լաւութեան ու յաջողակութեան վերայ նայելով՝ երկար ժամանակ մտածում էի, եւ երկրի ու թագաւորական գործերի համար լաւ համարելով նորան վստահութիւն ցոյց տալ, որպէսզի ինչոր արժանն է մտածէք եւ կատարէք։„

Անդեկանից որ լսեց այս ամէնը, Վաղարշ շուտով հրաման արաւ հրովարտակ գրել Հայաստան եւ Մամիկոնէից տիրոջն ու Հայոց զօրավարին Հայաստանի վերայ մարզպան նշանակել։

Իսկ Վահանը թէպէտ Հայ մարդիկների նախանձոտութիւնը ճանաչելով՝ դժուարանում էր ընդունելու, բայց թագաւորի հրամանին հակառակելու էլ իրաւունք չունէր. եւ երբ հրովարտակն առաւ, շուտով մի անդրուվար ուխտեց, որ Աստծու տունը գնայ. այս որ լսեցին քաղաքի մարդիկն առհասարակ թէ՝ նախարարներն եւ ազատները, թէ՝

քաղաքացիք եւ ռամիկները, մարդ ու կին, ծեր ու տղայ — մինչեւանգամ հարսներն էլ ուրախութիւններից առժամանակ մոռացան իրենց հարսնութեան ամօթն ու դուրս եկան առագաստներից — եւ ամէնքը քշեցին դէպի եկեղեցի. եւ Աստծու տունը բաւական չեղաւ բոլորին իւր մէջն ընդունելու. եւ դուրսը լցուան եկեղեցու սրահներն եւ փողոցներն եւ շրջակայ հրապարակի բոլոր տեղերը։

Եւ այն օրը բարեսէրների համար անյագ ուրախութեան օր էր, իսկ խարդախների համար անմխիթար տրտմութեան օր։

Եւ սուրբ Յովհան կաթուղիկոսն ուրախ սրտով եկաւ լսողութեան տեղն եւ խաղաղութեան ողջոյնը տալով ասաց։

“Եկեղեցին սիրողնե՛ր, Առաքեալների որդի՛ք, Քրիստոսի արիւնով փրկուածնե՛ր. մի՛ք ծառայեցներ ձեր հոգիները մարդկանց երկիւղին. տուէ՛ք կայսրինը կայսրին եւ Աստծունն Աստծուն։„

“Ահա՛ դուք Եկեղեցին սիրեցիք եւ Եկեղեցին էլ ձեզ սիրեց. թագաւորներին գութ տուեց Եկեղեցին. գայլերին գառ դարձուց. ձեզի փառաւորեց եւ ճշմարտութեան թշնամիներին ամաչեցուց։„

“Իսկ ես այսօր սրտիս ուրախութիւնից եւ մտքիս ցնծութիւնից ձեռքերս երկինք եմ բարձրացնում եւ աղաղակում. “Օրհնուի՛ այն Տէր Աստուածը, որ իմ զաւակիս նստեցուց իմ աթոռիս վերայ. եւ ես իմ աչքովս տեսնում եմ այդ։ Օրհնուի՛ այն Տէր Աստուածը, որ ինձ արժանի արաւ Եկեղեցու որդւոցը, որ ինձ էր յանձնել, պատուով ու շքեղութեամբ պայծառացած տեսնելու։ Ո՞ւր են առանց Աստծու գոռոզացածները. ո՞ւր են արիւն

թափօղները. ո՞ւր են պոռնկութիւն սիրօղները, ո՞ւր են Եկեղեցին արհամարհօղները, օրէնքը ոտնատակ անօղները, սրբութիւն պղծօղները, մոխրատուն շինօղները, ճշմարտութիւն մոռացօղները, արդարութիւն հայհոյօղները. փախա՞ն, կորա՞ն, ամօթով մնացին:»

«Ո՞վ կտայ իմ գլխիս ջուր եւ աչքերիս արտասուքի աղբիւր, որ նստէի ողբայի այն ողորմելիների կորուստը: Ահա տեսէ՛ք, մեռնում է իգատենչը, բայց միք թողնիր մեռնելու: Սեղանի առաջ սատկում է արիւն թափողը, բայց շտապեցէ՛ք օգնելու: Սեմէին գլխատուում է, բայց ձեռք տուէք նորան գթութեամբ: Այստեղ, տեսցէ՛ք, Սողոմոն չկայ եւ ոչ էլ քարեղէն սալերի վերայ գրուած անթողութեան օրէնքներ: Քրիստոսն է այստեղ. ամէնքդ էլ ծափ տուէք, ո՛վ հեթանոսներ. Նա՛, որ ասաց թէ «եկէ՛ք ինձ մօտ ամենայն նեղեալներ եւ ո՛վոր ծանր բեռ ունի, ու ես կըհանգստացնեմ ձեզ:»

«Նաեւ ձեզ՝ աւելի զօրեղ եւ կարող մարդիկներիդ պատուէր տուեց թէ դուք՝ որ կարողութեան տէր էք, տկարների տկարութիւնը վերուցէ՛ք: Դուք՝ որ Քրիստոսից հրաւիրուած էք երկնաւոր հացն ուտելու, կանչեցէ՛ք ձեզի հետ կաղերին, կոյրերին եւ հիւանդներին: Տգէտներին համոզեցէ՛ք կաթ ծծել՝ սնունդ գտնելու համար եւ ուրախարար բաժակից խմել սովորեցուցէ՛ք՝ հոգւով անուշալար ուրախութիւն գտնելու համար: Իսկ դո՛ւք, որ այժմ ներսումն էք, խնդրակ ու հրաւիրակ եղէ՛ք դրսի անցաւորներին. դուրս եկէ՛ք հրապարակներն ու փողոցները եւ ժողովեցէ՛ք ամէն հոգւով հիւանդ-

ներին. եւ մեղքի տակ ճնշուածներին. բերէք նոցա այստեղ եւ ամէնքը բժշկութիւն կըգտնին՝ բերելով իրենց հետ խոստովանութիւն եւ արտասուք։ Ամէն ցաւի համար էլ բժիշկներն յայտնի են ու պատրաստ. մաքսաւորին Մատթէոս աւետարանչի ու Զաքէոսի մօտ տարէք. պոռնիկներին՝ պոռնիկ կնոջ մօտ, որ այսօր Քրիստոսի դուստրն է. աւազակներին՝ դրախտաբաց աւազակի մօտ. ուրացողներին՝ արքայութեան դռնապան ու փակակալ Պետրոսի մօտ։ Եւ աղօթքից ու արտասուքից աւելի՝ ուրիշ գին ուզող չկայ։”

“Ուստի՛ աղաչում եմ ձեզ հաստատուն մնացածներիդ եւ տակաւին անգայթներիդ. մի՛ք նմանեցներ ձեր աղօթքը փարիսեցու աղօթքին, թէեւ բիւրաւոր բարիքների պատճառ եղած գտնիք ձեր անձերը. այլ ասացէ՛ք թէ անպիտան ծառաներ ենք։”

“Ուրեմն տա՛յ Աստուած այդպիսի զարդի հետ եւ երկնային փափագելի զարդն էլ ունենաք եւ լսէք փառաւորեալ ու երանելի բարբառը՝ թէ “եկէ՛ք, իմ Հօրս օրհնածները, ժառանգեցէ՛ք ձեզի համար աշխարհիս սկզբից պատրաստած արքայութիւնը։” Աստուա՛ծ տայ արժանանանք մենք ամէնքս այդ ողորմութեանը՝ Տիրոջ շնորհիւն ու մարդասիրութեամբը։”

ՎԵՐՋ

# ՑԱՆԿ

